

ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

6·1979

## ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը։ Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը։ Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները։

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության և սովետական պետության ղեկավարների, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման ականավոր գործիչների աշխատություններից, պաշտոնական փաստաթղթերի ժողովածուներից վերցված քաղվածքները, վկայակոչումները պետք է լինեն երկերի հատորյակների կամ աշխատությունների հայերեն, իսկ եթե այդպիսիք չկան՝ ռուսերեն վերջին հրատարակությունից։

Տեսական և գիտական բնույթի հոդվածների վերջում պարտադիր է նշել օգտագործված աղբյուրների համառոտ ցանկը։

Սույն պահանջները խախտողների հոդվածները չեն տպագրվի։ Ներկայացված հոդվածն անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հատվածներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում։

Խմբագրության ուղարկված հոդվածները չեն վերադարձվում։


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

6

ՀՈՒՆԻՍ 1979

ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է 1922 Թ.
ИЗДАЕТСЯ С 1922 Г.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
«ЛЕНИНЯН УГИОВ» («По ленинскому пути»)—теоретический и политический журнал ЦК КП Армении


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ





# ՍՄԿԿ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵՈՒՄ

**ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն որոշում է ընդունել «Գաղափարական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին»:**

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն նշել է, որ ՍՍՀՄ-ում զարգացած սոցիալիստական հասարակության կառուցումը, երկրի նյութական և հոգևոր պոտենցիալի հսկայական աճը, խաղաղության և միջազգային համագործակցության, ժողովուրդների ազատության և անկախության համար ՍՄԿԿ-ի և սովետական պետության պայքարի հաջողությունները լայն հնարավորություններ ստեղծեցին մարդկանց կոմունիստական գիտակցության ձևավորման բնագավառում մեր կուսակցության ծրագրային նպատակների իրականացման համար: Այդ նպատակներն են՝ բոլոր աշխատավորներին բարձր գաղափարայնության և սոցիալիստական հայրենիքին, կոմունիզմի գործին նվիրվածության ոգով, աշխատանքի ու հանրային սեփականության նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի ոգով դաստիարակումը, բուրժուական հայացքների ու բարքերի մնացուկների լիակատար հաղթահարումը, անհատի համակողմանի ներդաշնակ զարգացումը, հոգևոր կուլտուրայի իսկական հարստության ստեղծումը:

Մեծ են և ամբողջ աշխարհում լայնորեն հայտնի սովետական երկրի հաջողությունները նոր մարդու ձևավորման, գիտության, կուլտուրայի, ժողովրդական կրթության զարգացման գործում: Մենք ունենք մեծաթիվ, լավ պատրաստված գաղափարական կադրեր: Կուտակված է պրոպագանդիստական և ագիտացիոն աշխատանքի հարուստ փորձ: Երկրում ստեղծված է հզոր, ժամանակակից տեխնիկայով հագեցված ինֆորմացիոն-պրոպագանդիստական ապարատ՝ լայնորեն զարգացած մամուլ, հեռուստատեսություն, ռադիո:

Ինֆորմացիայի և դաստիարակության այդ ողջ հզոր կոմպլեքսը իր ազդեցության ոլորտն է ներգրավում միլիոնավոր մարդկանց: Դրա գլխավոր խնդիրն է՝ սովետական ժողովրդին, յուրաքանչյուր նոր սերնդի զինել պատմական ճշմարտության անպարտելի զենքով, հասարակական զարգացման օրենքների և հեռանկարների խոր ըմբռնմամբ, հենվելով մարքս-լենինյան ուսմունքի անսասան հիմքին:

ՍՄԿԿ XXV համագումարը մշակեց քաղաքական հստակ գիծ, դեպի կոմունիզմ հետագա առաջընթացի ստրատեգիան ու տակտիկան, ճշտորեն սահմանեց արդի փուլում գաղափարական աշխատանքի հիմնական ուղղությունները: Համագումարը ցույց տվեց այդ աշխատանքի գաղափարական մակարդակի և արդյունավետության բարձրացման ուղին՝ կոմպլեքսային մոտեցում դաստիարակության ամբողջ գործի դրվածքին, այն է՝ քաղաքական, աշխատանքային և բարոյական դաստիարակության սերտ միասնության ապահովումը, հաշվի առնելով աշխատավորների տարբեր խմբերի առանձնահատկությունները: Կատարելով մեծ Լենինի պատգամը, կուսակցությունը լայն մասսաների՝ մարքս-լենինյան տեսության խոր, գիտակցական ուսումնասիրումը զուգակցում է մեր մարդկանց սովետական հայրենասիրության և պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգով, աշխատանքի նկատմամբ կոմունիս-

տական վերաբերմունքի ոգով դաստիարակելու հետ, ՍՍՀՄ յուրաքանչյուր քաղաքացուն տոգորելով հասարակական ակտիվությամբ, բարոյական բարձր հատկություններով:

Կենսագործելով կուսակցության համագումարի որոշումները, ՍՄԿԿ Կենտկոմն ընդունեց գաղափարադաստիարակչական աշխատանքի հարցերի կոմպլեքսային լուծման փորձի, կուսակցական ուսուցման խնդիրների, մասսայական ինֆորմացիայի և պրոպագանդայի միջոցների ղեկավարման, քաղաքական բանավոր ագիտացիայի դերի բարձրացման, դասախոսական պրոպագանդայի բարելավման միջոցառումների, աշխատավորների տնտեսագիտական կրթության դերն ուժեղացնելու, ինքնագործ գեղարվեստական ստեղծագործության հետագա զարգացման, գյուղական բնակչության կուլտուրական սպասարկումը բարելավելու վերաբերյալ որոշումները:

Կենտրոնական կոմիտեի որոշումների, ընկեր Լ. Ի. Բրեժնևի ելույթների, նրա «Մալայա զեմլյա», «Վերածնունդ», «Խոպան» գրքերի հիման վրա կուսակցական կազմակերպությունները արդեն շատ բան են արել գաղափարադաստիարակչական և ինֆորմացիոն աշխատանքը խորացնելու, դրա արդյունավետությունը բարձրացնելու նպատակով: Նկատելիորեն ակտիվացել և կյանքին մոտեցել է կուսակցական, կոմերիտական և տնտեսագիտական ուսուցումը: Ավելի բովանդակալից, գործնական և մատչելի են դարձել մամուլի, հեռուստատեսության, ռադիոյի նյութերը:

ՍՄԿԿ Կենտկոմը դրա հետ մեկտեղ նշել է, որ մեր ինֆորմացիոն, գաղափարադաստիարակչական աշխատանքի դրվածքում դեռևս քիչ չեն թուլությունները ու թերությունները, ընդ որում՝ բավականին էական: Գլխավորն այն է, որ այդ աշխատանքի որակը բնավ ոչ միշտ է համապատասխանում սովետական մարդկանց կրթական և կուլտուրական աճած մակարդակին ու պահանջմունքներին, անբավարար է հաշվի առնում ժամանակակից սովետական հասարակության սոցիալ-տնտեսական պրոցեսների և հոգևոր կյանքի շարժունակությունը: Միշտ չէ, որ պատշաճ չափով հաշվի է առնվում միջազգային ասպարեզում խիստ սրված գաղափարական պայքարի բնույթը:

Զարգացած սոցիալիզմի պայմաններում, ավելի քան երբևիցե, հրատապ է լենինյան այն դրույթը, որ պետությունն ուժեղ է մասսաների գիտակցականությամբ, նա ուժեղ է այն ժամանակ, երբ մասսաները ամեն ինչ գիտեն, ամեն ինչի մասին կարող են դատել և ամեն ինչ անում են գիտակցաբար: Այս առումով բացառիկ կարևոր դեր են խաղում մասսայական պրոպագանդայի միջոցները, որոնք ապահովում են բնակչության իրազեկությունը նրան հետաքրքրող պրոբլեմների լայն շրջանակի վերաբերյալ, դրանց ճիշտ ըմբռնումը:

Մամուլը, հեռուստատեսությունը, ռադիոն, բանավոր պրոպագանդան և ագիտացիան առավել պետք է օգնեն սովետական մարդուն՝ լավ կողմնորոշվելու ներքին կյանքում և միջազգային իրադարձություններում, ձգտում առաջացնեն առավելագույն ավանդ մուծելու ընդհանուր գործում, կոմունիզմի կառուցման բնագավառում:

Դեռևս բավականաչափ ներգործուն չէ մամուլում, մասսայական-քաղաքական աշխատանքում այնպիսի հարցերի լուսաբանումը, ինչպիսիք են գիտատեխնիկական առաջընթացի արագացումը, ժողովրդական տնտեսության մեջ գիտության ու տեխնիկայի նվաճումների արմատավորումը, աշխատանքի արտադրողականության, աշխատանքի արդյունավետության և որակի բարձրացումը, նյութերի, հումքի, վառելիքի, էներգիայի, ֆինանսական միջոցների խնայողությունը:

Մասսայական ինֆորմացիայի օրգաններին հաճախ պակասում են առանձին աշխատավորների, ամբողջ աշխատավորական կոլեկտիվների լավագույն հաստումները, առաջավոր փորձը կենդանի ու մատչելի ձևով ցույց տալու և պրոպագանդելու կարողությունը: Ընդ որում, այնպես ցուցադրելու, որ բացահայտվի այդ փորձի էությունը, որ դրանով շահագրգռվեն միլիոնավոր մարդիկ, որ այն օգնի դրա լայն գործնական տարածմանը:

Գաղափարադաստիարակչական աշխատանքի առջև կուսակցության առաջադրած խնդիրների հետ անհամատեղելի են դեռևս հանդիպող վախը՝



բացահայտորեն քննարկման դնելու մեր հասարակության կյանքի հրատապ հարցերը, միտումը՝ կոծկելու, շրջանցելու չլուծված պրոբլեմները, սուր հարցերը, լռության մատնելու իրական կյանքում առկա թերություններն ու դժվարությունները: Նման մոտեցումը, պարադայնության հակումը չեն օգնում գործին, այլ լոկ դժվարացնում են մեր ընդհանուր խնդիրների լուծումը: Այնտեղ, որտեղ հարգի չէ քննադատությունն ու ինքնաքննադատությունը, որտեղ պակասում է հրապարակայնությունը հասարակական գործերում, ուղղակիորեն տուժում է մասսաների ակտիվությունը: Իսկ չէ՛ որ հենց մասսաների ակտիվությունն է սոցիալիստական հասարակարգի ուժի կարևոր աղբյուրը:

Հարկավոր է սիստեմատիկաբար, նպատակասլաց և անհաշտորեն պրոպագանդայի ու դաստիարակության բոլոր միջոցներով՝ կուսկազմակերպությունում, աշխատավորական կոլեկտիվում, ինչպես և մամուլում, ռադիոյով, հեռուստատեսությամբ քննադատորեն պայքար մղել մեր կյանքում դեռևս հաճախ գոյություն ունեցող՝ սոցիալիզմի համար թշնամի՝ անցյալի այնպիսի այլանդակ մնացուկների իսպառ վերացման համար, ինչպիսիք են ընչաքաղցությունը և կաշառակերությունը, հասարակությունից ավելի շատ պոկելու ձգտումը՝ նրան չտալով ոչինչ, անտնտեսվարությունն ու շռայլությունը, հարբեցողությունն ու խուլիգանությունը, բյուրոկրատիզմը և մարդկանց նկատմամբ անհոգի վերաբերմունքը, աշխատանքային կարգապահության և հասարակական կարգի խախտումները: Այդ երևույթների դեմ մղվող պայքարում անհրաժեշտ է օգտագործել թե՛ խոսքով համոզելը, թե՛ օրենքի խիստ ուժը:

Դաստիարակչական աշխատանքի արդյունավետությունը զգալիորեն նվազում է այնտեղ, որտեղ առաջանում է խոսքի ու գործի խզում, որտեղ ապահովված չէ կազմակերպական, տնտեսական ու գաղափարական աշխատանքի միասնությունը:

Գնահատելով ղեկավարների, տնտեսական կադրերի աշխատանքը, անհրաժեշտ է հաշվի առնել ո՛չ միայն արտադրական պլանների կատարման ցուցանիշները, այլև կոլեկտիվում տիրող կարգապահության մակարդակը, բարոյաքաղաքական կլիման, աշխատանքի և կենցաղի պայմանները:

Չի կարելի հաշտվել այն բանի հետ, որ, ըստ բնակության վայրի, հանրակացարաններում, բնակավայրերից հեռու փոքր կոլեկտիվներում դաստիարակչական աշխատանքը թույլ է կատարվում: Զգալիորեն ավելի կենդանի, կոնկրետ, հետաքրքրական և համոզիչ պետք է դառնա երիտասարդության շրջանում տարվող գաղափարադաստիարակչական աշխատանքը գործարաններում, կոլտնտեսություններում և սովխոզներում, ուսումնական հաստատություններում, կառույցներում, սպասարկման ոլորտում:

Որոշման մեջ շեշտվում է նաև, որ իմպերիալիստական պրոպագանդան, որի հետ այժմ բացեիբաց համագործակցում է պեկինյան շովինիստների և ագրեսորների պրոպագանդան, անընդհատ կատաղի հարձակում է գործում սովետական մարդկանց մտքերի վրա, ձգտում ամենանուրբ մեթոդների և ժամանակակից տեխնիկական միջոցների օգնությամբ նրանց գիտակցությունը թունավորել սովետական իրականության վերաբերյալ զրպարտությամբ, արատավորել սոցիալիզմը, գունազարդել իմպերիալիզմը, նրա կողոպտչական, անմարդկային քաղաքականությունն ու պրակտիկան: Գործադրվում է ամեն ինչ՝ խեղաթյուրված ինֆորմացիա ու փաստերի միտումնավոր լուսաբանում և լռության մատնում, կիսաճշմարտություն և պարզապես անպատկառ սուտ:

Ուստի գաղափարադաստիարակչական և ինֆորմացիոն աշխատանքի կարևորագույն խնդիրներից մեկն է՝ օգնել սովետական մարդկանց տեսնելու այդ զրպարտչական պրոպագանդայի ողջ կեղծիքը, հստակ, կոնկրետ և համոզիչ կերպով մերկացնելու դրա նենգ մեթոդները, երկրագնդի մարդկանց հաղորդելու ճշմարտությունը աշխարհում առաջին՝ հաղթանակած սոցիալիզմի երկրի մասին: Ըստ որում, միշտ պետք է հիշել, որ հրատապ պրոբլեմների լուսաբանման նկատմամբ ուշադրության թուլացումը, անբավարար օպերատիվությունը, անպատասխան թողած հարցերը շահավետ են միայն մեր դասակարգային հակառակորդի համար:

Մարդկանց գիտակցության և զգացմունքների վրա դաստիարակչական
աշխատանքի ներգործունության արդյունավետությունը էապես նվազեցնող
մեծ թերություն են՝ հաճախ հանդիպող ձևամոլությունը, հակումը բառային
ճարճատյունի, ամեն տեսակ պրոպագանդիստական շտամպների, նյութերի
գորշ, «կազյոննի» ոճը, ընդհանուր ճշմարտությունների բազմիցս մեխանիկա-
կան կրկնությունը՝ դրանց ստեղծագործական իմաստավորման կենդանի և
մատչելի ձև որոնելու փոխարեն:

Տեսական ընդհանրացումները, ընթերցողին, ունկնդրին հարստացնող
լուրջ, խոհական վերլուծությունը երբեմն փոխարինվում են ճոռոմաբանու-
թյամբ, լեզվի արտաքուստ գիտականակերպությամբ, իսկ լսարանում ընթա-
ցող խոսակցության մեջ փաստարկների համոզչությունը և արտահայտչական
վստահեցնող տոնը՝ խրատաբանությամբ և ճոճուն ֆրազներով: Այս ամենը
հարկավոր է վճռականապես արմատախիլ անել պրակտիկայից:

ՍՄԿԿ-ն աշխատավորների կոմունիստական դաստիարակությունը հա-
մարում է կոմունիզմի համար մղվող պայքարի կարևոր ճակատ: Գաղափա-
րական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հաջողություններով
ավելի ու ավելի մեծ չափով են պայմանավորված երկրի տնտեսական, սո-
ցիալ-քաղաքական և կուլտուրական զարգացման ընթացքը, հասուն սոցիա-
լիզմի հնարավորությունների լիակատար իրացումը, Սովետական Միության
լենինյան արտաքին քաղաքական կուրսի իրականացումը, նրա միջազգային
դիրքերի ամրապնդումը:

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն միութենական հանրապետությունների
կոմկուսների Կենտկոմներին, կուսակցության երկրկոմներին, մարզկոմներին,
օկրուգկոմներին, քաղկոմներին, շրջկոմներին, սկզբնական կուսակցական
կազմակերպություններին պարտավորեցրել է՝ մշակել և կենսագործել գաղա-
փարական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքը բարելավելու,
դրա արդյունավետությունն ու որակը բարձրացնելու, ձևերն ու մեթոդները
կատարելագործելու կոնկրետ միջոցառումներ, վերացնել եղած թերություն-
ները: Պետք է ավելի բարձրացնել գաղափարական աշխատանքի որակական
մակարդակը, համապատասխանեցնել այն զարգացած սոցիալիզմի պա-
հանջներին, կոմունիստական շինարարության նոր խնդիրներին: Ժողովրդա-
կամ մասսաների գիտակցականության և ակտիվության անշեղ բարձրացման
նկատմամբ մշտական հոգատարությունը, սովորեցրել է Վ. Ի. Լենինը, ինչպես
միշտ, մնում է կուսակցական աշխատանքի հիմքն ու կարևոր բովանդակու-
թյունը:

Գաղափարադաստիարակչական աշխատանքի կատարելագործումը կու-
սակցական բոլոր կազմակերպությունների առաջնահերթ խնդիրն է: Յուրա-
քանչյուր կոմունիստ, որտեղ էլ աշխատելիս լինի, պետք է հանդես գա որպես
լենինյան կուսակցության գաղափարների պրոպագանդիստ և կենսագործող,
այդ բացառիկ կարևոր գործին նվիրի իր բոլոր գիտելիքները, հոգու ողջ ուժը:
Անհրաժեշտ է կուսակցական կազմակերպությունների, գաղափարական
հիմնարկությունների, պրոպագանդիստական կադրերի և ակտիվի ուշադրու-
թյունը կենտրոնացնել քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հե-
տևյալ հրատապ խնդիրների վրա՝

**ապահովել պրոպագանդայի և ագիտացիայի գիտական բարձր մակար-**
**դակը:** Վառ կերպով ցույց տալ կոմունիստական իդեալների վեհությունը,
մարքսիզմ-լենինիզմի ամենահաղթ ուժը, սովետական հայրենիքի հզորության
ամրապնդման և ժողովրդի բարեկեցության բարձրացման նպատակով ՍՄԿԿ-ի
բեղմնավոր, անխոնջ գործունեությունը, սոցիալիզմի պատմական առավելու-
թյունները, նրա իսկական դեմոկրատիզմը և հումանիզմը: Համոզիչ կերպով,
կոնկրետ փաստերով բացահայտել սովետական ապրելակերպի էությունը,
զարգացած սոցիալիստական հասարակության հասունները, դրա՝ աստիճանա-
բար կոմունիստականի վերաճելու ուղիները: Տեսական, գաղափարական ողջ
գործունեության մեջ անհրաժեշտ է հաշվի առնել հասարակական զարգացման
այն առանձնահատկությունները, որոնք կապված են գիտատեխնիկական հե-
ղափոխության ներգործության հետ: Պարզաբանել, թե ինչ է արվում և ինչ



պետք է արվի սոցիալ-տնտեսական և կուլտուրական շինարարության հերթա-
կան խնդիրների հաջող լուծման, սովետական դեմոկրատիայի հետագա զար-
գացման և սոցիալիստական պետականության ամրապնդման համար: Սովե-
տական բոլոր մարդկանց համակել սոցիալիստական հայրենիքի համար
հպարտության, ՍՍՀՄ ժողովուրդների եղբայրական անխախտ բարեկամու-
թյան զգացումով, ազգային արժանապատվության ու ազգային մշակույթի
նկատմամբ հարգանքով, նացիոնալիզմի ամեն մի դրսևորման հանդեպ ան-
հանդուրժողականությամբ: Նպաստել սովետական մեծ ժողովրդի միասնու-
թյան ու համախմբվածության հետագա ամրապնդմանը.

**ուժեղացնել պրոպագանդայի և ագիտացիայի գործարարությունն ու**
**կոնկրետությունը, դրա կապը կյանքի, տնտեսական ու քաղաքական խնդիր-**
**ների լուծման հետ:** Պարզաբանել ՍՄԿԿ-ի սոցիալ-տնտեսական քաղաքա-
կանությունը, որի նպատակն է ժողովրդի նյութական բարեկեցության և կուլ-
տուրայի բարձրացումը, սոցիալիստական մրցության, աշխատանքի նկատ-
մամբ կոմունիստական վերաբերմունքի շարժման ըստ ամենայնի զարգացու-
մը: Ակտիվորեն նպաստել սոցիալիզմի առավելությունները գիտատեխնիկական
հեղափոխության նվաճումների հետ միացնելու պատմական խնդրի հաջող
լուծմանը, ընդհանրացնել և լայնորեն պրոպագանդել առաջավոր փորձը, սո-
վետական գիտության ու տեխնիկայի հաջողությունները: Հաստատակամորեն
պայքարել հանուն աշխատանքային և պետական կարգապահության ամրա-
պնդման, հանձնարարված գործի նկատմամբ պատասխանատվության բարձ-
րացման համար, խնայողության և սոցիալիստական սեփականության նկատ-
մամբ հոգատար վերաբերմունքի համար, ընդդեմ վատնողականության, գե-
րատեսչականության և տեղայնականության: Սովետական մարդը պետք է
պարզորոշ գիտակցի ժողովրդատնտեսական պլանների կատարմանը, գի-
տատեխնիկական առաջընթացի արագացմանն իր անձնական մասնակցու-
թյան հասարակական կարևորությունը, որպես հայրենիքի հզորության հետա-
գա ամրապնդման, կոմունիզմի հաղթանակի վճռական պայման.

**զարգացնել պրոպագանդայի և ագիտացիայի հարձակողական բնույթը:**
Ըստ ամենայնի պաշտպանել ամեն նորն ու առաջավորը, հեռանկարայինը,
վճռականորեն պայքարել այն ամենի դեմ, ինչ խանգարում է մեր առաջընթա-
ցին: Ելնել այն բանից, որ նորարարների ռեկորդային ցուցանիշները ոչ թե
ինքնանպատակ են, այլ աշխատանքի արտադրողականության բարձրացման
համար մասսաների աշխատանքային եռանդը մոբիլիզացնող կարևորագույն
միջոց, արտադրության արդյունավետության և աշխատանքի որակի բարձ-
րացման հզոր ռեզերվ: Աշխատանքին, հասարակական կյանքին ձեռներեց,
ստեղծագործական մասնակցությունը մարդու գաղափարական, քաղաքացիա-
կան հասունության ցուցանիշն է:

Համաշխարհային սոցիալիզմի, բոլոր պրոգրեսիվ ուժերի դիրքերի ամ-
րապնդումը բարենպաստ պայմաններ է ստեղծում կոմունիստական շինարա-
րության համար, իմպերիալիզմի և հեգեմոնիզմի, միլիտարիզմի և հետադի-
մության դեմ գաղափարական հարձակում ծավալելու համար: Հարկավոր է
այսուհետ ևս անդուլ պրոպագանդել ՍՄԿԿ-ի լենինյան խաղաղասիրական
արտաքին քաղաքական կուրսը, ռեալ սոցիալիզմի հաջողությունները, ամրա-
պնդել համերաշխությունը սոցիալիստական համագործակցության երկրների
ժողովուրդների, միջազգային բանվոր դասակարգի, ազգային-ազատագրա-
կան շարժման հետ, ընդլայնել և խորացնել գաղափարական համագործակ-
ցությունը եղբայրական կուսակցությունների հետ: Մասսայական ինֆորմա-
ցիայի սովետական միջոցների մշտական խնդիրներից մեկն է՝ սիստեմատի-
կաբար լուսաբանել սոցիալիստական երկրների կյանքը իր ողջ բազմազա-
նությամբ, հատուկ ուշադրություն նվիրելով եղբայրական կուսակցությունների
կողմից հասարակական հրատապ պրոբլեմների լուծման կոնկրետ դրական
փորձին, եղբայրական պետությունների քաղաքական, գաղափարական, տըն-
տեսական համագործակցության, նրանց հարաբերությունների իրավահավա-
սար և փոխշահավետ բնույթին: Կանոնավոր կերպով լուսաբանել եղբայրա-

կան կոմունիստական ու բանվորական կուսակցությունների անձնվեր պայքարը իմպերիալիզմի և նոր պատերազմի վտանգի դեմ, հանուն կոմունիզմի իդեալների, բանվոր դասակարգի, բոլոր աշխատավորների արմատական շահերի, հանուն սոցիալական պրոգրեսի:

Անհրաժեշտ է ամենայն վճռականությամբ մերկացնել «սառը պատերազմի», միջազգային լարվածության սրման, աշխարհը միջուկային աղետի եզրին հասցնող վտանգալի սպառազինությունների մրցավազքի իմպերիալիստական քարոզիչներին: Բացահայտել արդի կապիտալիզմի հակաժողովրդական, հակամարդկային էությունը, նեոգաղութատիրության քաղաքականության կողոպտչական բնույթը, «իրավունքների» և «ազատությունների» երկերեսանի պաշտպանների իսկական կերպարանքը: Մերկացնել պեկինյան կառավարողների հեգեմոնիստական մեծապետական կուրսը, նրանց ագրեսիվ նկրրտումները, իմպերիալիզմի, ռեակցիայի և պատերազմի ուժերին միակցվելը: Ժամանակին արժանի հակահարված տալ իմպերիալիզմի գաղափարական դիվերսիաներին և նրա կամակատարներին: Հետևողական պայքար մղել օպորտունիզմի և ռևիզիոնիզմի բոլոր ձևերի դեմ:

Մեր պարտքն է դասակարգային հակառակորդի քաղաքական և գաղափարական քայքայիչ գործունեությանը, սոցիալիզմի վերաբերյալ նրա չարամիտ զրպարտությանը հակադրել մեր շարքերի անսասան համախմբվածությունը, հզոր, գաղափարական միասնությունը, յուրաքանչյուր սովետական մարդու խորին համոզվածությունն ու քաղաքական զգոնությունը, հայրենիքը, սոցիալիզմի հեղափոխական նվաճումները պաշտպանելու նրա պատրաստակամությունը:

Գաղափարական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի միջուկը եղել է և մնում է սովետական մարդկանց գիտական աշխարհայացքով, կուսակցության գործին, կոմունիստական իդեալներին անսահման նվիրվածությամբ, սոցիալիստական հայրենիքի նկատմամբ սիրո, պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգով համակելը: Կուսակցական ուսուցման, տնտեսագիտական կրթության, կոմերիտական քաղաքական լուսավորության սիստեմում, պրոպագանդայի մասսայական ձևերում հարկավոր է ապահովել Կ. Մարքսի, Ֆ. Էնգելսի, Վ. Ի. Լենինի աշխատությունների, ՍՄԿԿ պատմության, կուսակցության XXIII, XXIV, XXV համագումարների փաստաթղթերի, ընկեր Լ. Ի. Բրեժնևի, կուսակցության մյուս ղեկավարների աշխատությունների խոր ուսումնասիրությունը: Ընդ որում, շեշտել ՍՄԿԿ-ի հավատարմությունը մարքսիզմ-լենինիզմի սկզբունքներին, կուսակցության անդուլ կոլեկտիվ գործունեությունը գիտական կոմունիզմի տեսության ու պրակտիկայի ստեղծագործական զարգացման բնագավառում: Կուսակցության հեղափոխական տեսության, քաղաքականության իմացությունը սովետական մարդու մտածելակերպում պետք է վերածվի կոմունիզմի համար, խորը գաղափարախոսության ամեն կարգի դրսևորումների դեմ պայքարող կայուն մարտիկի համոզմունքի, նրա ակտիվ կենսադիրքորոշման, դառնա գործողության ուղեցույց զարգացած սոցիալիզմի հրատապ պրոբլեմների լուծման համար:

Քաղաքական և տնտեսագիտական ուսուցման հաջողությունն ամբողջովին պայմանավորված է պրոպագանդիստական կադրերի տեսական և մեթոդական մակարդակով: Բոլոր կուսակցական կոմիտեների պարտքն է՝ հմտորեն ընտրել, սովորեցնել ու դաստիարակել պրոպագանդիստներին, նրանց նկատմամբ ցուցաբերել ամենօրյա հոգատարություն և ուշադրություն: Պրոպագանդիստներին, գաղափարական աշխատողներին պետք է ներհատուկ լինեն բարձր պատասխանատվությունը դաստիարակչական աշխատանքի բովանդակության և արդյունքների համար, մարդկանց հետ կատարվող աշխատանքի նոր ձևերի ու մեթոդների ստեղծագործական որոնումը:

Կենտկոմի որոշման մեջ նախատեսվում են կոմունիստների մարքս-լենինյան ուսուցման սիստեմը կատարելագործելու, պրոպագանդիստական կադրերի տեսական ու մեթոդական մակարդակը բարձրացնելու մի շարք միջոցառումներ:



ՍՄԿԿ Կենտկոմը կուսակցության կոմիտեներին պարտավորեցնում է՝ հաստատակամորեն կատարելագործել մասսայական-քաղաքական աշխատանքը կոլեկտիվներում և ըստ բնակավայրի: Ամրապնդել ագիտատորների, քաղինֆորմատորների, դասախոսների և զեկուցողների կազմը կոմունիստներով և կոմերիտականներով՝ առաջավոր բանվորների, կոլտնտեսականների, գիտնականների, մասնագետների, կուլտուրայի գործիչների միջավայրից: Բարելավել ագիտացիոն-պրոպագանդիստական ակտիվի հետ տարվող աշխատանքը, միջոցներ ձեռնարկել՝ ամրապնդելու մասսայական-քաղաքական աշխատանքի նյութատեխնիկական բազան, բարձրացնելու քաղաքական լուսավորության տների ու կաբինետների, ինֆորմացիոն կենտրոնների դերը: Ավելի ակտիվ օգտագործել դիտողական ագիտացիայի միջոցները, ընդսմին՝ պահպանելով չափը և հանդես բերելով գեղարվեստական ճաշակ:

ՍՄԿԿ Կենտկոմը հավանություն է տվել ՍՄԿԿ Կենտկոմի, միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմների անդամների, կուսակցական, սովետական, արհմիութենական, կոմերիտական և տնտեսական ղեկավար կադրերի մասնակցությամբ քաղուսուցման միասնական օրերի անցկացման պրակտիկային:

Անհրաժեշտ է, շեշտվում է որոշման մեջ, օպերատիվ կերպով արձագանքել կյանքում ծագող պրոբլեմներին: Պետք է կանոն դառնա. աշխատավորներին հուզող ոչ մի հարց անպատասխան չի մնում: Դասախոսական և մասսայական-քաղաքական աշխատանքի կենտրոնում պետք է լինեն ներքին և միջազգային կյանքի ամենահրատապ հարցերը, արտադրության արդյունավետության և աշխատանքի որակի բարձրացման համար մղվող պայքարը, կարգապահության և կազմակերպվածության ամրապնդումը, հակահասարակական դրսևորումների, թշնամական գաղափարախոսության ու բարոյախոսության նկատմամբ անհանդուրժողականության դաստիարակումը:

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն կուսակցական կոմիտեներին, մասսայական ինֆորմացիայի և պրոպագանդայի միջոցների ղեկավարներին պարտավորեցրել է՝ բարձրացնել մարքսիզմ-լենինիզմի, ՍՄԿԿ-ի պատմական փորձի պրոպագանդման մակարդակը, մամուլի ելույթների, հեռուստատեսային հաղորդումների ու ռադիոհաղորդումների գաղափարական բովանդակությունն ու ներգործունությունը: Համակողմանիորեն լուսաբանել բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության, մտավորականության կյանքը, ցույց տալ էկոնոմիկայի, գիտության և կուլտուրայի կարևորագույն նվաճումները: Ընթերցողների, ունկնդիրների քննարկմանը դնել տնտեսական ու կուլտուրական շինարարության, միջազգային կյանքի հասունացած հարցերը: Ապահովել հրապարակայնության լենինյան սկզբունքի պրակտիկ իրագործումը կուսակցական, պետական, տնտեսական մարմինների և հասարակական կազմակերպությունների աշխատանքում: Նպաստել սկզբունքային, բացահայտ և կոնստրուկտիվ քննադատության ու ինքնաքննադատության զարգացմանը: Բարձրացնել պատասխանատվությունը փաստերի լուսաբանման նկատմամբ խիստ և օբյեկտիվ մոտեցման համար, ինչպես և դրական ու քննադատական գնահատականների հիմնավորվածությունը: Ապահովել բանգյուղթղթակցական շարժման հետագա զարգացումը: Ուշադիր վերաբերվել խմբագրություններում ստացվող բոլոր նամակներին, կանոնավոր կերպով հրապարակել ներքին և միջազգային հարցերի վերաբերյալ աշխատավորների կարծիքները, նամակների տեսություններ, խմբագրական փոստի վերլուծության և մեկնաբանման համար ներգրավել կուսակցական, սովետական, տնտեսական ղեկավարների:

Անհրաժեշտ է, որ մինիստրները, կենտրոնական և հանրապետական գերատեսչությունների ղեկավարները կարևոր պրոբլեմների շուրջը կանոնավոր կերպով հանդես գան մամուլում, հեռուստատեսությամբ ու ռադիոյով, պատասխանեն աշխատավորների հարցերին: Հասնել այն բանին, որ պարտադիր կերպով ձեռնարկվեն գործնական միջոցներ, հրապարակումներ քննադատական ահազանգումների, ինչպես նաև առաջավոր փորձը բացահայտող նյութերի առթիվ՝ ամենուրեք այն արմատավորելու նպատակով:

Սովետական արհմիությունները, ասված է որոշման մեջ, կոչված են լինելու կառավարման դպրոց, կոմունիզմի դպրոց, ակտիվ նպաստելու դեմոկրատիայի իրականացմանը հասարակական կյանքի վճռական ոլորտում՝ արտադրության մեջ: Սովետական արհմիությունների վեհ պարտքն է՝ կատարելագործել սոցիալիստական մրցության ձևերը, աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի շարժումը, վճռականորեն հասնել կարգապահության ամրապնդման, աշխատանքի արտադրողականության բարձրացման, պաշտպանել աշխատավորների իրավունքներն ու շահերը, ավելի խոր ու եռանդագին զբաղվել սոցիալ-կենցաղային հարցերով, որոնց հաջող լուծմամբ մեծապես պայմանավորված է դաստիարակչական աշխատանքի արդյունավետությունը: Ձեռնարկությունների ղեկավարների և կուսակցական կազմակերպությունների հետ միասին հասնել աշխատավորական կոլեկտիվների դերի բարձրացմանը ինչպես արտադրության, նույնպես և գաղափարադաստիարակչական գործունեության ոլորտում:

Որոշման մեջ նշվում է, որ ՀամԼԿԵՄ Կենտկոմը, կոմերիտմիության կոմիտեները պետք է հաստատակամորեն ու հետևողականորեն կենսագործեն «կոմունիզմ սովորել» լենինյան անմահ պատգամը, պայքարեն ՀամԼԿԵՄ XVIII համագումարում ընկեր Լ. Ի. Բրեժնևի առաջադրած խնդիրների լուծման համար, գաղափարական ազդեցության ոլորտն ընդգրկեն երիտասարդության բոլոր խմբերը, երիտասարդությանը դաստիարակեն կուսակցության ու ժողովրդի հեղափոխական, մարտական և աշխատանքային ավանդույթներով, կոմունիստական բարոյականության ոգով, ընդսմին, հաշվի առնելով երիտասարդության պահանջմունքները, նրա կրթության և մասնագիտական պատրաստության աճող մակարդակը:

Յուրաքանչյուր կոմերիտական կազմակերպության կոնկրետ մարտական գործը պետք է դառնա պատանիների ու աղջիկների քաղաքական, աշխատանքային ու բարոյական դաստիարակության կատարելագործումը, նրանց գիտելիքների, կուլտուրայի, պրոֆեսիոնալ վարպետության ձգտման խրախուսումը, ժողովրդական սեփականության նկատմամբ հոգատար վերաբերմունքի սերմանումը: Անհրաժեշտ է զարգացնել «Արդյունավետության ու որակի հնգամյակին՝ երիտասարդների խանդավառությունն ու ստեղծագործությունը» հայրենասիրական շարժումը, կատարելագործել ուսանողական ջոկատների, դպրոցականների աշխատանքային միավորումների գործունեությունը: Բարձրացնել լենինյան ստուգարքի դերը երիտասարդության կոմունիստական դաստիարակության խնդիրների կոմպլեքսային լուծման գործում: Կոմերիտականներին ավելի ակտիվ ներգրավել պիոներների, դեռահասների, պրոֆտեխնիկական ուսումնարանների սովորողների շրջանում տարվող աշխատանքում:

Կուսակցական կոմիտեները, ՀԱՄԿԽ-ն, ՀամԼԿԵՄ Կենտկոմը, ՍՍՀՄ սպորտկոմիտեն, ԴՕՍԱԱՖ-ի կենտկոմը պետք է լրացուցիչ միջոցներ ձեռնարկեն մասսայական ֆիզկուլտուրային շարժումը ծավալելու, սպորտային վարպետությունը բարձրացնելու, ֆիզկուլտուրնիկների և սպորտսմենների շրջանում դաստիարակչական աշխատանքը բարելավելու համար: Ուժեղացնել երիտասարդության ռազմահայրենասիրական դաստիարակությունը, պատանիների նախապատրաստումը զինվորական ծառայությանը:

Կուսակցական ու կոմերիտական կազմակերպությունների պարտքն է երիտասարդ սերնդին պատվաստել պատմական պատասխանատվության զգացում սոցիալիզմի բախտի համար, հայրենիքի բարգավաճման և անվտանգության համար:

Պաշտպանության մինիստրությանը, սովետական բանակի և ռազմածովային նավատորմի գլխավոր քաղաքական վարչությանը հանձնարարված է միջոցներ ձեռնարկել սովետական զինված ուժերի դաստիարակչական դերի հետագա բարձրացման համար: Բազմապատկել փառապանծ ավանդույթները բանակի ու նավատորմի, որոնց շարքերում ծառայելը աշխատանքի ու զինվորական պատրաստության, բարոյական անաղարտության ու արիության, հայրենասիրության ու ընկերականության հիանալի դպրոց է: Սովետական



ռազմիկները պետք է խորապես գիտակցեն սովետական ժողովրդի խաղաղ աշխատանքի ապահովման, խաղաղության ու սոցիալիզմի գործի պաշտպանության իրենց պարտքը:

ՍՄԿԿ Կենտկոմը ՍՍՀՄ լուսավորության մինիստրության, ՍՍՀՄ բարձրագույն ու միջնակարգ մասնագիտական կրթության մինիստրության, ՍՍՀՄ պրոֆեսիոնալ-տեխնիկական կրթության պետական կոմիտեի, ՍՍՀՄ մանկավարժական գիտությունների ակադեմիայի առջև խնդիր է դնում հասնել ուսումնական ու դաստիարակչական պրոցեսների օրգանական միասնության, աշակերտների և ուսանողների գիտական աշխարհայացքի, բարոյաքաղաքական բարձր հատկությունների, աշխատասիրության ձևավորման: Սովորող երիտասարդությանը հետաքրքրություն ներարկել քաղաքական գիտելիքների նկատմամբ, համակողմանի զարգացնել նրանց հասարակական ակտիվությունը: Միջոցներ ձեռնարկել արտադպրոցական աշխատանքի, տեխնիկական ու գեղարվեստական ստեղծագործության, ֆիզկուլտուրայի ու սպորտի հետագա զարգացման համար:

Որոշումը ուշադրություն է հրավիրում այն բանի վրա, որ անհրաժեշտ է ըստ ամենայնի ամրապնդել ընտանիքի, դպրոցի, հասարակայնության կապը, ամենօրյա հոգատարություն ցուցաբերել մանկավարժական կադրերի նկատմամբ, է՛լ ավելի բարձրացնել ուսուցչի, դասատուի, վարպետի, վարպետ-դաստիարակի հեղինակությունը, ակտիվացնել աշխատավորական կոլեկտիվների շեֆությունը դպրոցների և պրոֆտեխնիկական ուսումնարանների նկատմամբ:

Կուսակցական կազմակերպությունների, կուլտուրայի մարմինների, գաղափարական հիմնարկությունների ու գերատեսչությունների, ստեղծագործական միությունների առջև խնդիր է դրված կատարելագործել գեղարվեստական մտավորականության գաղափարաքաղաքական դաստիարակությունը և մարքս-լենինյան կրթությունը: Մշտապես հոգալ գրողների, նկարիչների, կոմպոզիտորների, թատրոնի ու կինոյի գործիչների, ժուռնալիստների բարձր գաղափարայնության, քաղաքացիականության դաստիարակման, նրանց ստեղծագործական ակտիվության զարգացման համար: Ուշադրություն հրավիրել գրականության ու արվեստի այնպիսի նոր նշանակալից ստեղծագործությունների կերտման վրա, որոնք տաղանդավոր կերպով պատկերեն սովետական ժողովրդի հերոսական մեծագործությունները, սոցիալիստական հասարակության զարգացման պրոբլեմները, ջախջախիչ հարվածներ հասցնեն մեր գաղափարական հակառակորդներին: Ակտիվացնել ստեղծագործական միությունների գործունեությունը գրականության ու արվեստի զարգացման տենդենցների վերլուծման մարզում, ստեղծագործությունների խստապահանջ, ընկերական գնահատման, երիտասարդ ստեղծագործական կադրերի դաստիարակության գործում. այդ դիրքերից ավելի խոր թափանցել թատրոնների, երաժշտական կոլեկտիվների գործունեության, կերպարվեստի, գեղարվեստական ինքնագործունեության ոլորտը, պատշաճ հոգատարություն ցուցաբերելով դրանց հետագա զարգացման նկատմամբ:

Որոշմամբ մի շարք միջոցառումներ են նախատեսվում գաղափարական աշխատանքի առկա նյութական բազան ընդլայնելու և դրա օգտագործումը բարելավելու նպատակով: Այդ նկատառումով, մասնավորապես ասված է որոշման մեջ, անհրաժեշտ է, անկախ գերատեսչական պատկանելությունից, երկրում եղած բոլոր պալատները, ակումբները, գրադարանները, դահլիճները, մարզադաշտերը առավելագույն փոխհատուցմամբ օգտագործել քաղդաստիարակչական, կուլտուր-մասսայական և սպորտային աշխատանքի ծավալման համար: Գոյություն ունեցող բազայի օգտագործման արդյունավետության համար պատասխանատու կարգել տեղական կուսակցական և սովետական մարմիններին: Ժողովրդական դեպուտատների քաղաքային ու շրջանային սովետները, տնտեսական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունները, մշակույթի և սպորտի մարմինները պետք է կարգի բերեն մշա-

կույթի բոլոր գոյություն ունեցող հիմնարկությունները, սպորտային կառույցները, ապահովեն նոր շինարարության պլանների կատարումը։

ՍՄԿԿ Կենտկոմը ՍՍՀՄ Մինիստրների խորհրդին, ՍՍՀՄ պետպլանին, շահագրգռված մինիստրություններին ու գերատեսչություններին հանձնարարել է կոնկրետ միջոցներ ձեռնարկել պրոպագանդայի նյութատեխնիկական բազան ընդլայնելու և կատարելագործելու համար։

Միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմներին, կուսակցության երկրկոմներին, մարզկոմներին, ՀԱՄԿԽ-ին, ՀամԼԿԵՄ Կենտկոմին, մինիստրություններին ու գերատեսչություններին հանձնարարված է սույն որոշման կատարման ընթացքի մասին զեկուցել 1979 թվականի դեկտեմբերին և 1980 թվականի դեկտեմբերին։

Որոշման մեջ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հաստատ վստահությունն է հայտնված, որ ընդառաջ գնալով կուսակցության XXVI համագումարին, կուսակցական բոլոր կազմակերպությունները մարտական նպատակասլաց, կազմակերպչական ու քաղաքական աշխատանք կծավալեն սույն որոշումը կատարելու համար, կապահովեն գաղափարական, քաղաքական-դաստիարակչական գործունեության որակի ու արդյունավետության հետագա բարձրացումը, կոմունիստական շինարարության խնդիրների հաջող լուծումը։

---



# ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ ՈՐՊԵՍ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ԱԶԱՏՈՒԹՅԱՆ ԴՐՍԵՎՈՐՄԱՆ ՁԵՎ

**Գ. Ե. ՄԽԻԹԱՐՅԱՆ**
Փիլիսոփայական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

*ԱՐԴԻ ԴԱՐԱՇՐՋԱՆՈՒՄ, երբ գիտատեխնիկական հեղափոխության հասունները մեծ մասշտաբի որակական փոփոխություններ են հարուցել արդյունաբերական զարգացած երկրների արտադրաուժերի և սոցիալական հարաբերությունների կառուցվածքում, «գիտակցաբար կառավարվող սոցիալական համակարգերի» պրոբլեմը նրանց համար օրակարգի հարց է դարձել։*

*Կոմունիստական հասարակարգի համար այդ պրոբլեմը նոր չէ, այն ելակետային դրույթ է և ծագել է սոցիալիստական հեղափոխության առաջին իսկ օրից։ Երբ արտադրամիջոցները դառնում են հանրային սեփականություն և բուրժուական մասնավոր նպատակին փոխարինում է արտադրության միասնական կոլեկտիվ նպատակը, այդ պահից հասարակական արտադրության միասնական կառավարումը, դրա տարբեր ճյուղերի փոխադարձ կապի, հասարակական հարաբերությունների պլանաչափ վերափոխման եղանակների ուսումնասիրությունը դառնում են սոցիալիստական պետության, նրա վարող կուսակցության և մյուս ղեկավար օրգանների ամենօրյա գործնական աշխատանքի բովանդակությունը։*

*Այդ պրոբլեմն արդի դարաշրջանում հրատապ է դարձել իմպերիալիստական բուրժուազիայի գաղափարախոսության համար, միայն ոչ տեսական առումով, այլ զուտ գործնական անհրաժեշտության թելադրանքով։ Արտադրաուժերի հասարակական բնույթը մշտապես պահանջում է ավելի լայն ասպարեզ, հանրայնացման ընդլայնված ձևեր։ Իսկ բուրժուական ինդիվիդուալիստական սոցիալական սիստեմը, ընդարձակելով տնտեսության շրջանակները, պետականորեն միավորելով արտադրության ամբողջական ճյուղեր, ինտեգրացման հնարավոր ավելի մասշտաբային ձևեր մշակելով, որոնում է կառավարման կատարելագործման նոր մեթոդներ, որպեսզի սոցիալական իր սիստեմը «հավասարակշռության» մեջ պահի։ Դրության ամբողջ բարդությունն այն է, որ տեսականորեն բուրժուական գաղափարախոսությունը չի ընդունում ոչ հասարակական ընդհանուր նպատակի հնարավորությունը հասարակության մեջ, ոչ էլ միասնական հասարակական կառավարման անհրաժեշտությունը, որոնք խորթ են նրա ինդիվիդուալիստական բնույթին։ Սակայն պատմական ներկա առաջընթացը, որը, մեղմ ասած, պայմանավորված չէ այդ տեսաբանների մտածելակերպով, միասնական, կենտրոնացված, գիտական կառավարման պահանջը գործնականորեն դարձրել է այն ստիճանի հրամայական (օբյեկտիվ անհրաժեշտություն), որ նրանք ստիպված են խոստովանել, թե այն, ինչ ընդունելի չէ տեսականորեն, անհրաժեշտ է գործնականորեն (տե՛ս* Дж. Гелбрейт, Новое индустриальное общество. М., 1969, стр. 307)։ *Ու թեև գործնական կյանքը ստիպում է բուրժուական գաղափարախոսներին «կառավարվող*

սոցիալական համակարգերի» «հնարավոր» սխեմաները մշակել, սակայն դասակարգային մտածելակերպի սահմանափակությունը թույլ չի տալիս նրանց հասկանալու, որ սոցիալական սիստեմի միասնական կառավարումը հնարավոր է միայն նրա ընդհանուր նպատակի առկայության պայմաններում։

Սովետական Միության և սոցիալիստական մյուս երկրների անցած պատմական փորձը հաստատում է մարքս-լենինյան պատմափիլիսոփայության սկզբունքներն ինչպես այդ, այնպես էլ մյուս հարցերում։ Հասարակությունը կարող է ազատագրվել կապիտալիզմի տարերային անտագոնիստական զարգացման աղետներից՝ գործազրկությունից, աղքատությունից ու աշխարհակործան պատերազմներից և գիտակցաբար վերահսկել իր զարգացման ընթացքը միմիայն սոցիալական միասնական նպատակի և հանրային արտադրության կազմակերպման միջոցով։

Պատմական մատերիալիզմի հանրային ճշմարտություններից է այն միտքը, թե մարդիկ են կերտում իրենց պատմությունը։ Այդ վերաբերում է մասնավորապես նաև սոցիալական սիստեմի կառավարմանը։ Հասարակությունը ինքնակառավարվող ու ինքնակարգավորվող մի համակարգ է։ Միայն թե մասնավոր սեփականատիրության պայմաններում, երբ թագավորում է անհատական շահը (ինդիվիդուալիզմը), այնտեղ իշխում է տարերայնությունը, որը կապիտալիզմի զարգացման բարձրագույն փուլում հանգեցնում է սոցիալական կործանարար աղետների, ինչպես այդ ցույց են տալիս պատմության դասերը։

Քաղաքականությունը, որպես «կառավարման գիտություն», շատ կարևոր դեր ունի պատմության մեջ։ Այն ծագում է պետության հետ՝ որպես կառավարման իդեոլոգիական գործիք։ Ինչպես գրում է Ֆ. Էնգելսը, պետությունը մարդու վրա իշխող «առաջին իդեոլոգիական ուժն է» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 21, стр. 311), որն իր քաղաքականությամբ մշակում է սոցիալական «կարգի» սկզբունքները և կարգավորում դասակարգային հարաբերությունները։ Նշանակում է, քաղաքականության և պետության, ինչպես նաև դասակարգերի ծագման հիմքը գոյացել է անհրաժեշտությամբ, որի ուժով է, որ այն դառնում է «կառավարման գիտություն»։ Քաղաքականության գործնական անհրաժեշտությունը բացատրվում է նրա ծագման օբյեկտիվ պայմաններով, իսկ այդ հանգամանքը ոչ մի չափով չի խանգարում, որ այն լինի իդեոլոգիական ուժ և կառավարման իր ֆունկցիան իրականացնի՝ ղեկավարվելով տիրող դասակարգի տնտեսական շահերով։ Վ. Ի. Լենինը բնորոշում է քաղաքականությունը որպես «դասակարգերի հարաբերություն» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 32, էջ 281), որպես դասակարգերի հարաբերությունների կարգավորման միջոց, որի համար քաղաքական հաստատությունները մշակում են որոշակի «կարգ ու կանոն»։

Թեև քաղաքականությունը նախասոցիալիստական համակարգերում ղեկավարվում է ոչ թե ընդհանուր հասարակական շահի կամ նպատակի, այլ տիրապետող դասակարգի (կամ դասակարգերի) շահի թելադրանքով, սակայն այն չի կարող բոլորովին անտեսել աշխատավորների գոյության հարցը։ Երբ տվյալ սոցիալական սիստեմը (դրա արտադրության եղանակը և քաղաքական վերնաշենքը) չի ապահովում իր հիմնական արտադրաուժերին կենսապայմաններով, այն դրանով իսկ ինքն իրեն դատապարտում է կործանման։ Մյուս կողմից՝ ամեն մի նոր սոցիալական սիստեմի ծագման հիմքում, որպես ընդհանուր օրինաչափություն, ծագում է սոցիալական հեղափոխությունը, որի շնորհիվ հասարակության գոյության նյութական հիմքը արմատապես վերափոխվում է. գոյություն ունեցող հասարակարգն իր տեղը զիջում է մի ուրիշի։ Պատմական այդ առաջընթացի ակտիվ գործոնը, դրա շարժիչ ուժը հեղափոխական դասակարգի քաղաքական պայքարն է։

Բոլոր նախասոցիալիստական հասարակարգերում քաղաքականությունը որպես «կառավարման գիտություն» առաջնորդվել և առաջնորդվում է գերազանցապես կեղեքող դասակարգերի տնտեսական շահերի կամ, ինչպես ասում են, գործնական անհրաժեշտության անմիջական թելադրանքով։ Այդ ապացույցն է այն բանի, որ, անկախ մարդկանց հայացքներից, արտադրությունն առաջ է ընթանում, քանի որ մարդիկ արտադրությունը կազմակերպում ու կառավարում են ըստ իրենց անմիջական նյութական պահանջմունքների և ոչ



ըստ իրենց դավանանքի։ Քաղաքականության սոցիալական ակտիվության, նրա օրինաչափության և սոցիալական ֆունկցիաների գիտական բացատրությունը միայն մարքսիզմ-լենինիզմին ենք պարտական։ Որպես «կառավարման գիտություն» այն, ըստ պատմական մատերիալիզմի, մեծապես ակտիվ է, որը հասարակական գիտակցության բոլոր ձևերից ամենից ավելի անմիջականորեն է արտացոլում դասակարգային շահերը։

Սոցիալական սիստեմը կառավարելու համար քաղաքական հաստատությունը՝ պետությունը, մշակում է վարքի իրավական կանոններ, այսինքն՝ հասարակական որոշակի իրավաքաղաքացիական կարգ, որտեղ մարդկանց հարաբերությունները («տեղը») որոշվում են նրանց իրավունքներով ու պարտականություններով։ Ինչպես Ֆ. Էնգելսն է գրում, որպեսզի դասակարգերն «անպտուղ պայքարում» չխժռեն, չոչնչացնեն իրար, հասարակությունը, պետությունը քաղաքական «կարգի» մեջ է պահում մարդկանց (տե՛ս К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 21, стр. 170)։ Էնգելսը պետության և նրա իրավաքաղաքական կարգի հանդես գալը համարում էր պատմական անհրաժեշտություն։ Սակայն անտագոնիստական հասարակարգում միաժամանակ արտահայտվում է ինչպես քաղաքականության, այնպես էլ ամեն մի գաղափարախոսության սահմանափակությունը, քանի որ տիրող դասակարգը, սահմանելով աշխատավորների համար որոշ գոյապայմաններ («կարգ»), իր սոցիալական դիրքի տեսակետից է նայում իրականությանը, իր ստեղծած կարգերը համարելով միակ արդարացի և ազատ կարգեր։ Ամեն մի գաղափարախոսության, այդ թվում նաև քաղաքականության սահմանափակությունը հենց իր դասակարգի միակողմանի մտածելակերպի արդյունքն է։ Միայն թե, ինչպես վերը նշվեց, ամեն մի իդեոլոգիա, այդ թվում և քաղաքականությունը, ունի իր վերելքի շրջանը, երբ նրա կրողն իսկապես հեղափոխական դասակարգ է և իր պայքարում արտահայտում է պատմական առաջընթացի պահանջները։ Տապալելով հին կարգերը, պայքարող ուժերը ստեղծում են նոր կարգ, կատարելագործելով գաղափարախոսական և քաղաքական կառավարման ձևերը։ Հետևաբար, անտագոնիստական հակասություններով զարգացող ամեն մի պետության քաղաքականության ակտիվության (ազատության) սահմանափակությունն արտահայտվում է նրա իդեոլոգիական սահմանափակությամբ, քանի որ այդ քաղաքականությունը իրականում տիրապետող դասակարգի շահերից է ելնում։

Պատմական առաջընթացը սոցիալիստական հեղափոխության շնորհիվ հաղթահարում է գաղափարախոսության, նաև քաղաքականության միակողմանիությունը։ Պատմականորեն բանվոր դասակարգն այն սոցիալական առաջատար ուժն է, որի հեղափոխական պայքարը ո՛չ միայն բուրժուական կարգերի դեմ է ուղղված, այլև դասակարգային կեղեքման դեմ ընդհանրապես։ Օբյեկտիվորեն նրա «բնական» շարժումն ամեն տեսակ հարստահարումից ու շահագործողական հարաբերություններից աշխատավոր մարդկության ազատագրման շարժումն է։

Սոցիալիստական պետությունը (պրոլետարիատի դիկտատուրան) կառավարման իր կուրսը խարսխում է, ըստ էության, նույնպես դասակարգային հարաբերությունների կարգավորման ֆունկցիայի վրա, բայց ոչ թե այնպես, ինչպես այդ արել են բոլոր նախորդ հասարակարգերի պետությունները։ Այստեղ քաղաքականության սոցիալական բովանդակությունն ու նպատակը արմատականորեն փոխվում են. սոցիալիստական պետության քաղաքականության ձգտումը ոչ թե պարզապես բանվոր դասակարգի տիրապետության հավերժացումն է, այլ դասակարգերի ու դասակարգային հակասությունների ամիշտ լիկվիդացումը, անդասակարգ հասարակարգի կառուցումը։ Պատմության մեջ այդ աննախադեպ սոցիալ-տնտեսական վերափոխիչ գործունեությունը քաղաքականությունը երբեք չի կարող իրականացնել, եթե շեղվի մարքս-լենինյան փիլիսոփայության գիտական սկզբունքներից։ Միմիայն մարքս-լենինյան հետևողական քաղաքականությունը կարող է ճշտորեն սահմանել սոցիալական ազատության («լիազորության») իր շրջանակները։ Սոցիալիստական պետության քաղաքականությունն արտահայտում է բոլոր կեղեքվող աշխատավորների շահերը՝ նրանց կյանքը վարելով սոցիալիզմի կառուցման հունով։

Ի տարբերություն բոլոր մյուս հասարակական գիտակցության ձևերի, քաղաքականությունն ամենից ավելի ակտիվ է, քանի որ ավելի է առնչվում հասարակական տնտեսությանը, ապա և ամենից ավելի անմիջականորեն է արտացոլում հասարակության տնտեսական հարաբերություններում կատարվող հարաճուն փոփոխությունները։ Այդ հանգամանքը նրան դարձնում է ճկուն, ավելի դինամիկ ոչ թե անկայունության, այլ կենդանի իրականության արտացոլման ու նրա պահանջներին արձագանքելու իմաստով։

Յուրաքանչյուր խոշոր միջոցառման, առաջադրանքի ու պլանային որոշումների ընդունման համար քաղաքականությունը գիտական ելակետների ուղեցույցով է առաջնորդվում։ Հետևաբար, սոցիալական ընդհանուր նպատակի և զարգացման հեռանկարների, ծրագրային խնդիրների սահմանման առումով հաղթանակած պրոլետարիատի քաղաքականությունը կապիտալիզմից կոմունիզմին անցման շրջանում առաջնորդվում է գիտական կոմունիզմի ծրագրային դրույթներով։

Քաղաքականության սոցիալական ազատությունը իմացաբանական առումով պատմական անհրաժեշտության ճանաչումն է։ Այդ նշանակում է, ինչպես նշվում է ՍՄԿԿ XXV համագումարի որոշումներում, ճանաչել, ուսումնասիրել հասարակության օբյեկտիվ օրենքների գործողությունները և ապա այդ իմացությունից ելնելով՝ մշակել ժողովրդական տնտեսության զարգացման հեռանկարները։ Այդ իմացությունը քաղաքականության ակտիվության հիմքն է։ ՍՄԿԿ XXV համագումարի նյութերում քանիցս նշվում է այն դրույթը, որ մեր կուսակցության քաղաքականության հիմնական նպատակը արտադրության արդյունավետության վերելքի ապահովումն է, հետևաբար և ժողովրդի կենսամակարդակի մշտական բարձրացումը։

Սոցիալիստական պետությունը սովետական ժողովրդի՝ որպես նոր հասարակական հանրության և նրա քաղաքացիների միասնական կամքի օրգանն է։ Իհարկե, մարդկանց անմիջական պահանջմունքների վիճակագրական հաշվառումը դեռևս բավարար հիմք չէ հասարակության կառավարման գիտական սկզբունքների մշակման համար։ Որպեսզի ընդհանուր զարգացումը զուգակցվի հասարակության գերագույն նպատակին՝ կոմունիզմի կառուցմանը, անհրաժեշտ է օբյեկտիվ օրենքների կոնկրետ դրսևորումների, դրանց գործողությունների մշտական ուսումնասիրություն, առանց որի անհնար են քաղաքականության կուրսի ու նրա փոփոխման անհրաժեշտության տեսական մշակումն ու գիտական հիմնավորումը։

Գիտական կոմունիզմը հասուն սոցիալիզմի հասարակարգում տեսականորեն զինում է քաղաքականությանը, գիտականորեն հիմնավորում ինչպես արտադրության արդյունավետության աճի, տնտեսության զարգացման պլանավորման կատարելագործման և մշտական վերելքի ապահովման ուղիները, այնպես էլ սոցիալական կազմակերպության ձևերի կատարելագործման անհրաժեշտությունը։ Հանրային արտադրության զարգացման և բարձր արդյունավետության ապահովման համար, բացի գիտատեխնիկական հասումների ներդրման արագացումից, առհասարակ անհրաժեշտ են աշխատանքի պրոցեսի կազմակերպական ձևերի կատարելագործում, անձնական պատասխանատվության բարձրացում, կառավարման համակարգի զարգացում։

Քաղաքականության սոցիալական ազատությունն ամենից առաջ խարսխվում է արտադրամիջոցների մշտական վերելքի անհրաժեշտության հիմնավորման վրա, որը կենսական օրենք է սոցիալիստական արտադրաեղանակի համար։ Կոմունիստական շինարարության արդի պայմաններում ղեկավար օրգաններից կառավարման մեծ հմտություն և բարձր գիտական մակարդակ է պահանջվում։ Որպեսզի կառավարման բոլոր օղակներն աշխատեն ռիթմիկ, բարձր ինտենսիվությամբ և արդյունավետությամբ, ինչպես նշվեց ՍՄԿԿ XXV համագումարում, անհրաժեշտ է «կառավարման կազմակերպական կառուցվածքի և մեթոդների կատարելագործում» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութեր, էջ 90)։

Այս վերաբերում է մասնավորապես նաև արտադրահարաբերությունների այն ոլորտին, որը պահանջում է ապահովել ո՛չ միայն «արտադրության միջոցների և աշխատողների օրգանական միասնությունը», այլ «արտադրության իրային ու անձնական լծակների» միացումը (Ֆ. Էնգելս, Անտի Դյուրինգ,



էջ 354), աշխատանքի պրոցեսի կատարելագործումը, այլև արտադրանքի ինքնարժեքի իջեցումը, արտադրության ծախքերի կրճատումը, կառավարման ապարատի էժանացումը, անձնական պատասխանատվության բարձրացումը, արտադրության աշխատողի որակական կատարելագործումը և այլն։

Կան այնպիսի խնդիրներ, որոնց լուծումը թեև կառավարման համար մըշտընջենական են, սակայն միշտ պահանջում են, ինչպես Վ. Ի. Լենինն է ասել, կոնկրետ իրադրության կոնկրետ վերլուծություն։ Սովետական իշխանության առաջին տարիներին բոլոր խնդիրներից առաջնահերթը աշխատավոր մարդկանց, հասարակության հիմնական արտադրաուժերի պահպանումն էր։ Արդի գիտատեխնիկական հեղափոխության պայմաններում ևս արտադրաուժերի վերելքը և դրա հիման վրա աշխատանքի արտադրողականության անշեղ աճը տնտեսական քաղաքականության հիմնական խնդիրն է, սակայն այդ խնդրի լուծումն այսօր կառավարման ավելի բարդ կոմպլեքսային մեթոդներ է պահանջում։

ՍՄԿԿ քաղաքականության սահմանները չափվում են մեր հասարակության գիտակցական ինքնակառավարման, ինքնատիրապետման ու նպատակասլաց ինքնակատարելագործման շրջանակներով։ Արդի բուրժուական սոցիոլոգիան «սոցիալական ազատություն» հասկացությունը չի ընդունում։ Ըստ բուրժուական մտածելակերպի, հասարակության մեջ չի կարող լինել նպատակի միասնություն։ Բուրժուական տեսաբանները մեկնաբանում են ազատությունը ոչ թե սոցիալական ընդհանրության, այլ անհատական բարոյական առումով։ Ըստ նրանց աշխարհայացքային ըմբռնման, (զանազան, արտաքնապես իրարից տարբերվող դպրոցներն ու ուղղություններն ունեն ընդհանուր դասակարգային սկզբունքներ և այլ կերպ էլ լինել չի կարող) ազատությունը ոչ թե սոցիալական ընդհանուր նվաճում է (կամ արժույթ), այլ զուտ անհատական՝ բարոյական մշակութային արժույթ։ Նրանց տեսանկյունից տարբեր մարդիկ ընդհանուր նպատակ ունենալ չեն կարող և, հետևաբար, հասարակության մեջ չի կարող լինել ձգտումների և կամքի միասնություն։ Իբր թե, որտեղ խոսքը վերաբերում է միասնությանը, այնտեղ կորչում են անհատականությունն ու ազատությունը։

Բուրժուական գաղափարախոսները և պետական գործիչները, մասնավորապես ԱՄՆ-ում, շատ են խոսում ՍՍՀՄ-ում «անհատի» կամ «մարդու ազատությունների» ոտնահարման մասին։ Նրանց կարծիքով, ազատությունը հնարավոր է միայն կապիտալիստական հարաբերությունների վրա հիմնված հասարակարգում։ Ինչպես հայտնի է, պետական մոնոպոլիստական կապիտալիզմի պայմաններում մասնավոր նախաձեռնությանը, անիշխանականությանը, անհատական մրցակցությանը զուգընթաց, գործում է և պետական մենաշնորհային տնտեսությունը։ Բուրժուական տեսաբաններից ոմանք, ինչպես օրինակ Ս. Հուկը, ենթադրում են, որ նոր տնտեսական ձևերը, որոնց կառավարումը պետությունը վերցնում է իր ձեռքը, կազատեն կապիտալիզմը գործազրկությունից, կապահովեն լրիվ զբաղվածությունը, չեն լինի ճգնաժամեր և սոցիալական աղետներ։ Իբր պետական մոնոպոլիստական կապիտալիզմն արդեն գիտակցաբար «կառավարվող սոցիալական համակարգ» է, որի շնորհիվ սիստեմը դառնում է իբր «կայուն» ու «բարգավաճող»։ Այլ կերպ ասած, տեսականորեն չընդունելով սոցիալական ազատության սկզբունքը, նրանք միլիոնատերերի քաղաքականությանը և պետությանը օժտում են ազատության ֆունկցիաներով, ոչ մի կերպ չհիմնավորելով իրենց տեսակետը։

Սակայն, եթե 60-ական թվականներին դեռ կարող էին լինել նման տեսության հավատ ընծայողներ ու հետևորդներ, ապա այժմ բուրժուական սոցիոլոգիան կատարյալ տեսական ճգնաժամ է ապրում։ Իրենց գաղափարական արժույթների վերագնահատման փորձերում նրանք չեն կարողանում առաջադրել սիստեմի պահպանման շատ թե քիչ կենսական դեղատոմսեր, պատրաստ են «համաձայնել» սոցիալիզմի, մարքսիզմ-լենինիզմի ուսմունքի հետ, միայն թե նրանից հանվեն որոշ դրույթներ, ինչպես, օրինակ, սոցիալիստական հեղափոխության կամ պրոլետարիատի դիկտատուրայի տեսությունը, որը, նրանց կարծիքով, ամեն մի ազատության ոչնչացում է նշանակում։ Ուղղակի ծիծա-

զելի է, երբ նրանք բուրժուական պետության քաղաքականությունը համարելով սոցիալական աղետների լուծման դեղատոմս, կտրականապես ժխտում են սոցիալիստական պետության քաղաքականության համատեղելիությունը ազատության հետ։

Սակայն մարքս-լենինյան տեսության մեջ սոցիալիստական պետության քաղաքականությունը ո՛չ միայն չի հակադրվում ազատությանը, ժխտում կամ մերժում, այլ ներառնում է այն։ Պրոլետարիատի դիկտատուրան նոր հասարակական սիստեմի կառուցման վճռական գործոնն է։ Վ. Ի. Լենինը սկզբից իսկ սովետական իշխանության մեջ տեսնում էր մի նոր սոցիալական ուժ, որը ո՛չ միայն չի ոչնչացնում ազատությունն ու դեմոկրատիան, այլև նոր եղանակով է լուծում այդ պրոբլեմները։ Առաջին անգամ աշխատավոր մարդկության համար նոր պետությունն է ապահովում մարդու ձերբազատումը շահագործումից։ Իսկ ազատությունը շահագործումից բոլոր մարդկային մյուս ազատությունների գրավականն է ու հիմնական պայմանը։ Երկրորդ ինտերնացիոնալի տեսաբանների վերացական «ազատության» լոզունգի փոխարեն Լենինը քննում է այդ հասկացության սոցիալ-դասակարգային բովանդակությունը՝ ազատություն ո՞ւմ համար, ինչի՞ց և ինչի՞ համար։

Այժմ էլ ազատության պրոբլեմը մենք լուսաբանում ենք քաղաքական, դասակարգային դիրքավորման տեսանկյունից։ Կուսակցության քաղաքականության մեջ ոչ միայն արտացոլվում են մեր հասարակության տնտեսական զարգացման ընդհանուր հեռանկարները, կոմունիստական շինարարության հիմնական խնդիրները, այլև աշխատավոր զանգվածների բուն ազատության, նրանց սոցիալական ակտիվության աճի կոնկրետ խնդիրները։ Աշխատանքի լենինյան ոճի արմատավորումը կառավարման ապարատի կոնկրետ խնդիրներից մեկն է, որը բարձրացնում է «պահանջկոտությունն իր և ուրիշների նկատմամբ, բացառում է ինքնագոհությունը, հակադրվում է բյուրոկրատիզմի ու ձևամոլության ամեն տեսակ դրսևորումներին» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 102)։

Աշխատավորների սոցիալական ազատության դրսևորման նոր օրինաչափություն է քննադատությունն ու ինքնաքննադատությունը, առաջին հերթին որպես քաղաքական ու ստեղծագործական ակտիվության զանգվածային դրսևորում։ ՍՄԿԿ XXV համագումարի նյութերում, ՍՍՀՄ նոր Սահմանադրության մեջ, ինչպես նաև պետական ու կուսակցական մյուս փաստաթղթերում հատուկ ուշադրություն է նվիրվում ազատության այդ նոր ձևի լայն արմատավորմանը, գործնական կիրառմանն ու մասսայականացմանը։ Քաղաքացիական ակտիվության աճի, ընդհանուր և մասնավոր շահերի միասնությունից ծագած այդ օրինաչափությունը համապատասխանում է կոմունիստական շինարարության զարգացման և հասարակության կառավարման ու ինքնակառավարման ՍՄԿԿ մշակած կուրսին։ «...ինքնաքննադատության արժեքավորությունը,— ասում է ընկ. Լ. Ի. Բրեժնևը,— որոշվում է նրա անկեղծությամբ, սխալների ու թերությունների շտկմանն անհապաղ ձեռնամուխ լինելու պատրաստակամությամբ» (նույն տեղը, էջ 102—103)։

Քննադատության և ինքնաքննադատության արժեքը որոշվում է բարձրացված հարցերի ճշմարտացիությամբ, հասարակական նշանակությամբ։ Այն վերջին հաշվով վկայում է քաղաքացիների, հասարակության անդամների քաղաքական և գիտակցական աճի այնպիսի մակարդակի մասին, որը նրանց ոչ թե պարզապես ֆորմալ իրավական, այլ տնտեսական ու հոգևոր ազատության ռեալ ցուցանիշն է, նոր մարդու ինքնագիտակցության, ինքնատիրապետման ու ինքնահաստատման վկայությունը, իր հասարակական, քաղաքական պարտքի գիտակցական իրացումը։ Այն ոչ թե սոսկ կառավարման քաղաքական կուրսի հաստատումն է, այլ ներքևից եկող նախաձեռնություն, որն իր հակադարձ ներգործությամբ չի հակադրվում իրականությանը, այլ ավելի մեծ ուժով է դրսևորում նրա ներքին կենսունակությունը։

Վ. Ի. Լենինը, ուսումնասիրելով Հեգելին, նկատել է, որ «անհրաժեշտությունը, դառնալով ազատություն, չի անհետանում» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 38, էջ 194), այլ դրսևորվում է նրա ներքին նույնությունը։ Ըստ Հեգելի՝ ազատությունը լոկ անհրաժեշտության դրսևորումն է. մարքս-լենինյան տեսության համաձայն, ազատությունը պատմական առաջընթացի մեծագույն նվաճումն է, ժողովրդական զանգվածների սոցիալական-քաղաքական ակտիվության դրսևորումը։

Վ. Ի. Լենինը 1918 թ. գարնանը, մշակելով սովետական իշխանության ծրագրային խնդիրները, գրել է, որ այժմ հարցը նոր տիպի քաղաքական կառավարման մասին է։ Սովորաբար հասարակության «կառավարում» ասելով՝ հասկացել են սոսկ քաղաքական հարաբերությունների կառավարում։ Սոցիալիստական պետության ծագման օրից, նրա կառավարման մեջ, որի իմաստն անցումն է կապիտալիզմից սոցիալիզմին, քաղաքական հարցերը սոսկ «ենթակայական տեղ են գրավում տնտեսական խնդիրների համեմատ» (В. И. Ленин, ПСС, т. 36, стр. 130)։ Եվ այդ ամենից առաջ այն պատճառով, որ անցման առաջնային, վճռական խնդիրը հասարակության «տնտեսական վերակառուցումն է» կամ նոր, սոցիալիստական արտադրաեղանակի կազմակերպումը, որը չի կարելի իրականացնել առանց քաղաքականության գիտական հիմնավորման, կամ գիտականորեն հիմնավորված քաղաքականության։

Անդրադառնալով քաղաքականության և էկոնոմիկայի փոխադարձ կապին, Լենինը ցույց է տվել, որ պրոլետարիատի դիկտատուրայի դարաշրջանում «քաղաքականությունը չի կարող էկոնոմիկայի նկատմամբ առաջնություն չունենալ» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 32, էջ 88)։ Թե՛ մեկ և թե մյուս դեպքում լենինյան հարցադրումը ելնում է ազատության գիտամատերիալիստական ըմբռնումից։ Քաղաքականությունը հանդես է գալիս որպես դասակարգային խնդիրների ըմբռնում և միաժամանակ որպես պատմական անհրաժեշտության արտացոլում, որի բուն բովանդակությունը տնտեսական անհրաժեշտությունն է, այսինքն՝ այն գործնական տնտեսական խնդիրների արտացոլումը, որոնց իրականացմամբ միայն կարելի է հավաստել ինչպես քաղաքականության արդյունավետությունը, այնպես և դրա միջոցառումների ճշտությունը կամ գիտական հիմնավորվածությունը։

Եվ վերջապես սոցիալական պատճառակցականության ըմբռնման, պատմական դեպքերի պատճառական կապի բացատրության մեջ, եթե այն ներկայացնենք, ինչպես Լենինն է գրում, կոպիտ շղթայի ձևով, քաղաքականությունն այդ շղթայի օղակներից մեկն է կազմում։ Արտացոլելով տնտեսական անհրաժեշտությունը որպես տնտեսական հարաբերությունների խտացված արտահայտություն, քաղաքականությունն առավել ակտիվ է իր այդ անմիջականությամբ։ Իսկ ակտիվության չափանիշը նրա գիտական հիմնավորվածության հետ է կապված։ Քաղաքականությանը, որպես «կառավարման արվեստի», Լենինը մեծ ուշադրություն էր հատկացնում, որովհետև այդ նշանակում է ո՛չ միայն համոզել, այլև գործնականորեն կազմակերպել տասնյակ և տասնյակ միլիոնավոր մարդկանց կյանքի տնտեսական հիմքերը (տե՛ս Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 27, էջ 288)։ Ժողովրդական զանգվածների քաղաքական հաղթանակը սոցիալիստական հեղափոխության միմիայն սկիզբն է։ Որպեսզի նվաճած ազատությունը ձերբազերծվի շահագործումից և կայունանա, քաղաքականությունը՝ այն իրականացնող պետությունն ու կառավարող կուսակցությունը, վերափոխում, կազմակերպում ու կառավարում են նրա տնտեսական հիմքերը, արտադրաեղանակը։ Սոցիալիստական շինարարությունը և հասարակական կյանքի վերակառուցումն անհնար կլիներ առանց պետության ու կուսակցության քաղաքականության գիտական առաջատար դերի։

Բնորոշելով քաղաքականությունը որպես «գիտություն և արվեստ», Վ. Ի. Լենինը նկատի ունի ամենից առաջ դրա գիտական հիմնավորվածությունը, այն, որ մեր կուսակցությունը կառավարման իր արվեստը մշակում է՝ ելնելով «քաղաքականության մատերիալիստական տեսությունից», ըստ որի կենսունակ և ճշմարիտ է այն քաղաքականությունը, որը բխում է բազմամիլիոն աշխատավոր զանգվածների շահերից։ Քանի որ աշխատավորներն են պատմության առաջընթացի ռեալ ուժը, նրանք են նաև քաղաքականության կուրսի գործնական իրականացնողները, երբ նրանք զգում են պետական միջոցառումների

ժողովրդական բնույթը, ոչ մի ուժ չի կարող խանգարել այդ միջոցառումների իրագործմանը։

Սոցիալիստական ազատությունը պետական կառավարման մեջ մշտապես զարգացող պրոցես է, որի մեթոդը մարքս-լենինյան դիալեկտիկան է՝ մեր աշխարհայացքի շունչն ու ոգին։ Քաղաքականության ազատությունը կառավարման ոլորտում հենվում է պատմության դասերի կոնկրետ վերլուծության վրա։ Կուսակցության որոշումների ու պետության հաստատած օրենքների կենսագործումը վկայությունն է այն բանի, թե ինչպես են կյանքում իրականանում մարքսիզմ-լենինիզմի դասականների գիտական կանխատեսումները, մարդկության ազատագրումը դասակարգային, ազգային և ռասայական հակամարտություններից, ինչպես աշխատավոր մարդիկ աստիճանաբար ձեռք են բերում կյանքի նյութական ու հոգևոր բարիքներից օգտվելու նորանոր հնարավորություններ։

Սովետական ժողովրդի տնտեսական ու հոգևոր հասումները նոր հորիզոններ են բացում մեր հասարակության անդամների հոգևոր աճի, նյութական բարեկեցության ավելի բարձր մակարդակի հասնելու գործում։ Այդ նվաճումները կոմունիստական կուսակցության ու սովետական պետության քաղաքականության հաղթանակի վկայությունն են, նրա սոցիալական ազատության դրսևորումը։

---

# ՍՍՀՄ ՏՆՏԵՍԱԿԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ԱՐԴԻ ՓՈՒԼԻ ՈՐՈՇԻՉ ԱՌԱՆՁՆԱՀԱՏԿՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

**Լ. Զ. ԱՆԱՆՅԱՆ**
Տնտեսագիտության թեկնածու

ԷԿՈՆՈՄԻԿԱՆ ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ԿԱՌՈՒՑՄԱՆ համար մղվող պայքարի ամենավճռական տեղամասն է։ «Կոմունիզմը մենք գնահատում ենք միայն այն ժամանակ,— նշել է Վ. Ի. Լենինը,— երբ այն հիմնավորված է տնտեսապես» (Երկեր, հ. 29, էջ 224)։ Ժողովրդական տնտեսության նվաճումները երկրի բարգավաճման, բնակչության նյութական և կուլտուրական մակարդակի բարձրացման հիմքն են։ Ուստի պատահական չէ, որ նոր հասարակարգի նյութատեխնիկական բազայի ստեղծումն ու ամրապնդումը միշտ գտնվել են կոմունիստական կուսակցության և սովետական կառավարության ուշադրության կենտրոնում։

Մարքսիզմի դասականները, գիտականորեն վերլուծելով արտադրաուժերի և արտադրահարաբերությունների զարգացման պատմական միտումները, հասարակական զարգացման օրենքները, նշել են կապիտալիզմից սոցիալիզմին անցման անխուսափելիությունը, սոցիալիստական հասարակարգը աստիճանաբար կոմունիստականի վերաճելու անհրաժեշտությունը։

Զարգացնելով կոմունիզմի մասին մարքսյան ուսմունքը, Վ. Ի. Լենինը միաժամանակ նշել է նրա յուրաքանչյուր փուլի զարգացման որոշակի աստիճաններն իրարից տարբերելու անհրաժեշտությունը, շեշտել կուսակցության ճիշտ քաղաքականության մշակման համար ամեն մի էտապի յուրահատկությունը հաշվի առնելու կարևորությունը։ «...Կարևոր է պարզել մեզ համար, թե որքան անսահման կեղծ է այն սովորական բուրժուական պատկերացումը, իբր թե սոցիալիզմն ինչ-որ մի մեռած, քարացած, մի անգամ ընդմիշտ տրված բան է, այնինչ իսկապես միմիայն սոցիալիզմից է սկսվելու արագ, իրական, իսկապես մասսայական, բնակչության մեծամասնության, ապա նաև ամբողջ բնակչության մասնակցությամբ տեղի ունեցող առաջընթաց շարժումը հասարակական ու անձնական կյանքի բոլոր ասպարեզներում» (Երկեր, հ. 25, էջ 615)։

Դեռևս նոր կյանքի արշալույսին Վ. Ի. Լենինը ամենայն որոշակիությամբ խոսում էր «պատրաստի», «զարգացած», «լիակատար» սոցիալիզմի՝ որպես սոցիալիստական շինարարության հեռանկարի ու նպատակի մասին։ 1920 թ. փետրվարին Համառուսաստանյան կենտգործկոմի առաջին նստաշրջանում նա ասել է. «Թե ինչպես պատկերացնել զարգացած սոցիալիստական հասարակությունը, այդ նույնպես դժվար չէ։ Այդ խնդիրը նույնպես լուծված է։ Բայց թե ինչպես գործնականորեն իրականացնել անցումը հնից... դեպի նորը, դեռևս չծնվածը, ամուր բազա չունեցողը, սոցիալիզմը— ահա ամենադժվարին խնդիրը» (Երկեր, հ. 30, էջ 420)։

Վ. Ի. Լենինը տեսության զարգացումն աներկբայորեն կապում էր միլիոնավոր աշխատավորական զանգվածների գործնական փորձի, կոմունիստական շինարարության պրակտիկայի ընդհանրացման հետ։ Կուսակցության ծրագրի վերաբերյալ բանավեճի առթիվ 1918 թ. նա գրել է, որ մենք դեռևս չգիտենք,

«Թե ինչ տեսք կունենա ավարտված սոցիալիզմը... որովհետև սոցիալիզմի բնութագրման համար դեռ նյութեր չկան։ Դեռ չեն ստեղծված այն աղյուսները, որոնցից սոցիալիզմն է կազմվելու։ Ավելի մենք ոչինչ չենք կարող ասել, և պետք է որքան կարելի է ավելի զգույշ և ճշգրիտ լինել» (Նույն տեղը, հ. 27, էջ 165)։

Անցած վեց տասնամյակների ընթացքում աշխարհում տեղի ունեցած վիթխարի փոփոխությունները, կոմունիստական կուսակցության և սովետական ժողովրդի կուտակած հսկայական փորձը, սոցիալիզմի համաշխարհային սիստեմի կազմավորումն ու զարգացումը, արտադրաուժերի բուռն վերելքը, սոցիալ-տնտեսական արմատական տեղաշարժերը՝ այս բոլորը հնարավորություն ընձեռեցին հստակորեն բնութագրելու սոցիալիզմի զարգացման արդի փուլը։

Կուսակցության XXIV համագումարն արձանագրեց, որ սովետական ժողովրդի ջանքերով մեր երկրում կառուցվել է զարգացած սոցիալիստական հասարակարգ։ Ընդ որում, համագումարի արած հետևությունը բխում էր այն բանից, որ անցման շրջանի ավարտումից և սոցիալիզմի կառուցումից հետո սկսվում է սոցիալիստական կարգի ամրապնդման պրոցեսը, զարգացած սոցիալիստական հասարակարգի կառուցումը, որ սոցիալիզմն ինքը կարճաժամկետ շրջան չէ, այլ հասարակական-տնտեսական զարգացման տևական փուլ։

Կուսակցության XXV համագումարը, հիմնավորելով նախորդ համագումարի դրույթները, տվեց զարգացած սոցիալիստական հասարակարգի համակողմանի բնութագիրը, նշեց տնտեսական, սոցիալ-քաղաքական, հոգևոր և այլ ոլորտներում դրա կատարելագործման խնդիրները։ Միաժամանակ համագումարը մշակեց զարգացած սոցիալիզմի փուլի տնտեսական ստրատեգիան ինչպես հնգամյակի, այնպես և տևական հեռանկարի առումով։

Զարգացած սոցիալիզմը բնութագրվում է նախորդ շրջանից որակապես տարբերվող արտադրաուժերի առավել բարձր մակարդակով, արտադրահարաբերությունների հասունությամբ։ Հասուն սոցիալիստական հասարակարգում ապահովվում է տնտեսական, սոցիալ-քաղաքական, գաղափարական և այլ բնագավառների ներդաշնակ զարգացումը, որի շնորհիվ նյութական և հոգևոր կարևոր նախադրյալներ են ստեղծվում սոցիալիստական ապրելակերպի հաստատման համար։

Զարգացած սոցիալիզմը կոմունիզմ տանող ճանապարհի օրինաչափ փուլն է, որը նշանակում է հասարակական կյանքի բոլոր ոլորտներում սոցիալիզմի վերջնական հաղթանակ և ամրապնդում։ Միաժամանակ այն նշանակում է, որ ստեղծվել են անհրաժեշտ նախադրյալներ սոցիալիստական կարգերի հնարավորությունների և առավելությունների լրիվ ու համակողմանի դրսևորման, աստիճանաբար կոմունիզմի անցման համար։

Սովետական առաջին հնգամյակների հաջող կատարման շնորհիվ արդեն 1930-ական թվականների վերջերին ՍՍՀՄ-ում հիմնականում կառուցվեց սոցիալիստական հասարակարգ և ստեղծվեց դրան համապատասխան նյութատեխնիկական բազա։ Սակայն, երբ համեմատում ենք երկրի նախապատերազմյան մակարդակը 1970-ական թվականների հետ, ապա պարզորոշ երևում է, որ զարգացած սոցիալիզմի նյութատեխնիկական բազան իր մասշտաբներով բոլորովին նոր մակարդակ է ներկայացնում և իր որակական հատկանիշներով լիովին համապատասխանում է այսօրվա պահանջներին ու խնդիրներին։ Համեմատաբար կարճ ժամանակահատվածում ՍՍՀՄ-ում ստեղծվել է վիթխարի արտադրատնտեսական ապարատ, աշխարհում ամենահամակենտրոնացված արդյունաբերությունը։ Մեր աճի տեմպերի մասին պատկերացում կազմելու համար բավական է նշել, որ վերջին տասը տարվա ընթացքում երկրի տնտեսական պոտենցիալը իրականում կրկնապատկվել է։ Ներկայումս ժողովրդական տնտեսության հիմնական արտադրաֆոնդերի արժեքն անցնում է մեկ տրիլիոն ռուբլուց։ Հանրային արտադրության մեջ գրաղված է կամ սովորում է աշխատունակ բնակչության 90 տոկոսից ավելին։ Խիստ բարձրացել է աշխատողների հանրակրթական և պրոֆեսիոնալ-տեխնիկական մակարդակը։

Այժմ մեր երկիրը թողարկում է ավելի շատ արդյունաբերական արտադրանք, քան ամբողջ աշխարհը՝ 1950 թվականին։ Տասներորդ հնգամյակի



յուրաքանչյուր 2,5 օրում ՍՍՀՄ-ում թողարկվում է այնքան արդյունաբերական արտադրանք, որքան ցարական Ռուսաստանում ամբողջ 1913 թվականին։ Հայկական ՍՍՀ-ում 1,5 օրից էլ պակաս ժամանակահատվածում թողարկվում է ավելի շատ արդյունաբերական արտադրանք, քան նրա ներկայիս տարածքում ամբողջ 1913 թվականին։

Որոշակիորեն փոխվել է մեր երկրի գրաված դիրքը համաշխարհային էկոնոմիկայում։ Եթե Հայրենական մեծ պատերազմի նախօրեին ՍՍՀՄ-ը թողարկում էր համաշխարհային արդյունաբերական արտադրանքի մոտ 10 տոկոսը, ապա ներկայումս նրան բաժին է ընկնում այդ արտադրանքի մեկ հինգերորդը։ Այժմ ՍՍՀՄ-ը արտադրում է ավելի շատ էլեկտրաէներգիա, քան ԳՖՀ-ն, Անգլիան, Ֆրանսիան, Իտալիան և Շվեդիան՝ միասին վերցրած։ Նավթի, պողպատի, հանքային պարարտանյութերի, ցեմենտի, տրակտորների և ուրիշ այլ արտադրատեսակների արտադրությամբ մեր երկիրը աշխարհում գրավում է առաջին տեղը։

Կարևոր է նաև որակական ցուցանիշների համեմատությունը սոցիալիզմի տարբեր փուլերում։ Հասուն սոցիալիզմի նյութատեխնիկական բազան զարգանում է որակապես նոր հիմքի վրա, որն իր կոնկրետ արտացոլումն է գտնում տեխնիկապես ավելի կատարյալ աշխատանքի միջոցների ստեղծման, նյութական արտադրության բոլոր ճյուղերում ինդուստրիալ մեթոդների ներդրման, արտադրության համակողմանի ինտենսիվացման մեջ։

Զարգացած սոցիալիզմի նյութատեխնիկական բազայի կարևոր առանձնահատկություններից մեկն էլ այն է, որ արտադրական և սոցիալական պրոբլեմներն արդեն լուծվում են կոմպլեքսայնորեն։ Սոցիալիստական շինարարության նախորդ փուլերում արտադրության մակարդակը դեռևս չէր կարող միաժամանակ ապահովել արտադրաուժերի արագ զարգացումը և բնակչության աճող նյութական պահանջմունքները։ Սովետական մարդիկ հարկադրված էին ռեսուրսները կենտրոնացնել ամենաառաջնահերթ, պետության բուն գոյության հետ առնչվող խնդիրների լուծման վրա։ Բնականաբար, նախ հարկավոր էր ապահովել ՍՍՀՄ տնտեսական ինքնուրույնությունը, պաշտպանունակությունը, արտադրաուժերի բուռն վերելքը, ապա դրա հիման վրա՝ նաև ժողովրդի բարեկեցության բարձրացումը։ Զարգացած սոցիալիզմի պայմաններում հնարավոր է դարձել էկոնոմիկայի շրջադարձը՝ մարդկանց պահանջմունքների ավելի ու ավելի լրիվ բավարարման նպատակով։

Արտադրաուժերի վերելքին զուգընթաց զարգացած սոցիալիզմի ժամանակաշրջանում էական փոփոխություններ են կատարվում նաև արտադրահարաբերությունների սիստեմում։

Յուրաքանչյուր տնտեսակարգ նյութական բարիքների արտադրության, բաշխման ու փոխանակության բարդ սիստեմ է։ Այդ հարաբերությունների մեջ միշտ էլ առանձնացվում է գլխավորը, որոշիչը, որով և սահմանվում է տվյալ արտադրաեղանակի նպատակը։

Արտադրության կոմունիստական եղանակի հիմքը արտադրության միջոցների հասարակական սեփականությունն է։ Սոցիալիզմի պայմաններում արտադրահարաբերությունների սուբյեկտի դերում ամենից առաջ հանդես է գալիս հասարակությունը՝ որպես արտադրամիջոցների սեփականատեր։ Հենց արտադրամիջոցների հասարակական սեփականությունն է պայմանավորում այդ միջոցների հետ աշխատուժի միացման եղանակը, աշխատանքի հասարակական բնույթը, տնտեսության պլանաչափ զարգացումը։ Հասարակական սեփականությունն իր առարկայական, նյութական արտացոլումը գտնում է հասարակական ամբողջական արդյունքի, ազգային եկամտի և ազգային հարստության մեջ։

Այն փաստը, շեշտում էր Վ. Ի. Լենինը, որ արտադրամիջոցները պատկանում են ողջ հասարակությանը, նշանակում է արտադրամիջոցների նկատմամբ հասարակության բոլոր անդամների հավասարության իրականացում։ Սակայն միայն կոմունիզմի շրջանում, երբ կվերանան մտավոր և ֆիզիկական աշխատանքի էական տարբերությունները, կվերանա նաև ժամանակակից հա-

սարական անհավասարության կարևոր աղբյուրներից մեկը: Ներկայումս ոչ հակամարտ հակասությունները աստիճանաբար հաղթահարվում են կուսակցության տնտեսական քաղաքականության հետևողական իրագործմամբ: Ընդ որում, այդ քաղաքականությունը ելնում է կոնկրետ պատմական պայմաններից և հաշվի է առնում արտադրության զարգացման առանձնահատկությունները: Դրանցից մեկն այն է, որ արտադրության և աշխատանքի հանրայնացման պրոցեսը գործնականում համեմատաբար հավասարաչափ ընդգրկում է ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերն ու բնագավառները՝ արդյունաբերությունը, շինարարությունը, տրանսպորտը, կապը, գյուղատնտեսությունը, առևտուրը, կենցաղային սպասարկումը, գիտատեխնիկական հետազոտությունները և այլն, ապահովելով էկոնոմիկայի համակողմանի և ներդաշնակ զարգացումը:

Հասուն սոցիալիզմի տնտեսական սիստեմը բնութագրվում է նրանով, որ ներկա պայմաններում հիմնական արտադրահարաբերությունը ծառայում է որպես այդ սիստեմի սեփական հիմք: Այլ խոսքով՝ ձեռք է բերվել արտադրամիջոցների հասարակական սեփականության հասունության նոր աստիճան: Փաստորեն Հոկտեմբերյան հեղափոխությունից հետո կապիտալիստներից արտադրամիջոցների բռնագրավմամբ առաջացած սեփականության նոր ձևը սոցիալիզմի ժամանակ որակապես փոխվել է և վերարտադրվում է որպես սոցիալիստական արտադրահարաբերությունների արգասիք:

Զարգացած սոցիալիզմի փուլում արտադրահարաբերությունների (այդ թվում սեփականության) հասունությունն ամենից առաջ նշանակում է, որ հանրայնացված արտադրամիջոցներն ամբողջությամբ սոցիալիստական կուտակման արդյունք են: Սովետական երկիրը ցարական Ռուսաստանից ժառանգեց ընդամենը 50 մլրդ ռուբլու հիմնական ֆոնդեր, մինչդեռ 1918—1977 թթ. երկրում գործարկվեցին շուրջ մեկ տրիլիոն 576 մլրդ ռուբլու ֆոնդեր (տե՛ս Народное хозяйство СССР за 60 лет, Юбилейный стат. ежегодник, М., 1977 г., стр. 423):

Արտադրահարաբերությունների հասունության ներկա աստիճանում արտադրաուժերի սուբյեկտիվ տարրը՝ աշխատուժը (բանվոր դասակարգը, կոլտնտեսային գյուղացիությունը, ժողովրդական մտավորականությունը) լրիվ կազմավորվել է սոցիալիզմի ժամանակ, ձեռք բերելով սոցիալիստական աշխատողի ուրույն հատկանիշներ:

Ներկա փուլում համաժողովրդական սեփականության հասունության մակարդակը բնութագրող կարևոր ցուցանիշ է նաև աշխատավորական զանգվածների լայն մասնակցությունը էկոնոմիկայի կառավարմանը: Բազմազան են այդ մասնակցության ձևերը: Հատկապես բարձրանում է աշխատանքային (այդ թվում արտադրական) կոլեկտիվների դերը պետական և հասարակական գործերի քննարկման ու լուծման, արտադրության և սոցիալական զարգացման պլանավորման, կադրերի պատրաստման ու տեղաբաշխման, աշխատանքի և կենցաղի պայմանների բարելավման բնագավառում:

Աշխատանքային կոլեկտիվների դերի բարձր գնահատումն իր սահմանադրական հաստատումն է գտել զարգացած սոցիալիզմի մանիֆեստում: Սահմանադրության մեջ շեշտվում է, որ հասարակության յուրաքանչյուր անդամ ունի պետական գործերի կառավարմանը մասնակցելու, պետական մարմինների գործունեության բարելավման վերաբերյալ առաջարկություններ անելու իրավունք:

Արտադրահարաբերությունների հասունությունը նշանակում է նաև, որ համաժողովրդական սեփականության հարաբերություններն ընդգրկել են ո՛չ միայն նյութական արտադրության բոլոր ճյուղերն՝ ամբողջությամբ վերցրած (իսկ գյուղատնտեսությունը՝ մի մասով) և ոչ արտադրական ճյուղերի նյութական բազան, այլև բնութագրվում են զարգացման այնպիսի մակարդակով, որի պայմաններում ավարտվում է հասարակական հարաբերությունների ամբողջության ձևավորումը սոցիալիզմին ներհատուկ, կոլեկտիվիստական սկզբունքներով:

Սեփականության հարաբերությունների կատարելագործման ընթացքում արագանում է հանրայնացման պրոցեսը, որով և խորանում է արտադրության



անմիջական հասարակական բնույթը: Հանրայնացման մակարդակի բարձրացումը համաժողովրդական սեփականության շարժման օրգանական հատկանիշն է:

Հանրայնացման պրոցեսը դրսևորվում է տարբեր ձևերով: Դրանցից են սկզբնական արտադրական օղակի խոշորացումը, հանրային արտադրության բոլոր օղակների գործունեության կողմնորոշումը դեպի վերջնական ժողովրդատնտեսական արդյունքները՝ նկատի ունենալով յուրացման համաժողովրդական բնույթը, տնտեսության տարբեր ճյուղերի միջև կապերի խորացումը միջճյուղային կառավարման զարգացման ճանապարհով, կենտրոնացված կառավարման (պլանավորման) ուժեղացումը՝ հաշվեկշիռների, ինֆորմացիայի հավաքման և մշակման ավտոմատացված սիստեմների օգտագործմամբ: Փաստորեն ներկա պայմաններում շարունակվում է արտադրության տեխնիկատեխնոլոգիական և կազմակերպական հանրայնացումը: Վերջինս ի հայտ է գալիս արտադրության մասնագիտացման և կոոպերացման ձևերի փոփոխման ու կատարելագործման, սոցիալիստական սեփականության տարբեր ձևերին պատկանող ձեռնարկությունների միավորման և այլ միջոցներով:

Արտադրության և աշխատանքի հետագա հանրայնացումն արդյունաբերության մեջ ընթանում է արտադրական և գիտաարտադրական միավորումների ստեղծմամբ: Եթե 1970 թ. հոկտեմբերի 1-ին ՍՍՀՄ արդյունաբերության մեջ գործում էին 608 արտադրական և գիտաարտադրական միավորումներ, որոնք թողարկում էին ամբողջ արդյունաբերության իրացված արտադրանքի ընդամենը 6,7 տոկոսը, և դրանցում զբաղված արդյունաբերական-արտադրական անձնակազմի 6,2 տոկոսը, ապա 1976 թ. վերջերին այդ թվերը համապատասխանաբար կազմում էին՝ 3.312, 40,5 և 40,9 տոկոս (տես նույն տեղը, էջ 170):

Հայկական ՍՍՀ արդյունաբերության մեջ 1970 թ. կային ընդամենը 7 միավորումներ, որոնք ընդգրկում էին արդյունաբերական-արտադրական անձնակազմի 17,1 տոկոսը և թողարկում էին արտադրանքի 10,5 տոկոսը, իսկ 1978 թ. սկզբին միավորումների թիվն ավելացել էր 10 անգամ, դրանց թողարկած արտադրանքի տեսակարար կշիռը հասել էր 48,6 տոկոսի, աշխատողներինը՝ 53,1 տոկոսի (տե՛ս Народное хозяйство Армянской ССР в 1977 году, Стат. ежегодник, Ереван, 1978 г., стр. 46):

Արտադրական և գիտաարտադրական միավորումներին զուգընթաց ստեղծվում են տերիտորիալ-արտադրական համալիրներ՝ միջճյուղային և ռեգիոնալ տնտեսական խնդիրների լուծման համար: Հետզհետե ավելի մեծ ուշադրություն է հատկացվում արտադրության կառուցվածքի կատարելագործմանը, դրա կոմպլեքսային զարգացմանը՝ հաշվի առնելով յուրաքանչյուր հանրապետության և շրջանի կոնկրետ պայմանները:

Հանրայնացումը, որը սերտորեն կապված է սոցիալիստական արտադրության մասշտաբների ընդլայնման հետ, իր անմիջական արտացոլումն է գտնում նրա համակենտրոնացման մեջ: Զարգացած սոցիալիզմը բնութագրվում է արտադրության համակենտրոնացման բարձր մակարդակով: Այսպես, ՍՍՀՄ կենտվիճվարչության տվյալներով, 1911 թ. համեմատությամբ, 1975 թ. 100—499 բանվոր ունեցող ձեռնարկությունների թիվն ավելացել է 8,3 անգամ, մինչդեռ 10 հազար և ավելի բանվոր ունեցող ձեռնարկություններինը՝ 19,7 անգամ: 50 մլն ռուբլու և ավելի համախառն արտադրանքի ծավալ ունեցող արդյունաբերական ձեռնարկություններում, որոնք կազմում են ձեռնարկությունների ընդհանուր թվի ընդամենը 4,2 տոկոսը, ներկայումս թողարկվում է երկրի արդյունաբերության ամբողջ համախառն արտադրանքի ավելի քան 52 տոկոսը (տե՛ս Народное хозяйство СССР за 60 лет, стр. 192):

Զարգացած սոցիալիզմի էկոնոմիկային բնորոշ է սոցիալիզմի առավելությունների հետ գիտատեխնիկական հեղափոխության նվաճումների օրգանական միացումը:

Արտադրության սոցիալիստական հանրայնացման մակարդակի հետագա բարձրացման վրա ավելի խոր ազդեցություն է ունենում գիտատեխնիկական առաջընթացը: Այն մեծացնում է արտադրության մասնագիտացման, համա-

կենտրոնացման և կոոպերացման, տնտեսավարման սկզբնական օղակների խոշորացման պահանջը, կյանքի է կոչում արտադրության հետ գիտության կապի նոր ձևեր։ Միայն սոցիալիզմի պայմաններում է, որ գիտատեխնիկական հեղափոխության նվաճումներն ամբողջությամբ ի սպաս են դրվում արտադրության արագ զարգացմանը, աշխատավորների բարեկեցության բարձրացմանը, անհատի համակողմանի զարգացմանը։ Այդ նվաճումների կիրառումը մեծապես նպաստում է հանրային արտադրության ինտենսիվացմանը և դրա արդյունավետության բարձրացմանը։ Հասուն սոցիալիզմի էկոնոմիկայի առանձնահատկություններից մեկն այն է, որ արտադրության հետագա հանրայնացումը՝ աշխատանքի արտադրողականության բարձրացման այդ կարևոր նախապայմանը, խարսխվում է գերազանցապես ընդլայնված վերարտադրության ինտենսիվ գործոնների վրա։

ՍՄԿԿ XXV համագումարը շեշտեց հանրային արտադրության ինտենսիվացման անհրաժեշտությունը, որը տեղի է ունենում գործող ձեռնարկությունների վերակառուցմամբ և տեխնիկական վերազինմամբ, կոմպլեքսային մեքենայացմամբ ու ավտոմատացմամբ։ Անցումը զանգվածային հոսքային արտադրությանը, իր հերթին, ենթադրում է ձեռնարկությունների մասնագիտացման խորացում և կոոպերացման զարգացում, աշխատանքի և արտադրության կազմակերպման պրոգրեսիվ մեթոդների ներդրում։ Ներկայումս երկրի ողջ էկոնոմիկան մի միասնական ժողովրդատնտեսական համալիր է, որն ընդգրկում է հասարակական արտադրության փուլերը (արտադրություն, բաշխում, փոխանակություն), ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերը և ոչ արտադրական ոլորտը, մեր ամբողջ երկրի բոլոր տնտեսական շրջանները, միութենական հանրապետությունների տնտեսական համալիրները։ Այլ խոսքով, ժամանակակից սոցիալիստական էկոնոմիկան ամբողջ հասարակության մասշտաբով արտադրության պլանաչափորեն կոոպերացված ճյուղերի և դրանց ռեգիոնալ համալիրների միմյանց լրացնող, ինչպես նաև ոչ արտադրական ճյուղերի համակողմանիորեն զարգացած սիստեմ է։

Կապիտալիզմի պայմաններում աշխատանքի և արտադրության հանրայնացման պրոցեսը չի կարող հանգեցնել միասնական ժողովրդատնտեսական համալիրի ստեղծմանը՝ մասնավոր տնտեսական հարաբերությունների տիրապետության, արտադրության անարխիայի պատճառով։ Սոցիալիզմի հաղթանակով մեր երկրում դրվեց նման համալիրի ստեղծման հիմքը։ Նոր հասարակարգի կառուցման սկզբնական փուլում սոցիալիստական էկոնոմիկայի հանրայնացման մակարդակը բարձր չէր, գյուղատնտեսության մեջ մեծ տեսակարար կշիռ ուներ բնեղեն արտադրությունը, խոշոր տարբերություններ կային միութենական հանրապետությունների տնտեսական զարգացման մակարդակների միջև, կենտրոնացած պլանավորումը չէր ընդգրկել էկոնոմիկայի բոլոր բնագավառները։ Նման պարագայում, բնականաբար, դեռևս չէր կազմավորվել միասնական ժողովրդատնտեսական համալիրը, քանի որ դրա համար անհրաժեշտ նախադրյալներ կարող էին ստեղծվել միայն արտադրամիջոցների հասարակական սեփականության տիրապետության պայմաններում, երբ արտադրության և աշխատանքի հանրայնացումը բարձր մակարդակի է հասնում։

Զարգացած սոցիալիզմի փուլում տեղի է ունենում կոլտնտեսային-կոոպերատիվ սեփականության սոցիալ-տնտեսական մերձեցում գյուղատնտեսության պետական հատվածի հետ։ Այդ մերձեցման պրոցեսների հիմքն են կազմում գյուղատնտեսության տեխնիկական վերազինումը, դրա հետագա էլեկտրիֆիկացումը և քիմիացումը։ Այժմ կոլտնտեսությունների մեծամասնությունը էլեկտրաէներգիայի կարիքները հոգում է պետական էլեկտրացանցից, հողերի մելիորացումն իրագործում է պետությունը։

Վերջին շրջանում կոլտնտեսային արտադրության ինտենսիվ զարգացումը բնութագրվում է պետականի հետ կոլտնտեսային սեփականության մերձեցման անհրաժեշտությունը պայմանավորող որակական փոփոխություններով, երբ դրանց միջև սոցիալ-տնտեսական տարբերություններն աստիճանաբար դառնում են նվազ էական։ Դա ձևով է բերվում կոլտնտեսություններում և սովխոզներում աշխատանքի տեխնիկական զինվածության մակարդակների մերձեցմամբ, դրանց նյութատեխնիկական մատակարարման սիստեմի միասնականությամբ, գների սիստեմի կատարելագործմամբ։ Մեկ հեկտար վարելահողին ընկնող հիմնական արտադրաֆոնդերով կոլտնտեսային հատվածը փաստորեն հավասարվել է պետական գյուղատնտեսության ձեռնարկություններին։



Նման մերձեցման համար կարևոր էր կոլտնտեսություններում աշխատանքի երաշխավորված վարձատրության սիստեմի կիրառումը՝ սովխոզների տարիֆային դրույքների մակարդակով։ Էական նշանակություն ուներ նաև կոլտնտեսականների համար կենտրոնացված կենսաթոշակային ապահովության սահմանումը, նրանց սոցիալական ապահովագրության միասնական ֆոնդի ստեղծումը։

Արդի փուլում ՍՄԿԿ ագրարային քաղաքականությունը միտում է գյուղատնտեսական արտադրության համակողմանի ինտենսիվացում, աշխատանքի արտադրողականության բարձրացում, հողի օգտագործման բարելավում։ Այդ քաղաքականության հիմնական ուղղություններից մեկը արտադրության կազմակերպման ձևերի, գյուղատնտեսության կառավարման կատարելագործումն է։ Իսկ դա նշանակում է ըստ ամենայնի կարևորել գյուղատնտեսական արտադրության մասնագիտացումը, համակենտրոնացումը, կոոպերացումը, բարձրապրանքային խոշոր ձեռնարկությունների ստեղծումը։

Գյուղատնտեսական արտադրության հանրայնացման, համակենտրոնացման և մասնագիտացման պրոցեսը կոլեկտիվացումից հետո իրագործվել է կոլտնտեսային-կոոպերատիվ և պետական ձևերով։ Զարգացած սոցիալիզմի փուլում ծագեց և հետզհետե կատարելագործվեց գյուղատնտեսական արտադրության հանրայնացման նոր ձևը՝ միջտնտեսային կոոպերացումը և ագրոարդյունաբերական ինտեգրացումը, որը հնարավորություն է ընձեռում գյուղատնտեսության մեջ լայնորեն կիրառելու գիտության և տեխնիկայի նորագույն նվաճումները, ապահովելու արտադրության հետագա մասնագիտացումն ու համակենտրոնացումը։

Արտադրության սոցիալիստական հանրայնացումը մեր օրերում անկարելի է պատկերացնել առանց սոցիալիստական տնտեսական ինտեգրացիայի զարգացման։ ՏՓԽ-ի անդամ երկրների սոցիալիստական համագործակցության շրջանակներում արտադրության մասնագիտացման և կոոպերացման խորացումը, արտաքին փոխադարձ տնտեսական կապերի և գիտատեխնիկական համագործակցության ուժեղացումը դառնում են սոցիալիստական յուրաքանչյուր երկրի հանրային արտադրության արդյունավետության բարձրացման վճռական գործոն և ապահովում են տնտեսական աճի կայուն ու բարձր տեմպեր, զարգացման մակարդակների մերձեցում։ Բնական ռեսուրսների համատեղ յուրացումը, ինդուստրիալ խոշոր համալիրների համատեղ կառուցումը, ընդհանրապես սոցիալիստական տնտեսական ինտեգրացումն ստեղծում են արտադրության հանրայնացման մակարդակի բարձրացման հնարավորություններ միջազգային մասշտաբով։

ՍՍՀՄ տնտեսական զարգացման արդի փուլում ստեղծվում են սոցիալիստական արտադրության բարձրագույն նպատակին հասնելու անհրաժեշտ պայմաններ։ Դրա հուսալի երաշխիքը զարգացած սոցիալիզմի հզոր նյութատեխնիկական բազայի առկայությունն է։

նաև հակիմացական) շարժառիթներով գործող նորմերին հպատակվելու պահանջը «նորմալ մտածողության» դաստիարակության նախապայման է համարվել։ Առհասարակ տարբեր դարաշրջաններ նույնքան տարբեր հոգևոր պահանջներ են ներկայացրել։ Ավանդության համաձայն, Պյութագորասը նախընտրել է իր դպրոցում ունենալ կամային անհատականություններ, կամքը նորի որոնման ճանապարհին համարվել է ամենավճռական գործոնը։ Իսկ կամային հատկությունները չափվել են ապագա սանի հնարավորին չափ երկար լռելու կարողությամբ։ Ա. Էյնշտեյնի մոտ նմանօրինակ «ընդունելության քննության» ենթակա են համարվել ապագա գիտնականի հատկանիշները ոչ շաբլոն, այլակերպ մտածելու և անհատի՝ «իրենից դուրս գալու», «իրենից վեր գտնվելու» կարողություններում։

Բեկոնի և Դեկարտի դարաշրջանում միջնադարի խավարամոլության դեմ մղվող պայքարում առօրեական մտածողությանը (ողջախոհությանը) ապավինելը մտքի կենսունակության արտահայտություն էր։ Արդեն գիտական հաջորդ սերնդի մոտ գիտական ու գեղարվեստական մտածողության համար յուրատեսակ պրոֆեսիոնալ չափանիշի նշանակություն ստացավ առօրեական մտածողությանը հակադրվելը։ Մեր դարում գիտական, գուցե նաև գեղարվեստական մտածողությունը տարիմաստ է (հատկապես գիտական հեղաշրջումների փուլերում) ո՛չ միայն ողջախոհության, այլև արդեն հայտնի գիտական կամ գեղարվեստական համակարգերի տեսանկյունից։ Այս իմաստով բնութագրական է Վ. Հայզենբերգի անորոշությունների սկզբունքի առնչությամբ Ն. Բորի հանրահայտ դիտողությունը. կասկած չկա, որ այստեղ գործ ունենք խելահեղ գաղափարի հետ, բայց այն բավականի՞ն խելահեղ է, որպեսզի ճշմարիտ լինի։ Ժամանակակից գիտության համար յուրատեսակ իմացական սկզբունք դարձած այս դրույթն արդեն ենթադրում է, որ նախկինում ճանաչողական կուռքի վերածված տրամաբանական «տեխնոկրատիայի» կողքին ծնունդ է առնում նոր կուռք՝ նույնիսկ տրամաբանական հայտնի կանոնների հետ հաշվի չնստող տարիմաստ (պարադոքսալ) մտածողությունը։ Նոր գիտելիքը ծնունդ է առնում արդեն հայտնի գիտելիքների տրամաբանական շղթայում որպես անհրաժեշտ արդյունք։ Նման հետևությունը ստեղծագործական մտածողության համար հոգևոր կոլան է դառնում, երբ առնչվում ենք սկզբունքորեն նոր ռեալությունների հետ։ Հազիվ թե քվանտային օբյեկտների իմացությունը հնարավոր դառնար, եթե մարդկային միտքը շարունակեր գերի մնալ տրամաբանական դասական համակարգերում։ Պարադոքսների աշխարհը կարող է հայտնաբերվել միայն նույնքան պարադոքսալ չափերի հասնող այլակերպ մտածողությամբ։

Վաղուց ապացուցված է, որ աշխարհը, մատերիական թե հոգևոր դրսևորմամբ, բաղկացած է ինչպես «կարգ ու կանոնից», այնպես էլ «անկարգությունից», երևույթներն ունեն ինչպես օրինաչափ, այնպես էլ քաոսային բնութագրություններ, իսկ մարդկային մտածողությունը ո՛չ միայն իր բովանդակությամբ, այլև ձևով դետերմինացված է իրականության կառուցվածքով։ Մտքի գործունեության մեջ միայն տրամաբանականին ապավինելը հավասարազոր է իրականության մեջ քաոսայինի անտեսմանը։ Իրավ, դոմինանտը իրականության, հետևաբար, նաև իմացական ապարատում տրամաբանականն է։ Բայց և իռացիոնալիզմն անհող չէ։ Վերջինիս ոչ գիտական բնույթը ոչ թե անտրամաբանականը հաշվի առնելն է, այլ նրա բացարձակացումը։

Քաղաքակրթության ողջ պատմության ընթացքում նորի հայտնաբերումը հեռու է եղել սոսկ ինտելեկտուալ ֆենոմեն լինելուց։ Պայքարը հանուն նոր գիտելիքի, ինչպես ամեն մի պայքար, ենթադրում է կամային ու սոցիալ-բարոյական համապատասխան հատկանիշներ, անզիջում պայքար, տոկունություն, նույնիսկ ինքնազոհողության պատրաստակամություն։ Պատմությունը վկայում է, որ իմացության զարգացման առաջին ճակատը՝ գաղափարների դրաման, իսկական ողբերգության է վերածվել նրանց կրողների համար։

Խիզախումը իմացական արժեքավորում է ստանում ինչպես նոր, անսովոր, գուցե նույնիսկ տվյալ պայմաններում մերժվող գաղափար առաջարկելու իմաստով, այնպես էլ սխալվելու ռիսկով։ Գ. Վ. Պլեխանովը միայն չի սրամտել՝ պնդելով, որ մարդու առավելությունը կենդանիների նկատմամբ թեկուզ սխալ-



վելու շնորհքն է։ Միայն ճիշտ լինելու մտայնությունը կարող է ոչ քիչ ճշմարտություններ դարձնել տաղտկալի ֆրազներ։ Խորապես իմաստալից է այն միտքը, թե բանական մարդը շարունակում է շատ ավելի վախենալ սխալվելուց, քան այդ պահանջում են գիտության ու սոցիալական առաջընթացի շահերը։ Անսխալական միօրինակությանը ծառայող չափազանց զգուշությունն ավելի վտանգավոր է գիտության համար, քան իմացության պրոցեսում սպրդած սխալները։ Մտահոգիչ է այն փաստը, որ անպատիժ շաբլոնն առավել հաճախ է դրսևորվում մարդկանց գործերում ու մտքերում, քան պատիժն արհամարհող ռիսկը։ Սխալվելու բացառումը արգելակում է նաև ճշմարտությունը կամ, ինչպես Հեգելը կասեր, «մոլորվելուց վախենալն արդեն մոլորություն է»։

Դիդակտիկական եզրակացությունը, բնականաբար, չի հանգում մոլորության ուսուցման, ինչպես քննադատական կամ կասկածի տարր բովանդակող մտածողության դաստիարակումը չի նշանակում անվստահություն ներարկել գոյություն ունեցող արժույթների նկատմամբ։ Իմացության յուրաքանչյուր պրոցես ենթադրում է որոնում, մոլորվելու ռիսկ։ Դրա ելակետը ո՛չ միայն նախորդ փուլերում ձեռք բերված հասումներն են, այլև թույլ տրված սխալները։ Հետևաբար, դաստիարակվող մտածողությունը ենթադրում է որոնելու և մոլորությունների հնարավորություն։

«Տրամաբանական գերությունից» ազատագրումը բովանդակում է մտածողության այնպիսի հատկանիշների զարգացում, ինչպիսիք են՝ ճկունությունը, զգացմունքային գունավորումը, երևակայությունը, ինտուիցիան։ Վերջինիս դաստիարակությունը արժեքավորվում է այն փաստով, որ ամենանուրբ, բազմահարուստ ու խոր մտքերը նախ դրսևորվում են ինտուիտիվ ձևով։ Ժամանակին նշանավոր ֆիզիկոս Լուի դե Բրոյլը և մաթեմատիկոս Պուանկարեն նկատել են, որ գիտության մեջ իրոք նոր էջ բացելն առնչվում է ոչ այնքան տրամաբանական ձևականացված կանոնների, որքան ինտուիցիայի խիզախումների ու երևակայության համարձակ թռիչքների հետ։

Մեր օրերում բնականի նկատմամբ նույնքան բնական կարոտը մտածողության ոլորտում արտահայտվում է անկրկնելիության, ինքնատիպության պահանջի ձևով։ Արդարև, անկրկնելին պետք է փնտրել ոչ այնքան տրամաբանության, որքան ինտուիցիայի ոլորտում։ Ուրեմն, մտքի գործողության մեջ միօրինակությունը (թեկուզ և տրամաբանականի շրջանակներում) կամ ինքնատիպության պակասը չձևավորված մտածողության դրսևորումներ են։

Փաստերը որոշակի սկզբունքի հանգեցնելը, դրանց հիմքում միտում տեսնելու կարողությունը, այլ կերպ ասած՝ ընդհանրացնող մտածողության դաստիարակությունը «ինֆորմացիայի պոռթկման», մեր դարում էմպիրիկ մտածողության վտանգից զերծ գտնվելու և ինֆորմացիայի հեղեղի մեջ նպատակասլաց կողմնորոշվելու միջոցներից վճռականն է։ Այս երևույթի տեսական գաղափարական իմաստավորմանն է վերաբերում ՍՄԿԿ XXV համագումարում ընկեր Լ. Ի. Բրեժնևի զեկուցման մեջ արտահայտված այն միտքը, որ արդի դարաշրջանում գիտելիքների ծավալի աննախադեպ աճի պայմաններում «գլխավոր շեշտը» պետք է դնել ոչ թե փաստերի որոշակի քանակի յուրացման, այլ պահանջվող գիտելիքների ինքնուրույն յուրացման և փաստերում կողմնորոշվելու ունակության պատվաստման վրա (տե՛ս ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 115)։

Ժամանակակից գիտության ու արտադրական պրոցեսի ծայրաստիճան մասնագիտացումը ենթադրում է ո՛չ միայն առհասարակ ստեղծագործական մտածողության դաստիարակություն, այլև համապատասխան մասնագիտացում՝ մտածողության կազմավորման պրոցեսում։ Առհասարակ ստեղծագործական մտածողության դաստիարակությունն անհրաժեշտ, բայց տակավին ոչ բավարար պայման է արդի գիտության ավելի քան 1.200 բնագավառների և համանման բազմաճյուղ արտադրության համար պիտանի ուղեղներ պատրաստելու գործում։ Մասնագիտության ընտրության ազատության նոր սահմանադրական պահանջը մեր երկրում սոսկ քաղաքական ակտ չէ. այն միաժամանակ խոր հումանիստական մոտեցում է համանման «բնատուր» կարողության

պայմաններում շեշտված անհատականության ձևավորման նկատառմամբ։ Լայն սոցիալական առումով որոշակի պահանջ է առաջադրվում դասակարգել և տարբերակել «մաթեմատիկական ուղեղը», «կենսաբանականից», «գեղարվեստականը»՝ «փիլիսոփայականից»։ Ինտելեկտուալ ինքնաճանաչումը և պրոֆեսիոնալ «ես»-ի ձևավորումը սոսկ անհատի հետ առնչվող պրոբլեմ չէ։ Մասնագիտության ընտրության ազատությունը անհատի և նրան սնող միկրոսոցիալական միջավայրի կամայականությունը չէ։ Հասարակությունը կոչված է ռացիոնալ կերպով տնօրինելու և զարգացնելու իր հարստությունը, առավել ևս մեր դարում բարձր գնահատվող ինտելեկտուալ հարստությունը։ Այդ պահանջի անտեսման հետևանք է այն փաստը, երբ բուհերի առանձին շրջանավարտներ հեշտությամբ են փոխում ուսուցման տարիներին սովորած մասնագիտությունը, երկփեղկվում են, ընկնում հոգեկան ծանր կացության մեջ։ Նման իրավիճակից տուժում է նաև հասարակությունը։

Սոցիալականի և իմացականի միահյուսումն առավել ակնհայտ է ժամանակակից գիտության մեկ այլ տենդենցում՝ կոլեկտիվ գիտական մտածողության բնագավառում։

Ժամանակակից գիտական գործունեության խիստ բարդացումը պահանջում է ո՛չ միայն ստեղծագործական կոլեկտիվների առկայություն, այլև գիտական գործունեության յուրօրինակ կոոպերացիա տվյալ երկրի, երկրների որոշակի խմբի և նույնիսկ ամբողջ երկրագնդի մասշտաբով։ Միջուկային ուսումնասիրությունների միջազգային կենտրոնները Դուբնայում, Ժնևում և այլուր կամ կոսմիկական տարածության միասնական ուսումնասիրության սովետա-ամերիկյան ջանքերը սոսկ քաղաքական ակտեր չեն, այլ գլխավորապես ուսումնասիրության օբյեկտի բարդության օբյեկտիվ պահանջ։ Իմացության զարգացման այս տենդենցում ակնհայտ է դառնում գիտելիքի խոր սոցիալական էությունը նույնիսկ նրա առաջացման ոլորտում։

Հատկանշական է, որ մտածողության կազմավորման նկատառմամբ ժամանակակից գիտության հարուցած պահանջները համահնչուն են հասարակական կյանքի սոցիալիստական կառուցվածքի սկզբունքներին։ Հանրային սեփականատիրության վրա խարսխված մեր հասարակարգի «կոլեկտիվիստական ոգին» է հնարավորություն ընձեռել կարճ ժամանակահատվածում դիմագրավել ինտելեկտուալ հսկայական ավանդույթներ ու հնարավորություններ ունեցող ողջ բուրժուական աշխարհին հոգևոր բարիքների արտադրության այս վճռական ոլորտում։

Դժվար է գերագնահատել ստեղծագործական մտածողության դերը մեր հասարակության կյանքում։ Չէ՛ որ սոցիալիզմը կոչված է սկզբունքորեն վերջ դնելու պատմության տարերային ընթացքին ինչպես մարդկային գործունեության անմիջական, այնպես էլ հեռավոր հետևանքների կանխատեսման ու ղեկավարման իմաստով։ Սկզբունքորեն սոցիալիզմը հանդես է գալիս իբրև ոչ թե սոսկ կատարողների, այլ ստեղծագործողների հասարակություն։

Ստեղծագործական մտածողությունը դրսևորվում է աշխատանքի մարդկայնացման կոմունիստական իդեալում։ Հենց ստեղծագործական աշխատանքն է կոչված ձևավորելու նոր, ներդաշնակ զարգացած մարդուն։ Նոր ինֆորմացիային հաղորդվելը, լավատեղյակությունը մարդու հոգևոր պահանջմունքներից են, բանական անհատի բնորոշ հատկանիշները։

Մարդու ստեղծագործական խառնվածքին անհարիր են սպառողական հոգեբանությունը, քաղքենիական ընչաքաղցությունը։ Սպառման հաճույքն անիմաստ է, եթե այն չի զուգակցվում նաև ստեղծելու անհրաժեշտության գիտակցությամբ։ Մարդավայել կյանքը ո՛չ միայն և ոչ այնքան սպառման, որքան ստեղծելու պրոցես է։

Իմացական ու սոցիալ-բարոյական երևույթները վկայում են, որ սոցիալիզմն է կոչված նպաստավոր հող ստեղծելու կրթական սիստեմը ժամանակակից գիտության ու հումանիզմի պահանջներին համապատասխան վերափոխելու համար, որ արդի դարաշրջանում ինչպես գիտությունն է գործում սոցիալիզմի օգտին, այնպես էլ սոցիալիզմը՝ գիտության։

---

Կուսակցական շինարարության

տեսություն և պրակտիկա

# ԿԱՐԳԱՊԱՀՈՒԹՅՈՒՆԸ ԿՈՄՈՒՆԻՍՏԻ ԲՆՈՐՈՇ ՀԱՏԿԱՆԻՇՆ Է

**Ս. Մ. ԽԱՉԱՏՐՅԱՆ**
ՀԿԿ Կենտկոմին առընթեր կուսակցական հանձնաժողովի նախագահ

ԿԱՐԳԱՊԱՀՈՒԹՅՈՒՆԸ ԲԱՐՁՐ կազմակերպվածության երաշխիքն է, իսկ կազմակերպվածությունը, Վ. Ի. Լենինի բնորոշմամբ, տասնապատկում է կուսակցության ուժը։ ՍՄԿԿ կանոնադրությունը սահմանում է, որ կուսակցության շարքերի գաղափարական և կազմակերպական միասնությունը, բոլոր կոմունիստների գիտակցական կարգապահությունը ՍՄԿԿ կյանքի անխախտ օրենքն է։ Ընդ որում, կուսակցական կարգապահությունը պետք է լինի գիտակցական և ոչ երբեք՝ հարկադրական։

Զարգացած սոցիալիստական հասարակարգի կառուցումը ՍՍՀՄ-ում, ինչպես հայտնի է, զուգորդվեց սոցիալիստական դեմոկրատիայի հետագա ընդլայնման և խորացման հետ։ Այդ պրոցեսը, անշուշտ, ընդգրկեց նաև ՍՄԿԿ գործունեությունը և իր արտացոլումը գտավ կուսակցության ծրագրի ու կանոնադրության մեջ։

ՍՄԿԿ-ի կազմակերպական կառուցվածքի գլխավոր սկզբունքը դեմոկրատական ցենտրալիզմն է, որը ենթադրում է կուսակցական բոլոր ղեկավար մարմինների ընտրովիություն՝ ներքևից մինչև վերև, կուսակցական մարմինների պարբերական հաշվետվություն իրենց ստորին կազմակերպությունների և վերադաս մարմինների առջև, կուսակցական խստագույն կարգապահություն և փոքրամասնության ենթարկվելը մեծամասնությանը, վերադաս մարմինների որոշումների անպայման պարտադիր լինելը ստորադասների համար։ Այսպիսով, ներկուսակցական դեմոկրատիան և կուսակցական կարգապահությունը դիալեկտիկական սերտ միասնության ու կապի մեջ են, փոխադարձաբար պայմանավորում են միմյանց։

Կուսակցական կարգապահության էությունը, նրա տեղն ու դերը կուսակցական շինարարության մեջ բազմակողմանիորեն մշակել և հիմնավորել է Վ. Ի. Լենինը։ Գործողությունների միասնականություն, քննարկման և քննադատության ազատություն— ահա կուսակցական կարգապահության էությունը (տե՛ս Երկեր, հ. 11, էջ 395)։

Մեր քաղաքական հակառակորդները, ինչպես անցյալում, այնպես էլ մեր օրերում, պնդում են թե կուսակցական ամուր կարգապահությունը, իբր, սահմանափակում է դեմոկրատիզմը, նեղացնում նրա գործունեության ոլորտը։ Դեմոկրատական ցենտրալիզմը, խստագույն կարգապահությունը ինչ-որ չափով սահմանափակո՞ւմ են, արդյոք, կոմունիստների իրավունքները։ Դեմոկրատիզմի անարխիստական հասկացությամբ՝ այո՛, նրա իսկական կոմունիստական առումով՝ ամենևին էլ ո՛չ։ Լենինյանները, իսկական կոմունիստ-

ները ճնշվում են ոչ թե կուսակցական խստագույն կարգապահությունից ու պահանջկոտությունից, ոչ թե կարգ ու կանոնից ու կազմակերպվածությունից, այլ անարխիստական թափթփվածությունից, մանր-բուրժուական անկազմակերպվածությունից ու անպատասխանատվությունից։

Մեր կուսակցության բազմահարուստ փորձով անառարկելիորեն ապացուցված է, որ իսկական կոմունիստները, կուսակցության գործի ու պայքարի աննկուն զինվորները կոփվում ու դաստիարակվում են ոչ թե լիբերալիզմի, տարերայնության, ամեն ինչ ներելու մթնոլորտում, այլ խստագույն պահանջկոտության, ամուր կարգապահության, գործնականության և գործարարության մթնոլորտում։

Չպետք է մոռանալ, որ բուն սոցիալիստական արտադրությունը, արտադրողական ուժերի ու միջոցների կենտրոնացումը և կառավարումը անառարկելիորեն պահանջում են բարձր կազմակերպվածություն և կարգապահություն։ «...Յուրաքանչյուր խոշոր մեքենայական ինդուստրիա,— նշել է Վ. Ի. Լենինը,— այսինքն՝ սոցիալիզմի հենց նյութական, արտադրական աղբյուրն ու հիմքը,— պահանջում է անպայման և խստագույն միասնականությունն այն կամքի, որն ուղղություն է տալիս հարյուրավոր, հազարավոր և տասնյակ-հազարավոր մարդկանց միատեղ աշխատանքին... Բայց ինչպե՞ս կարող է ապահովվել կամքի խստագույն միասնականությունը։— Հազարավորների կամքը մեկի կամքին ենթարկելով» (Երկեր, հ. 27, էջ 322—323)։

Առաջնորդը, սակայն, գտնում էր, որ խստագույն կարգապահության և դեմոկրատիզմի միջև եղած փոխհարաբերակցությունը շատ բանով պայմանավորված է պատմական կոնկրետ պայմաններով և մասսաների գիտակցականության աստիճանով։ Հազարավորների կամքը մեկի կամքին ենթարկելը, նշում էր նա, ընդհանուր աշխատանքի մասնակիցների իդեալական գիտակցականության և կարգապահության պայմաններում ավելի շատ դիրիժորի մեղմ ղեկավարությունը կարող է հիշեցնել։ Նա կարող է դիկտատորական ձևեր ընդունել, եթե չկան իդեալական կարգապահություն և գիտակցականություն։ Բայց այսպես թե այնպես միասնական կամքին անառարկելիորեն ենթարկվելը անպայման անհրաժեշտ է։

Հասարակական աշխատանքի սոցիալիստական կազմակերպումը խարսխված է ամենից առաջ աշխատավորների գիտակցական կարգապահության վրա։ Դրա առաջին փայլուն դրսևորումը Մոսկվա—Կազան երկաթուղու բանվորների կողմից իրենց նախաձեռնությամբ կազմակերպված կոմունիստական առաջին շաբաթօրյակն էր, որը Վ. Ի. Լենինն անվանեց կոմունիզմի ծիլեր, համաշխարհային-պատմական նշանակություն ունեցող շրջադարձի սկիզբը։

Սովետական իշխանության առաջին տարիներին, օտարերկրյա ինտերվենցիայի և քաղաքացիական կռիվների թեժ օրերին, նոր, սոցիալիստական կարգապահությունը պահպանվում էր նաև հեղափոխական բռնության միջոցով։ Այն երկաթյա կարգապահություն էր և պահպանվում էր ամենից առաջ կոմունիստների, ղեկավար աշխատողների անձնվորության, բարձր գաղափարայնության հաշվին։ 1920 թ. Վ. Ի. Լենինը գրում էր, որ բոլշևիկներն իշխանության գլուխ մնալ չէին կարող ոչ թե միայն երկու և կես տարի, այլև երկու և կես ամիս առանց խստագույն, իսկապես երկաթյա կարգապահության կուսակցության մեջ, առանց բանվոր դասակարգի ամենալիակատար աջակցության։ Ինչո՞վ է պահպանվում և ամրապնդվում այդ կարգապահությունը։ «Նախ,— նշում էր Վ. Ի. Լենինը,— պրոլետարական ավանգարդի գիտակցականությամբ և նրա նվիրվածությամբ հեղափոխությանը, նրա տոկունությամբ, անձնազոհությամբ, հերոսությամբ։ Երկրորդ՝ աշխատավորների ամենալայն մասսայի, առաջին հերթին պրոլետարական, բայց նաև ոչ-պրոլետարական աշխատավոր մասսայի հետ կապվելու, մերձենալու, որոշ չափով, եթե կուզեք, ձուլվելու հմտությամբ։ Երրորդ՝ այդ ավանգարդի կողմից իրագործվող քաղաքական ղեկավարության ճշտությամբ, նրա քաղաքական ստրատեգիայի ու տակտիկայի ճշտությամբ, այն պայմանով, որ ամենալայն մասսաները սեփական փորձով համոզվեն այդ ճշմարտության մեջ» (Երկեր, հ. 31, էջ 9—10)։

Կարգապահության մասին բոլոր տեսակի խոսակցությունները, սակայն,



իրական արժեք կունենան միայն այն ժամանակ, երբ նրա ջատագովները հենց իրենք կհանդիսանան կարգապահության և կազմակերպվածության հետևողական մարտիկներ, երբ իրենք՝ կուսակցական աշխատողները, սրբությամբ կպաշտպանեն կուսակցական ու պետական կարգապահությունը և մեծագույն հարգանքով կվերաբերվեն սովետական օրենքի, քաղաքացիների իրավունքների և օրինական շահերի նկատմամբ։ Ահա ինչու Վ. Ի. Լենինը նախազգուշացնում էր. «...Եթե մենք բարեխղճորեն կարգապահություն ենք սովորեցնում բանվորներին և գյուղացիներին, ապա պարտավոր ենք սկսել հենց մեզնից» (ПСС, т. 50, стр. 63)։ Մեծ առաջնորդը այդպես էլ վարվում էր։

1922 թ. Վ. Ի. Լենինը առաջարկ է ներկայացնում քաղբյուրո, որ խիստ նկատողություն հայտարարվի կուսակցության Մոսկվայի կոմիտեին՝ կոմունիստների նկատմամբ ներողամտություն ցուցաբերելու համար։ Այդ ավելորդ ներողամտությունը նկատի առնելով՝ նա զայրույթով նշել է. «Խայտառակություն և այլանդակության գագաթնակետն է՝ իշխանության գլուխ կանգնած կուսակցությունը պաշտպանում է «իր» սրիկաներին» (ПСС, т. 45, стр. 53)։

Խոսքի և գործի միասնությունն աշխատանքի լենինյան ոճի կարևորագույն պահանջներից է։ 1919 թ. Վ. Ի. Լենինն առաջարկեց իր տեղակալներին՝ վերակառուցել իրենց աշխատանքն այն հաշվով, որպեսզի նրանք հնարավորություն ունենան աշխատաժամանակի մեծ մասը հատկացնելու ժողկոմխորհի որոշումների փաստական կատարմանը և դրանց վերահսկողության կազմակերպմանը։

Անշեղորեն առաջնորդվելով կուսակցական ու պետական կարգապահության ամրապնդման վերաբերյալ լենինյան դրույթներով՝ մեր կուսակցությունն այսօր էլ բացառիկ կարևոր տեղ է հատկացնում այդ հարցերին։ ՍՄԿԿ XXV համագումարը նշեց, որ մարդկանց նկատմամբ վստահությունն ու հարգանքը պետք է զուգորդվեն հանձնարարված գործի համար բարձր պահանջկոտության և կադրերի անձնական պատասխանատվության հետ։ Հաշվի առնելով, որ ընդունված որոշումների վերահսկողությունը և կատարման ստուգումը կուսակցական ու պետական կարգապահության ամրապնդման գլխավոր միջոցն են, համագումարն առանձնահատուկ ուշադրություն հատկացրեց այդ գործին և շեշտեց, որ ընդունված որոշումների կենսագործումը կուսակցական, սովետական ու տնտեսական ղեկավարների, յուրաքանչյուր կուսակցական մարմնի, յուրաքանչյուր սկզբնական կուսակցական կազմակերպության պարտականությունն է։ Համագումարն այդ առնչությամբ պահանջեց բարձրացնել միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմների, կուսակցության մարզկոմների և երկրկոմների քարտուղարությունների, հանրապետությունների մինիստրների խորհուրդների, սովետների գործկոմների, մինիստրությունների ու գերատեսչությունների կոլեգիաների պատասխանատվությունը։ Համագումարը կուսակցական և պետական կարգապահության ամրապնդման գործում միաժամանակ կարևորեց ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր կուսակցական վերահսկողության կոմիտեի և տեղական կուսակցական կոմիտեներին առընթեր կուսակցական հանձնաժողովների դերը։

Սոցիալ-Հոգեբանական առումով կարգապահությունը ո՛չ միայն անձը բնութագրող կարևորագույն հատկանիշ է, այլև մարդկանց, ինչպես նաև մարդկանց և կոլեկտիվների միջև գոյություն ունեցող հասարակական կապերի և հարաբերությունների բարդ հանգույց։ Հասարակության մեջ, կոլեկտիվներում մարդիկ պարտավոր են հետևելու որոշակի կարգի, օրենքների, իրավական ու բարոյական նորմերի։ Նրանք օժտված են ո՛չ միայն լայն քաղաքացիական իրավունքներով, այլև ունեն կոնկրետ պարտականություններ։ Ղեկավարման և կառավարման սուբյեկտը ո՛չ միայն սահմանում է համապատասխան կանոններ և նորմեր, որոնց կատարումը պարտադիր է տվյալ գործի հետ առնչվող բոլոր անձանց համար, այլև իրականացնում է այդ նորմերի և կանոնների կատարման վերահսկողությունը, սահմանված կարգով պատասխանատվության է կանչում թերացողներին, խրախուսում պարտաճանաչներին։

Կարգապահությունը, որպես հասարակական հարաբերությունների կապի մի ձև, ընդգրկում է ո՛չ միայն ղեկավարների ու ենթակաների միջև գոյություն

ունեցող ուղղաձիգ հարաբերությունների համակարգը, այլև մարդկանց միջև գոյություն ունեցող հորիզոնական հարաբերությունների ողջ համակարգը՝ աշխատանքային ընկերների, անհատի և կոլեկտիվի, տարբեր աշխատանքային կոլեկտիվների միջև եղած հասարակական կապերը։ Սոցիալիստական կարգապահությունն ունի առնվազն երկու կողմ՝ կարգապահության սուբյեկտը և նրա օբյեկտը։ Այդ երկու կողմերի նորմալ փոխգործողության պայմաններում միայն կարող է խոսք լինել ամուր կարգապահության մասին։ Այդ կողմերից միայն մեկի ցանկությունն ամենևին էլ բավարար չէ առաջադրված նպատակներն իրականացնելու համար։

Կարգապահությունը կոչերով և լոզունգներով չէ, որ պետք է ամրապնդվի։ Հաստատուն և հետևողական քաղաքական կուրս, տևական, ամենօրյա քրտնաջան կազմակերպական ու քաղաքական աշխատանք մասսաների մեջ, խոսքի ու գործի խստագույն միասնություն և ղեկավարի անձնական օրինակ, ճշմարտացի, բացարձակապես արդարամիտ վերաբերմունք դեպի գործը— ահա այս է, մեր կարծիքով, կարգապահության ամրապնդման գրավականը։

Կարգի և կարգապահության, պարտքի և պատասխանատվության մասին խոսելիս մենք հաճախ ենք անդրադառնում Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1975 թ. հունվարյան պլենումին ու նրա որոշումներին։ Եվ դա հասկանալի է։ Յուրաքանչյուր խոշոր վերափոխում հասարակական-քաղաքական կյանքում ամենից առաջ սկսվում է կոնկրետ իրադրության բազմակողմանի և օբյեկտիվ քննադատական վերլուծությունից։ Այդպես վարվեց նաև ՀԿԿ Կենտկոմի հունվարյան պլենումը։ Պլենումն ամենայն խորությամբ և սկզբունքայնությամբ վեր հանեց մեր հանրապետության կուսակցական կազմակերպությունների աշխատանքում եղած թերությունները, կուսակցական կյանքի լենինյան նորմերից կատարված շեղումները, արտադրության և հասարակական կյանքի կուսակցական ղեկավարման լուրջ վրիպումները, գործարարության և գործիմացության ցածր մակարդակը։ Պլենումը դատապարտեց առանձին ղեկավար աշխատողների կողմից պաշտոնական դիրքը չարաշահելու, սովետական օրենքը ոտնահարելու, սոցիալիստական սեփականության նկատմամբ ոտնձգություն կատարելու փաստերը և մշակեց գիտականորեն հիմնավորված կոմպլեքսային միջոցառումների ամբողջական ծրագիր՝ բացահայտված թերությունները վերացնելու, լուրջ սխալներն ու կոպիտ վրիպումները շտկելու համար։

Հունվարյան պլենումի քննադատական և խորապես գործարար ոգին փոխանցվեց կուսակցության քաղաքային և շրջանային կոմիտեներին, իսկ վերջիններիս ջանքերով՝ մեր բազմաթիվ սկզբնական կուսակցական կազմակերպություններին, մեր բոլոր կոմունիստներին։ ՀԿԿ Կենտկոմի անմիջական ղեկավարությամբ մեր հանրապետության կուսակցական կազմակերպությունները խոշոր միջոցառումներ իրականացրին հատկապես արտադրության կուսակցական ղեկավարման բարելավման բնագավառում, ապահովեցին ժողովրդական տնտեսության զարգացման իններորդ և տասներորդ հնգամյակների անցած տարիների հիմնական առաջադրանքների կատարումը և գերակատարումը։ Քիչ աշխատանք չկատարվեց հանրապետությունում հասարակական-քաղաքական և բարոյահոգեբանական մթնոլորտն առողջացնելու, կուսակցական ղեկավարման գործում անցյալում կատարված կոպիտ սխալներն ու խեղաթյուրումները շտկելու, կուսակցական ու պետական կարգապահությունն ամրապնդելու, կադրերի պատասխանատվությունը բարձրացնելու նպատակով։ Այդ խոշոր պրակտիկ քայլերն ուրախալի են, ոգևորիչ և միանգամայն հուսադրող։

Սակայն մենք վատ կոմունիստներ կլինենք, եթե քննադատորեն չգնահատենք կատարվածը, վերստին մեր ուշադրությունը չսևեռենք դեռևս չլուծված հարցերի, սեփական թերությունների, սխալների ու վրիպումների վրա և չսովորենք հաղթահարել դրանք։

ՀԿԿ Կենտկոմի հունվարյան պլենումի որոշումները տևական ժամանակաշրջանի գործողության ուղեցույց են և մեր խնդիրն է՝ ավելի ամրապնդել կուսակցական, սովետական, հասարակական կազմակերպությունների ու վարչական մարմինների միասնական ճակատը, մոբիլիզացնել բոլոր կոմունիստներին, ողջ հասարակայնությանն ու աշխատավորությանը՝ մեր կյանքի բացա-



սական երևույթների դեմ պայքարելու համար։ Ընդ որում, այդ ճակատը ոչ մի օղակում չպետք է ունենա ճեղքվածք, որը կարողանան օգտագործել անազնիվ և աճպարար մարդիկ։ Գործը հենց այդպես էլ կազմակերպված է, սակայն մեր ընդհանուր պայքարում դեռևս կան թույլ օղակներ. հանրապետության մի շարք սկզբնական կուսակցական կազմակերպություններ, ցավոք, դեռևս չեն դրսևորում անհրաժեշտ ակտիվություն ու մարտունակություն, հետևողականություն ու վճռականություն՝ հունվարյան պլենումի որոշումների կենսագործման նպատակով։ Որքան էլ տարօրինակ է, որոշ քաղաքային ու շրջանային կոմիտեներ դեռևս ինչպես հարկն է չեն ըմբռնել այն բացառիկ դերն ու նշանակությունը, որ ունի հունվարյան պլենումը մեր հանրապետության կուսակցական ու հասարակական կյանքում։ Տեղին է այսօր մեկ անգամ ևս հիշեցնել, որ հունվարյան պլենումն ամենևին էլ հերթական միջոցառում չէր, ինչպես կարծում են ոմանք։ Պլենումի վիթխարի դերը պայմանավորված է մեր կյանքի հասարակական-բարոյական մթնոլորտի առողջացման, բոլոր կուսակցական կազմակերպությունների մարտունակության և ակտիվության բարձրացման կուրսի մշակմամբ ու գործադրմամբ, կուրս, որին հավանություն տվեց ՀԿԿ XXVI համագումարը և որն ամենաջերմ աջակցություն գտավ հանրապետության կոմունիստների և աշխատավորական լայն զանգվածների կողմից։

Ուսումնասիրությունները, սակայն, ցույց են տալիս, որ որոշ կուսակցական կոմիտեներ և կազմակերպություններ, ըստ էության, մոռացության են մատնել ՀԿԿ Կենտկոմի հունվարյան պլենումի որոշումները, չեն անդրադառնում դրանց կատարման ստուգմանը, չեն պլանավորում ու պարբերաբար քննարկում այդ որոշումների կենսագործման վերաբերյալ հաշվետվությունները։ Կան նաև դեպքեր, երբ կուսակցական կոմիտեները, թեև անդրադառնում են այդ հարցերին, սակայն նրանց ընդունած որոշումները երբեմն շատ հեռու են լինում հունվարյան պլենումի ոգուց։

Կուսակցական կարգապահության հիմքը ՍՄԿԿ կանոնադրության պահանջների անշեղ կենսագործումն է։ Կատարված անժխտելի դրական աշխատանքի հետ միաժամանակ այս ասպարեզում դեռևս կան լուրջ թերություններ. ոչ քիչ թվով կուսակցական կոմիտեներ ու սկզբնական կուսկազմակերպություններ մշտական վերահսկողություն չեն իրականացնում այդ գործի նկատմամբ և դեպքից դեպք են անդրադառնում կոմունիստների կողմից կուսակցության կանոնադրական պարտականությունների կատարման հարցերին։

ՀԿԿ Կենտկոմը 1978 թ. հոկտեմբերին քննարկեց կոմունիստների կողմից ՍՄԿԿ կանոնադրության պահանջների կատարման վերահսկողության ասպարեզում քաղկոմ-շրջկոմներին առընթեր կուսակցական հանձնաժողովների կատարած աշխատանքի հարցը և այդ առթիվ ընդունեց համապատասխան որոշում։ Քաղկոմ-շրջկոմներին հանձնարարվեց ակտիվացնել կուսհանձնաժողովների աշխատանքը և նրանց գործունեության հիմնական նպատակը համարել ՍՄԿԿ կանոնադրության պահանջների կատարումը, կուսակցական կարգապահության ամրապնդումը և կուսակցական էթիկայի նորմերի պահպանության նկատմամբ վերահսկողության իրականացումը։

ՀԿԿ Կենտկոմը 1978 թ. անդրադարձավ նաև կոմունիստների անձնական գործերը քննարկելիս ՍՄԿԿ կանոնադրության պահանջների պահպանման հարցին և այդ առթիվ նույնպես ընդունեց կարևոր որոշում։ Նշվեց, որ վերջին տարիներին շատ սկզբնական կուսակցական կազմակերպություններ և կուսակցության քաղաքային ու շրջանային կոմիտեներ, կոմունիստների անձնական գործերը քննարկելիս, խստորեն պահպանում են կուսակցության կանոնադրության պահանջները, այդ գործերի վերաբերյալ ընդունում հիմնավորված և սկզբունքային որոշումներ, որոնք լուրջ դաստիարակչական նշանակություն ունեն և բարերար ներգործություն են թողնում կոմունիստների վրա։ Բայց քիչ չէ և այն կազմակերպությունների թիվը, որոնք, կոմունիստների անձնական գործերը քննարկելիս, ցուցաբերում են լիբերալ մոտեցում, սկզբունքային գնահատական չեն տալիս կուսակցական ու պետական կարգապահության խախտման առանձին լուրջ փաստերի, երբեմն էլ կուսշարքերում թողնում են քրեական հանցանք կատարած և դատված կոմունիստների, մի բան, որը միանգա-

մայն հակասում է կուսակցության կանոնադրության պահանջներին։ Այս բնույթի փաստեր են արձանագրվել Շամշադինի, Ամասիայի, Ապարանի կուսշրջկոմներում։

Մեր կուսակցությունն ունի մեկ օրենք, մեկ կարգապահություն բոլոր կոմունիստների համար՝ անկախ նրանց դիրքից և ծառայություններից։ Այս հանրահայտ ճշմարտությունը երբեմն անտեսվում է առանձին կուսակցական կազմակերպությունների կողմից։ 1977 թ. Այրումի պահածոների գործարանի սկզբնական կուսկազմակերպությունը և ՀԿԿ Նոյեմբերյանի շրջկոմը կուսակցական պատասխանատվության ենթարկեցին ՍՄԿԿ անդամ Ա. Շահումյանին, իսկ ՀՍՍՀ սննդարդյունաբերության մինիստրությունը նրան ազատեց այդ նույն գործարանի դիրեկտորի տեղակալի պարտականությունից՝ իր պաշտոնական պարտականություններն անբավարար կատարելու և աշխատանքային կարգապահությունը խախտելու համար։ Շուտով Ա. Շահումյանը բողոք ներկայացրեց այդ որոշումների դեմ՝ ոչ մի կերպ չհամաձայնելով իրեն առաջադրված մեղադրանքների հետ։ Ավելին, նա պնդում էր, որ ձեռնարկության դիրեկտոր Տ. Դավթյանի և իր հարաբերությունները չափազանց լարված են, որի հետևանքով նա վերադաս մարմինների միջոցով հաշվեհարդար է տեսել իր հետ։ Միաժամանակ Ա. Շահումյանը մեղադրում էր գործարանի դիրեկտորին լուրջ խախտումների և չարաշահումների մեջ։ Որոշ ժամանակ անց իր «խոսքն» ասաց նաև գործարանի դիրեկտոր Տ. Դավթյանը։ Նա ՀԿԿ Կենտկոմ ուղարկեց սեփական անձը փառաբանող և ձեռնարկության հաջողությունները թմբկահարող մի նամակ, պահանջելով նաև ետ ուղարկել Ա. Շահումյանի անձնական գործը՝ նորից քննարկելու և նրան ավելի խիստ պատժի ենթարկելու համար։ Դիմումի հեղինակը, ինչ խոսք, հաշվի չէր նստում այն իրողության հետ, որ այդպիսի լիազորություն նրան ոչ ոք չի տվել։

ՀԿԿ Կենտկոմին առընթեր կուսակցական հանձնաժողովի աշխատողները, Հայկական ՍՍՀ ֆինանսների մինիստրության ներկայացուցիչների հետ միասին, տեղում հանգամանորեն ուսումնասիրեցին Ա. Շահումյանի առաջ քաշած հարցերը, ծանոթացան ձեռնարկության ֆինանսատնտեսական գործունեությանը և բացահայտեցին լուրջ թերություններ ու անօրինականություններ։ Կենտկոմի հանձնարարությամբ Նոյեմբերյանի կուսշրջկոմը քննարկեց ստուգման արդյունքները, կուսակցական խստագույն պատասխանատվության ենթարկեց Տ. Դավթյանին՝ ֆինանսատնտեսական կոպիտ խախտումներ կատարելու համար։ Կուսակցական և վարչական պատասխանատվության ենթարկվեցին նաև ձեռնարկության ղեկավար և նյութական պատասխանատու այլ աշխատողներ։ Իսկ Ա. Շահումյանի բողոքարկը ՀԿԿ Կենտկոմը մերժեց, քանի որ նա ևս տեղիք էր տվել նյութական արժեքների ապօրինի դուրսգրման և անտնտեսվարության։

Կուսակցական ու պետական կարգապահության խախտման, պաշտոնական դիրքի չարաշահման, սոցիալիստական սեփականության հափշտակումների, հավելագրումների փաստերը շատ հաճախ ի հայտ են գալիս աշխատավորների դիմում-բողոքների ստուգումների հիման վրա։ Դա պարտավորեցնում է բոլոր կուսակցական կազմակերպություններին՝ խիստ ուշադիր լինել այդ ահազանգերի նկատմամբ, բազմակողմանիորեն ուսումնասիրել դրանցում առաջ քաշված հարցերը։ 1978 թ. ՀԿԿ Կենտկոմին առընթեր կուսակցական հանձնաժողովը, Կենտկոմի գյուղբաժնի և հանրապետության ժողովրդական վերահսկողության կոմիտեի ներկայացուցիչների հետ միասին, ստուգեց Երևանի անասնաբուժական-անասնաբուծական ինստիտուտի ռեկտոր Հ. Մադոյանի վերաբերյալ այդ նույն ինստիտուտի մի խումբ կոմունիստների ահազանգը։ Հ. Մադոյանն իր գործունեության սկզբնական շրջանում քիչ գործ չէր կատարել ինստիտուտի ուսումնադաստիարակչական աշխատանքները բարելավելու և ուսումնաարտադրական բազան ընդլայնելու համար։ Այդ ջանքերն աննկատ չմնացին. կոլեկտիվում բարձրացավ նրա հեղինակությունը, կատարված դրական աշխատանքը խրախուսվեց վերադաս մարմինների կողմից։

Շուտով, սակայն, չափի զգացումը դավաճանեց ռեկտորին. նա սկսեց մեծամտանալ, կոպտել աշխատանքային ընկերներին, հաշվի չնստել կուսակցական ու հասարակական կազմակերպությունների հետ։ Ստուգումները ցույց



տվեցին, որ ռեկտորի գիտությամբ ու թողտվությամբ ինստիտուտում տեղի են ունեցել բարձրագույն ուսումնական հաստատությունների ընդունելության կանոնների և ուսանողների տեղափոխության կարգի խախտումներ։ Անտեսելով կուսակցական կարգապահությունը՝ Հ. Մադոյանը հաճախ բացակայել է կուսակցական ժողովներից, չի ձեռնարկել անհրաժեշտ միջոցներ հանրային ունեցվածքի պահպանությունն ապահովելու համար։

Ինստիտուտի կուսակցական կոմիտեն (նախկին քարտուղար՝ Վ. Սաֆրազբեկյան), անշուշտ, նկատել է, որ ռեկտորը սխալ և վտանգավոր ուղու վրա է, բայց չի փորձել կուսակցական սկզբունքայնությամբ միջամտել գործին, ընկերական ձեռք մեկնել նրան։ Եվ տեղի ունեցավ անխուսափելին. ՀԿԿ Կենտկոմի բյուրոն, քննարկելով ստուգման արդյունքները, Հ. Մադոյանին ազատեց ռեկտորի պարտականություններից և կուսակցական տույժի ենթարկեց։ Ինչ վերաբերում Վ. Սաֆրազբեկյանին, ապա հաշվետու-ընտրական ժողովում կոմունիստներն այլևս վստահություն չտածեցին նրա նկատմամբ և չառաջադրեցին կուսակցական կոմիտեի կազմում։ Հասկանալի է, որ գործած սխալների համար ամենից առաջ մեղավոր է ինքը՝ կոմունիստ Հ. Մադոյանը։ Սակայն նրա այդ արարքներին մեղսակից են և բոլոր նրանք, ովքեր, տեսնելով հանդերձ նրա ապօրինությունները, հաշտվել են դրանց հետ։

Կարգապահության և պատասխանատվության մասին խոսելիս հարկ է մշտապես հիշել, որ այդ հարցերը սերտորեն շաղկապված են կուսակցության կադրային քաղաքականության ճիշտ և հետևողական կիրառման հետ։ Եթե այս կամ այն օղակում կադրերի ընտրությունը սխալ է կատարված, եթե գործի գլուխ են կանգնած անպատասխանատու, անտարբեր և անկարող մարդիկ, ապա պահանջկոտությունը, վերահսկողությունը և կատարման ստուգումը չեն կարող հանգեցնել դրական արդյունքի։

ՀԿԿ Կենտկոմի հունվարյան պլենումում կադրերի ընտրության վիճակը չափազանց խիստ և արդարացի քննադատության ենթարկվեց։ 1978 թ. այդ հարցին անդրադարձավ նաև ՀԿԿ Երևանի քաղաքային կոմիտեի պլենումը։ Քննարկվող հարցի վերաբերյալ ընդունվեց կարևոր որոշում, որը պետք է գործողության ուղեցույց դառնար քաղաքի կուսակցական, սովետական, տնտեսական և այլ կազմակերպությունների ու նրանց ղեկավարների համար։ Սակայն շուտով պարզվեց, որ որոշ առևտրական կազմակերպությունների ղեկավարների անսկզբունքայնության և կուսակցական կազմակերպությունների միանգամայն թույլ վերահսկողության պատճառով ղեկավար և նյութական պատասխանատու աշխատանքի են նշանակվում նախկինում դատված, վարկաբեկված, իսկ հաճախ էլ՝ ուղղակի պատահական մարդիկ։

Կադրերի ընտրության գործում կոպիտ սխալների տեղիք տալու համար ՀԿԿ Երևանի քաղաքային կոմիտեն կուսակցական խիստ պատասխանատվության ենթարկեց և ազատեց աշխատանքից քաղաքի հասարակական սննդի վարչության պետ Ս. Բայրախտարյանին, հասարակական սննդի տրեստի կառավարիչ Յու. Ճշմարիտյանին, իսկ «Ավտոմատ» միավորման դիրեկտոր Ս. Մանուկյանին և ռեստորանների ու սրճարանների տրեստի նախկին կառավարիչ Գ. Էմինյանին վտարեց կուսակցության շարքերից և ազատեց զբաղեցրած պաշտոններից։ Կուսակցական պատասխանատվության ենթարկվեցին նաև քաղաքի առևտրական և հասարակական սննդի այլ ղեկավար աշխատողներ։

Օրինական հարց է ծագում. ինչպե՞ս են քաղաքի առևտրի ու հասարակական սննդի ասպարեզում ղեկավար աշխատանքի նշանակվել այդքան անպատասխանատու և ոչ լրջմիտ մարդիկ, ովքե՞ր են նրանց առաջքաշման գործի նախաձեռնողները։ Ժամանակը չէ՞, արդյոք, որպեսզի կուսակցական ապարատի աշխատողները ևս պատասխանատվություն կրեն այն մարդկանց գործունեության համար, որոնց նրանք առաջ են քաշել ղեկավար աշխատանքի, բայց նրանք կոպիտ կերպով խախտում են կուսակցական ու պետական կարգապահությունը։ Վերը նշված հիմնարկություններում, անշուշտ, առաջ կքաշվեն նոր աշխատողներ, սակայն վիճակը շտկելու համար անհրաժեշտ է հիմնովին փոխել այնտեղ տիրող բարքերը, առողջացնել բարոյահոգեբանական մթնոլորտը։

Սխալների ու բացասական երևույթների հետ հաշտվելն ու գոյակցելը

ընդհանուր ոչինչ չունեն կոմունիստի բարձր կոչման հետ։ Սակայն, ցավոք, պետք է նշել, որ առանձին աշխատողներ տառապում են այդ արատով։ ՀԿԿ Արտաշատի շրջկոմը ահազանգ է ստանում այն մասին, որ պտուղկոմբինատի դիրեկտոր Մ. Հովսեփյանը և գլխավոր ինժեներ Մ. Հակոբյանը չարաշահել են իրենց պաշտոնական դիրքը, գինու տարողությունների վերակառուցման ժամանակ ապօրինի վճարումներ են կատարել։ Մ. Հակոբյանը, որ տեղափոխվել էր Երևան, կատարած արարքի համար խստորեն պատժվում է, մինչդեռ Արտաշատի կուսշրջկոմի առանձին ղեկավար աշխատողների բարեհոգության պատճառով Մ. Հովսեփյանը պատասխանատվության չի ենթարկվում։ Ստանալով հաղորդում Մ. Հովսեփյանի վերաբերյալ՝ կուսշրջկոմի քարտուղար Վ. Ասատրյանը նրան հրավիրում է զրույցի, ապա հաղորդումը, առանց շրջկոմի բյուրոյի քննարկմանը ներկայացնելու, կցում է գործին։

Այդ նույն հարցի առթիվ կուսշրջկոմում նամակ է ստացվում, որի ստուգումը հանձնարարվում է շրջկոմի երկրորդ քարտուղար Մ. Վարդանյանին։ Շարադրված փաստերը ստուգելու փոխարեն նա նամակը դնում է պտուղկոմբինատի կուսկազմակերպության ժողովի քննարկմանը և ժողովի որոշման հիման վրա տեղեկանք ներկայացնում կուսշրջկոմին այն մասին, որ նշված փաստերը իրականությանը չեն համապատասխանում (այնինչ փաստերը մինչև այդ ստուգվել էին, և համապատասխան պաշտոնական հաղորդումը գտնըվում էր կուսշրջկոմում)։

ՀԿԿ Կենտկոմին առընթեր կուսակցական հանձնաժողովը տեղում ստուգեց նշված փաստերը և արձանագրեց, որ Արտաշատի կուսշրջկոմը լիբերալ վերաբերմունք է ցուցաբերել պտուղկոմբինատի դիրեկտոր Մ. Հովսեփյանի նկատմամբ։ Նշվեց նաև, որ կուսշրջկոմի քարտուղար Մ. Վարդանյանը ձևական մոտեցում է դրսևորել պտուղկոմբինատում կատարված խախտումների վերաբերյալ ստացված ահազանգի ստուգման գործում։ Ստուգման արդյունքներն ուղարկվեցին Արտաշատի կուսշրջկոմի քննարկմանը։ Շրջկոմի բյուրոն կուսակցական խիստ պատասխանատվության ենթարկեց պտուղկոմբինատի դիրեկտոր Մ. Հովսեփյանին, սակայն հարկ չհամարեց նույնիսկ դիտողություն անել շրջկոմի քարտուղարներ Մ. Վարդանյանին և Վ. Ասատրյանին՝ նրանց կատարած սխալների համար։

Կուսակցական կարգապահությունը պայմանավորված է ո՛չ միայն ներկուսակցական դեմոկրատիայի հետևողական կիրառմամբ, ո՛չ միայն վերահսկողության և կատարման ստուգման ճիշտ դրվածքով, այլև քննադատության և ինքնաքննադատության ծավալման բարձր աստիճանով։ Քննադատությունը և ինքնաքննադատությունը կուսակցական աշխատանքի ոճի կատարելագործման, թերությունների հաղթահարման փորձված մեթոդն են, կուսակցական կազմակերպությունների քաղաքական հասունության չափանիշը։

Սխալից ոչ ոք ապահովագրված չէ։ Սխալվել կարող են նաև կոմունիստները, ղեկավար աշխատողները։ Բայց ամեն ոք պարտավոր է արիաբար ընդունելու իր սխալը և պատշաճ դասեր քաղելու դրանից։ Սեփական սխալն ընդունելը ոչ թե թուլության, այլ ուժի նշան է։ Թերություններից ու սխալներից վախենալու հիմքեր ունեն միայն նրանք, ովքեր ուժ և վճռականություն չունեն դրանք հաղթահարելու համար։ Կոմունիստի վեհ կոչումը բացարձակապես անհամատեղելի է թերությունների նկատմամբ հանդուրժողական վերաբերմունքի հետ։

Կարգապահության ամրապնդման ասպարեզում մեր կուսակցական կազմակերպությունները դեռևս շատ անելիքներ ունեն։ Նրանք ունեն նաև սխալներն ու թերությունները հաղթահարելու հստակորեն մշակված քաղաքական կուրս, որն առաջադրել է ՍՄԿԿ XXV համագումարը։ Հարկավոր է դրսևորել հետևողականություն, վճռականություն ու հաստատակամություն՝ գործունեության բոլոր բնագավառներում, բոլոր օղակներում ամուր կարգապահություն հաստատելու համար։

---



# ԿՈԼԵԿՏԻՎԻ ԴԵՐԸ ԱՆՁԻ ՎԱՐՔԻ ՁԵՎԱՎՈՐՄԱՆ ԳՈՐԾՈՒՄ

**Ա. Գ. ԽԱՉԱՏՐՅԱՆ**

ՆՈՐ ՄԱՐԴՈՒ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅՈՒՆԸ կոմունիստական հասարակարգի կառուցման կարևորագույն խնդիրն է։ «Գաղափարական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին» ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի որոշման մեջ նշված է, որ ՍՍՀՄ-ում զարգացած սոցիալիստական հասարակության կառուցումը, երկրի նյութական և հոգևոր պոտենցիալի հսկայական աճը, խաղաղության և միջազգային համագործակցության, ժողովուրդների ազատության և անկախության համար ՍՄԿԿ-ի և սովետական պետության պայքարի հաջողությունները լայն հնարավորություններ ստեղծեցին մարդկանց կոմունիստական գիտակցության ձևավորման ասպարեզում մեր կուսակցության ծրագրային նպատակների իրականացման համար։

Մարդու դաստիարակության մարքսիստական ըմբռնումը խարսխված է անձի իրավունքների և պարտականությունների, ազատության և պատասխանատվության դիալեկտիկական միասնության սկզբունքի վրա։ ՍՍՀՄ-ում կառուցված է զարգացած սոցիալիստական հասարակություն, որն ապահովում է «...քաղաքացիների ռեալ իրավունքների և ազատությունների զուգակցումը նրանց պարտականությունների և հասարակության հանդեպ նրանց պատասխանատվության հետ» (ՍՍՀՄ Սահմանադրություն, «Հայաստան», 1977 թ., էջ 5)։

Անձի ձևավորումը և գործունեությունն իրագործվում են որոշակի հասարակական պայմաններում։ Հասարակական ընդհանուր հարաբերությունները, դրանց բնույթը և հասարակության դասակարգային կառուցվածքը, վերջին հաշվով, վճռական դեր ունեն նրա վարքի ձևավորման և դետերմինացման գործում։ Սակայն անձի վարքի ձևավորումն ըմբռնելու և ղեկավարելու համար հասարակական ընդհանուր հարաբերությունների դերի շեշտումը դեռևս բավական չէ։ Անհրաժեշտ է ցույց տալ ո՛չ միայն վարքը դետերմինացնող հիմնական գործոնների դերը, այլև բացահայտել մարդու հասարակական միջավայրի այն օղակները, որոնց միջոցով այդ գործոններն ազդում են մարդու վարքի վրա և , վերջին հաշվով, պայմանավորում նրա բնույթը։

Հասարակական ընդհանուր միջավայրի ազդեցությունը մարդու վրա ուղղակի չէ։ Անձի և հասարակության կապն իրագործվում է որոշակի միջնորդավորող օղակների միջոցով, որոնցից հատկապես կարևոր դեր ունի, այսպես կոչված, «միկրոմիջավայրը»։ Այն ներառնում է սոցիալական միջավայրի այն տարրերը՝ օրինակ, ընտանիքը, ընկերները, հարևանները, կոլեկտիվը և այլն, որոնց շնորհիվ մարդն անմիջականորեն ներգրավվում է հասարակական հարաբերությունների սիստեմի մեջ և ձևավորվում որպես անձ։ Մարդն իր կենսագործունեության ընթացքում հաջորդաբար անցնում է տարբեր միկրոպայ-

մաններով, հանդես գալիս որպես տարբեր կոլեկտիվների և սոցիալական խմբերի անդամ։ Միկրոմիջավայրի այս բոլոր տարրերը յուրահատուկ ձևով են ազդում մարդու զարգացման պրոցեսի վրա՝ պայմանավորելով այս կամ այն անձի բնորոշ հատկանիշները։ Որքան ավելի են ընդլայնվում մարդու սոցիալական առնչությունները, այնքան նա ավելի շատ է ենթարկվում հասարական ազդեցության տարբեր ձևերին։

Անձի ձևավորման վրա էապես ազդում է նրա պատկանելությունն այնպիսի սոցիալական և սոցիալ-հոգեբանական խմբերի, ինչպիսիք են ընտանիքը, դասարանը, ուսանողական խումբը, աշխատանքային կոլեկտիվը և այլն։ Սրանցից յուրաքանչյուրի դերը անձի ձևավորման տարբեր փուլերում միատեսակ չէ։ Այսպես, սկզբնական շրջանում կարևոր դեր է խաղում ընտանիքը, քանի որ այն հանդես է գալիս որպես այդ փուլում մարդու և հասարակության կապի հիմնական օղակ։ Մարդու սոցիալական կապերի ընդլայնմանը զուգընթաց կարևոր նշանակություն են ստանում միկրոմիջավայրի մյուս տարրերը (մանկապարտեզ, դպրոց և այլն)։ Սակայն զարգացման բոլոր փուլերում անհատը հանդես է գալիս որպես այս կամ այն կոլեկտիվի անդամ։

Մարդու գործունեությունը հիմնականում ընթանում է աշխատանքային կոլեկտիվում։ Բանն այն է, որ անձի ձևավորման պրոցեսում ընտանեկան և դպրոցական դաստիարակությունն առանձին-առանձին թեպետև ունեն կարևոր, երբեմն վճռական նշանակություն, բայց հանդես են գալիս որպես նրա աշխատանքային գործունեության նախապատրաստական փուլեր։ Աշխատանքային կոլեկտիվը, որպես միկրոմիջավայրի տարր, անհատին հասարակության հետ կապող հիմնական օղակն է, որը հանդես է գալիս որպես անհատի ընդունակությունների գործադրման, պահանջմունքների և շահերի իրականացման հիմնական ոլորտ։ Միկրոմիջավայրի դերը անձի ձևավորման և նրա վարքի դետերմինացման մեջ ամբողջովին դրսևորվում է հատկապես աշխատանքային կոլեկտիվում։ Անկախ իր գործունեության բնույթից, յուրաքանչյուր կոլեկտիվ կատարում է երկակի ֆունկցիա. հասարակայնորեն օգտակար որոշակի աշխատանք և անհատի ներգրավում հասարակական գործունեության ոլորտը։ Այդ պատճառով հասարակությունը հիմնականում կոլեկտիվի միջոցով է իրականացնում իր ազդեցությունն անհատի վրա և ձևավորում նրա հասարակայնորեն անհրաժեշտ հատկանիշները։

Աշխատանքային կոլեկտիվն իր անդամների վրա դնում է տարբեր պարտականություններ և, կիրառելով տարբեր սոցիալական ու սոցիալ-հոգեբանական սանկցիաներ, բազմակողմանիորեն հսկում է այդ պարտականությունների կատարմանը։ Դրանով իսկ կոլեկտիվը հանդես է գալիս որպես անհատի բարոյական հատկանիշների և, հետևաբար, նրա վարքի ձևավորման կարևորագույն գործոն։ Նշանակում է, անձի դաստիարակությունը հիմնականում իրականացնում է կոլեկտիվը, որովհետև, «միայն կոլեկտիվում է անհատն ստանում իր ձիրքերի համակողմանի զարգացմանը հնարավորություն ընձեռող միջոցներ» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 3, стр. 75)։

Կոլեկտիվը, ինչպես արդեն նշվեց, մարդու կենսագործունեության հիմնական ոլորտն է։ Մարդը հենց կոլեկտիվում է ձեռք բերում սոցիալական հաղորդակցման, հասարակության մեջ ապրելու և իր պարտականությունները կատարելու ունակություններ։ Հատկապես կոլեկտիվում է դրսևորվում անձի սոցիալականորեն նշանակալից գործունեությունը։ Կոլեկտիվը, ի տարբերություն միկրոմիջավայրի մյուս տարրերի, այնպիսի սոցիալական գոյացություն է, որը սինթեզում է մարդկանց հասարակական բոլոր հարաբերությունները՝ իրենց ամբողջությամբ։ Դա այն հասարակական կապերի և հարաբերությունների արդյունքն է, որոնցում ընդգրկվում են նրա անդամները։

Անձի վարքի դետերմինացման գործում ոչ պակաս կարևոր դեր են խաղում նրա հոգեբանական առանձնահատկությունները, որոնք ձևավորվում են շրջապատող միջավայրի անմիջական ազդեցությամբ։ Քանի որ կոլեկտիվը հասարակական հարաբերությունների բոլոր հիմնական ձևերի կրողն է, ապա, բնականաբար, այն նաև հասարակական հոգեբանության սոցիալ-տիպական հատկանիշների հիմնական կրողն է։ Տվյալ սոցիալական հանրության (դասա-





կարգ, ազգ և այլն) հոգեբանության էական գծերն առավել ցայտունորեն արտահայտվում են հատկապես կոլեկտիվում։ Կոլեկտիվը ձևավորում է մարդկանց հոգեբանության ո՛չ միայն անկրկնելի, այլև սոցիալ-տիպական հատկանիշները՝ դրանով իսկ իր անդամների շրջանում ձևավորելով վարքագծի ընդհանուր նորմեր և սկզբունքներ։

Անհատի սոցիալական վարքի կառավարման գործում կարևոր նշանակություն ունի հասարակական համակեցության նորմերի և սկզբունքների վերածումը անձնական վարքի դետերմինանտների։ Կոլեկտիվը յուրացնում է հասարակական հիմնական նորմերն ու սկզբունքները և դրանց հաղորդակից դարձնում իր առանձին անդամներին։ Դրա շնորհիվ կոլեկտիվն անհատին ավելի ամուր է կապում հասարակության հետ, որով և ապահովվում նրա ձևավորումը՝ հասարակական նորմերին և պահանջներին համապատասխան։

Կոլեկտիվի կողմից անձի վարքի ձևավորման վրա ազդող գործոններից կարևոր են ներկոլեկտիվային սոցիալ-հոգեբանական երևույթները։ Յուրաքանչյուր կոլեկտիվում ստեղծվում են վարքի յուրահատուկ սկզբունքներ, որոնք էական են անձի հատկանիշների ձևավորման և նրա սոցիալական վարքի դետերմինացման մեջ։ Անձի վրա կոլեկտիվի ունեցած ազդեցության կարևոր ձևերից մեկը կոլեկտիվի կարծիքն է, որը, վերջին հաշվով, նրա յուրաքանչյուր անդամի համար հանդես է գալիս որպես ողջ հասարակության կարծիք։ Կոլեկտիվի կարծիքը «ո՛չ միայն ստիպում է հետևել հասարակական բարոյականության նորմերին, այլև նպաստում է դրանք վարքի անձնական նորմերի վերածելուն, որովհետև կոլեկտիվը հանդես է գալիս ո՛չ միայն որպես հասարակական կարծիքի արտահայտիչ, այլև նրա սուբյեկտ։

Կոլեկտիվի կարծիքն արտահայտում է, մի կողմից, տվյալ կոլեկտիվի, մյուս կողմից՝ հասարակության շահերն ու պահանջմունքները։ Այլ կերպ ասած, այն հանդես է գալիս որպես կապող օղակ կոլեկտիվի ու ողջ հասարակության կարծիքի միջև։ Մարդկանց արարքների սոցիալական կարևորության աստիճանով և նպատակներով պայմանավորված կարծիքի միջոցով կոլեկտիվը դատապարտում կամ հավանություն է տալիս դրանց։

Կոլեկտիվի կարծիքի դաստիարակչական ֆունկցիան հիմնականում այն է, որ, գնահատելով մարդկանց արարքները, ստիպում է նրանց համապատասխանեցնել իրենց վարքը կոլեկտիվի շահերի հետ, հաշվի առնել իրենց արարքների հնարավոր հետևանքները հետագայում՝ դրանով իսկ նրանց մոտ մշակելով հասարակական նորմերով առաջնորդվելու դիրքորոշում, որի հետևանքով ձևավորվում է հասարակության պահանջներին համապատասխանող վարքի որոշակի նմանակ։

Անձի վարքի դետերմինացման գործում կարևոր դեր են խաղում նաև տվյալ կոլեկտիվին հատուկ ավանդույթները։ Դրանք սոցիալական ժառանգության տարրեր են և դրսևորվում են որոշակի արժույթների, գաղափարների, սովորույթների ձևով, այլ կերպ ասած, հանդես են գալիս որպես մարդկանց վարքի որոշակի նորմեր։ Եվ ավանդույթների կարգավորիչ ֆունկցիան դրանց նորմատիվ բնույթն է։ Ավանդույթների առանձնահատկությունը, համեմատած կոլեկտիվի կարգավորիչ ազդեցության մյուս միջոցների հետ, այն է, որ նրանց ազդեցությունը հարաբերականորեն կայուն է, բացի այդ անձնավորության վրա միաժամանակ թողնում են և՛ ինտելեկտուալ, և՛ հուզական ազդեցություն։ Կոլեկտիվի ավանդույթները մյուս սոցիալ-հոգեբանական երևույթների հետ միասին նշանակալի ազդեցություն են թողնում անհատի բարոյական հատկանիշների ձևավորման և դրանց միջոցով՝ նաև նրա սոցիալական վարքի վրա։

Տարբեր կոլեկտիվներում ձևավորվում են տարբեր ներկոլեկտիվային ավանդույթներ։ Այնուամենայնիվ, կոլեկտիվի ավանդույթները, ինչպես նաև նրա կարծիքը, պայմանավորված են տվյալ հասարակության (ազգի, դասակարգի) ավանդույթների բնույթով։ Կոլեկտիվը, յուրացնելով այդ ավանդույթները, իրականացնում է նրանց ազդեցությունն անհատի վարքի և գործունեության վրա։ Հարկ է նկատել, որ ավանդույթներն օժտված են որոշակի կոնսերվատիզմով և երբեմն դրական ավանդույթների կողքին կարելի է հանդիպել նաև հնացած, բացասական ավանդույթների։ Ամեն մի կոլեկտիվ պետք է

ձգտի կանխել բացասական ավանդույթները, թույլ չտա, որպեսզի դրանք դառնան մարդկանց վարքի կարգավորիչներ։

Կոլեկտիվի դաստիարակչական ազդեցության աստիճանը անհատի վարքի վրա նշանակալիորեն պայմանավորված է նաև մարդկանց անձնական կապերի, ներկոլեկտիվային հարաբերությունների բնույթով։ Կոլեկտիվում եղած փոխհարաբերությունների բնույթը շատ կարևոր է մարդկանց դաստիարակության և նրանց վարքի կարգավորման առումով։ Կոլեկտիվի տրամադրությունը, որը պայմանավորված է կոլեկտիվի միջանձնական և միջխմբային, ղեկավարության և ենթակայության հարաբերության բնույթով, կոնֆլիկտային իրադրությամբ և այլն, կարևոր դեր է խաղում մարդու վարքի դետերմինացման գործում։

Կոլեկտիվի տրամադրությունը, ինչպես նշում է Բ. Դ. Պարիգինը, «ամենից առաջ սոցիալական (տնտեսական, քաղաքական, գաղափարական) հարաբերությունների ողջ սիստեմի արդյունքն է» (Б. Д. Парыгин, Общественное настроение. М., «Мысль», 1966, стр. 71)։ Բայց կոլեկտիվի տրամադրությունը, վերջին հաշվով, լինելով հասարակական հարաբերությունների արտացոլումը, ի տարբերություն կարծիքի և ավանդույթների, իրենից ներկայացնում է նրա հոգեբանության հուզական կողմը, այդ պատճառով նրա ազդեցությունն անձի վրա կրում է տարերային բնույթ։ Կոլեկտիվի տրամադրությունն ազդում է ոչ թե անձնավորության գիտակցության, այլ նրա հուզական աշխարհի վրա։ Անձը «վարակվում է» կոլեկտիվի տրամադրությամբ և կարգավորում իր վարքը, այն համապատասխանեցնելով տվյալ կոլեկտիվի տրամադրության առանձնահատկություններին։

Առանձին անհատների վրա կոլեկտիվի դաստիարակչական ազդեցության չափը զգալիորեն պայմանավորված է այն բանով, թե կոլեկտիվի գործունեության նպատակները, նրա պահանջներն անձի նկատմամբ, կարծիքը, ավանդույթները ինչ չափով են արտացոլում հասարակության շահերը, պահանջները, ավանդույթները և բարքերը։ Յուրաքանչյուր անհատ որոշակի կոլեկտիվի ներկայացուցիչ է։ Բայց ամեն մի կոլեկտիվ չէ, որ կարող է դաստիարակել ցանկալի հատկանիշներով օժտված անձնավորություն։ Անհատի վրա կոլեկտիվի ազդեցության բնույթը էապես պայմանավորված է նրանով, թե ինչ չափով է այն դարձել տվյալ անհատի զարգացման, ձգտումների, հնարավորությունների և ընդունակությունների իրականացման ասպարեզ։

Կոլեկտիվը կարող է դառնալ մարդու անձնային հատկանիշների դրսևորման անհրաժեշտ հիմք, բայց և կարող է ծառայել որպես դրանց կաշկանդման պատճառ։ Դա պայմանավորված է կոլեկտիվի բնույթով, մասնավորապես՝ նրա զարգացման աստիճանով, որովհետև ճիշտ դաստիարակել կարող է ոչ թե ցանկացած, այլ միայն զարգացած կոլեկտիվը։ Հասունացած կոլեկտիվը մարդկանց վրա դրական ազդեցություն ունենալու համար պետք է օժտված լինի որոշակի հատկանիշներով, ինչպիսիք են նպատակասլացությունը, համախմբվածությունը, հաստատունությունը և գործունեության արդյունավետությունը։

Անձի վրա կոլեկտիվի դրական ազդեցության գլխավոր պայմանը կոլեկտիվի և նրա առանձին անդամների շահերի ճիշտ զուգակցումն է։ Բանն այն է, որ անձի վարքի շարժառիթների, շահերի, նպատակների և ընդհանրապես մարդու ակտիվության աղբյուրը նրա պահանջմունքներն են։ Կոլեկտիվը գործունեության այն միջավայրն է, որտեղ անհատը բավարարում է իր էական պահանջմունքները։ Որքան շատ անձնական պահանջմունքներ են բավարարվում տվյալ կոլեկտիվում, այնքան ավելի նշանակալի է մարդու համար կոլեկտիվի նպատակները և դրանց իրականացման գործում եղած հաջողությունները։

Կոլեկտիվը պետք է կարողանա կիրառել այնպիսի միջոցներ, որոնք զուգակցում են կոլեկտիվի և նրա անդամների շահերը։ Մարդկանց աշխատանքին ու վարքագծին կոլեկտիվի տված ճիշտ գնահատականը նրա անդամների ակտիվության լուրջ խթան է։ Այս տեսակետից կարևոր է առանձին անհատների գործունեության ճիշտ գնահատումը։ Դա արտահայտվում է կոլեկտիվի այնպիսի ունակություններում, ինչպիսիք են մարդկանց վարձատրումը ըստ նրանց աշխատանքի քանակի և որակի, ծառայության մեջ ունեցած առաջխաղացման



արդարացի սիստեմի մշակումը և այլն։ Բոլոր այս միջոցները նպաստում են անձնական ու հասարակական շահերի ինտեգրացմանը, հետևաբար և՝ անձի դաստիարակությանը։

Անհատի վրա կոլեկտիվի դաստիարակչական ազդեցությունը երևում է հետևյալում։ Նախ, փոփոխություն է կատարվում անձի վարքի արտաքին դրսևորումներում, հանդես են գալիս վարքագծի այնպիսի տարրեր, որոնք նախկինում հատուկ չէին նրան։ Մասնավորապես, ծագում են նոր հմտություններ, կարողություններ և մարդկանց հետ հաղորդակցվելու նոր ձևեր, կարճ ասած, մարդու վարքագծում նկատվում են որոշակի տեղաշարժեր։ Ապա, փոփոխություն է կատարվում անձի ներքին որոշ էական հատկանիշների մեջ, որն արտահայտվում է նոր արժույթային դիրքորոշումների ձևավորումով, նոր հետաքրքրությունների, պահանջմունքների և այլնի հանդես գալով։ Այնուհետև, հաղթահարվում են տվյալ կոլեկտիվի բարոյական սկզբունքներին չհամապատասխանող՝ նախկինում ձևավորված որոշ կրքեր, ցանկություններ, դիրքորոշումներ և այլն։ Ընդ որում, նման փոփոխությունների աստիճանը պայմանավորված է կոլեկտիվի դաստիարակչական ազդեցության աստիճանով։ Վերջապես, տվյալ կոլեկտիվում երկար մնալու շնորհիվ գոյանում են մարդկանց հետ հաղորդակցվելու նոր ձևեր՝ բարյացակամության նոր երանգներ, հաղորդակցման պրոցեսում սրտակցություն և մտերմություն և այլն (տե՛ս Коллектив и личность. М., «Наука», 1975 г., стр. 99—100)։

Մարդու վարքի վրա կոլեկտիվի դաստիարակչական ազդեցությունն իրագործվում է երկու ճանապարհով։ Առաջինը վարքի անհատական նորմերի ձևավորման տարերային ուղին է, երբ մարդը գործնականում ընկալում և ընդհանրացնում է տվյալ կոլեկտիվում առկա բարոյական հարաբերությունների փորձը, իսկ երկրորդը՝ կոլեկտիվի նպատակային բարոյական ազդեցությունն է առանձին անձանց վրա։ Այս երկու ուղիները սերտորեն կապված են միմյանց հետ, և անձի վարքի դետերմինացման պրոցեսը ոչ այլ ինչ է, քան այդ երկու կողմերի փոխազդեցության արդյունք։ Այս բանն անհրաժեշտ է շեշտել, քանի որ կոլեկտիվի ազդեցության դաստիարակչական դերը երկու կողմերի՝ կոլեկտիվի ազդեցության և անհատական գիտակցության արդյունք է։ Անհատի վրա կոլեկտիվի ունեցած ազդեցության հաջողությունը մեծապես պայմանավորված է տվյալ անձի գիտակցության առանձնահատկություններով, որը հիմնականում ձևավորվում է տարերային ճանապարհով։ Յուրաքանչյուր անհատ ունի ներքին որոշակի առանձնահատկություններ, որոնք կարող են դրսևորվել ինչպես դրական, այնպես էլ բացասական վերաբերմունքի ձևով այն կոլեկտիվում, որի հետ, կամա թե ակամա, կապված է նա։ Այդ առանձնահատկությունների պատճառները կարող են տարբեր լինել։ Դրանք կարող են պայմանավորված լինել տվյալ անձի ապրելակերպով, նրա կուլտուր-կրթական մակարդակով, կամ էլ այն կոլեկտիվների բնույթով, որոնց շարքերում նախկինում գտնվել է նա։ Կոլեկտիվի ազդեցության աստիճանը մարդու վարքի վրա նշանակալիորեն պայմանավորված է նաև նրանով, թե որքանով է տվյալ անհատը ներգրավված այդ ոլորտը։

Կարևոր է նաև անձի սուբյեկտիվ վերաբերմունքը կոլեկտիվի նկատմամբ։ Եթե անձը բացասաբար է տրամադրված տվյալ կոլեկտիվի հանդեպ, ապա նրա մոտ ծագում է ներքին բողոք այստեղ ընդունված պահանջների և բարոյական նորմերի դեմ։ Սակայն, պետք է նշել, որ այդ ներքին բողոքը սովորաբար գոյանում է սկզբնական շրջանում (չնայած, երբեմն այն կարող է շարունակվել տվյալ կոլեկտիվում գտնվելու ողջ ընթացքում)։ Յուրաքանչյուր նորեկ մեծ մասամբ ապրում է հուզական լարվածության որոշ պահեր, որոնք պայմանավորված են ոչ այնքան նոր պայմաններով, որքան հին պատկերացումների, հետաքրքրությունների, սովորույթների, բարոյական սկզբունքների և այլնի փոփոխմամբ։

Հետագայում անհատն ընտելանում է նոր միջավայրին։ Բնական է, որ այդ փոփոխություններով մարդը կարող է օժտվել միայն այն դեպքում, երբ ամուր կապված է կոլեկտիվի հետ։ Այդ կապի թուլացումը կարող է ծնել մենակյացության, օտարության զգացում։

Հետևաբար, այս կամ այն կոլեկտիվում առաջավոր բարոյական նորմերի և պահանջների առկայությունը դեռևս բավական չէ մարդու դաստիարակության և նրա վարքի կառավարման համար։ Կոլեկտիվի դաստիարակչական դերի իրականացման կարևորագույն պայմանը կոլեկտիվի և անհատի միջև սերտ կապի ապահովումն է, որի հիմքը ոչ միայն հասարակական և անհատական շահերի, այլև նյութական և բարոյական խթանների ճիշտ զուգակցումն է։ Կոլեկտիվն անհատի համար միշտ պետք է հանդես գա որպես ամուր բարոյական հենարան։ Դաստիարակության պրոցեսում այն պետք է օգնի մարդուն՝ հաղթահարելու հին պատկերացումների վերացման և վարքագծի նոր սկզբունքների ու պահանջների ձևավորման հետևանքով առաջացող ներքին կոնֆլիկտները։ Դրա համար անհրաժեշտ է իմանալ տվյալ անձի խառնվածքը, նրա բնավորությունը, համոզմունքները, հետաքրքրությունները և այլն։ Իմանալով անձի անհատական հոգեբանական առանձնահատկությունները, կարելի է կառավարել նրա վարքի նորմերի և շարժառիթների ձևավորման, սոցիալականացման և դաստիարակության պրոցեսն ընդհանրապես։

ՍՄԿԿ XXV համագումարից հետո անցած ժամանակաշրջանում զգալիորեն բարձրացել է աշխատանքային կոլեկտիվների՝ որպես սովետական մարդկանց գաղափարական, աշխատանքային ու բարոյական դաստիարակության կարևոր գործոնի դերը։ Այս ասպարեզում մեր հաջողությունների և անելիքների գիտական խոր վերլուծությունը տրված է «Գաղափարական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի վերջերս ընդունած որոշման մեջ, որի առաջադրած խնդիրների լուծման ասպարեզում մեծ անելիքներ ունեն նաև աշխատանքային կոլեկտիվները։

---

# ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ԿԱՌԱՎԱՐՄԱՆ ԿԱՐԵՎՈՐ ԼԾԱԿԸ

**Ս. Ա. ՍԱՐՈՒԽԱՆՅԱՆ**
ՀԿԿ Կիրովականի քաղկոմի արդյունաբերության և տրանսպորտի բաժնի վարիչ

**Գ. Հ. ԽԱՉԱՏՐՅԱՆ**
Տնտեսագիտության թեկնածու

ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ կառավարումն իրականացվում է որոշակի կազմակերպական ձևերի ու եղանակների օգնությամբ։ Արտադրաուժերի զարգացման յուրաքանչյուր նոր փուլում դրանք արտադրության տարբեր իրավիճակներին համապատասխան փոխվում ու կատարելագործվում են. «...մեր էկոնոմիկայի մասշտաբների աճը և նրանում տեղի ունեցած որակական տեղաշարժերը... նոր, առավել բարձր պահանջներ են ներկայացնում կառավարմանը, թույլ չեն տալիս բավարարվել եղած ձևերով ու մեթոդներով, նույնիսկ եթե դրանք լավ են ծառայել անցյալում» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 86—87)։

Սոցիալիստական արտադրության տնտեսավարման պրակտիկայում կիրառվում են կառավարման բազմաթիվ մեթոդներ՝ վարչական, տնտեսական, քաղաքական, սոցիալ-հոգեբանական, գաղափարական, իրավական և այլն։ Էկոնոմիկայի զարգացման արդի փուլում կառավարման այդ մեթոդների ամբողջ համակարգի մեջ առանձնակի նշանակություն են ստանում արտադրության վրա աշխատավորների ներգործման հասարակական մեթոդները, որոնք և ապահովում են նրանց լայն մասնակցությունը կառավարման գործին։

Արտադրության կառավարման մեջ աշխատավոր մասսաների ներգրավումը սոցիալիստական արտադրության զարգացման տնտեսական օրենք է։ «Միմիայն սոցիալիզմից է սկսվելու,— գրում էր Վ. Ի. Լենինը,— արագ, իրական, իսկապես մասսայական, բնակչության մեծամասնության, ապա նաև ամբողջ բնակչության մասնակցությամբ տեղի ունեցող առաջընթաց շարժումը հասարակական և անձնական կյանքի բոլոր ասպարեզներում» (Երկեր, հ. 25, էջ 615)։

Սոցիալիստական հասարակարգում էկոնոմիկայի կառավարումն իրականացվում է դեմոկրատական ցենտրալիզմի լենինյան սկզբունքով, որն ապահովում է աշխատավոր մասսաների լայն մասնակցությունն արտադրության կառավարմանը, նպաստում աշխատավորների ստեղծագործական ակտիվության բարձրացմանը, նրանց ունակությունների ու տնտեսական ձեռներեցության դրսևորմանը։ «Սոցիալիզմը,— նշում է Լ. Ի. Բրեժնևը,— ի լրումն... «վերևից» կատարվող լավ կառավարման, ունի տնտեսական աճի արագացման ևս մի հզոր ուժ։ Դա «ներքևից», ավելի ճիշտ՝ հասարակության բուն խորքերից եկող միլիոնների ստեղծագործական ակտիվությունը, նախաձեռնությունը, աշխատանքային խանդավառությունն է» (Սովետական արհմիությունները մեր հասարակության ազդեցիկ ուժն են, «Հայաստան», 1977, էջ 7—8)։ Սոցիալիստական դեմոկրատիայի հիմնական առանձնահատկություններից մեկն էլ այն է, որ գործնական կյանքում մեր պետությունը վերից վար կառավարվում է մասսաների անմիջական մասնակցությամբ։ Այդ նշանակում է, որ կուսակցությունը և պետությունը երկրի քաղաքական, տնտեսական, սոցիալ-կուլտուրական կյանքի բոլոր կարևորագույն հարցերը քննարկում և լուծում են բանվոր-

ների, կոլտնտեսականների, մտավորականության ամենալայն և անմիջական
մասնակցությամբ։
Սոցիալիստական դեմոկրատիայի այս սկզբունքները հետագա ընդլայնում
ու խորացում են ստացել ՍՍՀՄ նոր Սահմանադրության մեջ։
Սոցիալիստական տնտեսավարման պրակտիկան մշակել է արտադրության
կառավարմանն աշխատավորների անմիջական մասնակցության մի շարք
գործնական ձևեր ու սիստեմներ, որոնք, որպես կառավարման հասարակական
մարմիններ, գործում են արդյունաբերական բոլոր ձեռնարկություններում։
Այսպես, Կիրովական քաղաքի միայն քիմիական, թեթև արդյունաբերության
և մեքենաշինական 12 ձեռնարկություններում գործում է կառավարման հասա-
րակական 788 մարմին, որտեղ ներգրավված են աշխատողների մոտ 29 տոկո-
սը, այդ թվում՝ բանվորների 23,5, ինժեներատեխնիկական աշխատողների ու
ծառայողների՝ 50 տոկոսը։ Դրանցից զատ, նշված ձեռնարկությունների աշխա-
տողների մոտ 20 տոկոսն էլ նորարարական և ռացիոնալիզատորական առա-
ջարկություններով մասնակցում է արտադրության կատարելագործմանը։ Հե-
տևաբար, այդ ձեռնարկությունների աշխատողների մոտ 50 տոկոսն ակտիվո-
րեն մասնակցում է արտադրության գործերի վարմանը։
Արտադրության կառավարման մեջ աշխատավորների մասնակցության
հասարակական-քաղաքական ձև է կուսակցական, արհմիութենական, կոմե-
րիտական կազմակերպությունների, ժողովրդական վերահսկողության և մյուս
մարմինների գործունեությունը։ Արտադրության կառավարմանն այդ կազմա-
կերպությունների մասնակցությունն իրականացվում է ադմինիստրացիայի և
նրա ծառայությունների գործունեությանը զուգընթաց՝ լրացնելով և ավելի
արդյունավետ դարձնելով այն։
Աշխատավորների ստեղծագործական ակտիվության բարձրացման գործը
ղեկավարում են կուսակցական կազմակերպությունները, որոնք կոորդինաց-
նում են կառավարման բոլոր մարմինների գործունեությունը, ռեալ պայմաններ
ստեղծում աշխատավորներին այդ գործին մասնակից դարձնելու համար։ Նրանք
ըստ ամենայնի զարգացնում են սովետական, տնտեսական ու հասարակական
կազմակերպությունների նախաձեռնությունը, բարձրացնում պատասխանա-
տվությունը և աշխատանքի արդյունավետությունը։ Կիրովականի արդյու-
նաբերական ձեռնարկություններում ընդգրկված է քաղաքի կոմունիստ-
ների ընդհանուր թվի 72 տոկոսը։ Մշտապես մեծանում է կուսակցա-
կան կազմակերպությունների դերը արտադրական ձեռնարկությունների
կոլեկտիվների ինչպես տնտեսական, այնպես էլ հասարակական կյան-
քում։ Դա պայմանավորված է նյութական արտադրության ճյուղերում կոմու-
նիստների տեսակարար կշռով և նրանց զբաղեցրած տեղով։ Արդյունաբերա-
կան ձեռնարկությունների հասարակական բոլոր մարմիններում ընտրվածների
մեջ կոմունիստները կազմում են 44 տոկոսը։ Քաղաքի կուսկազմակերպու-
թյունները գլխավորում են արտադրական կոլեկտիվների պայքարը՝ պետական
պլանային առաջադրանքները կատարելու, սոցիալիստական մրցությունը ծա-
վալելու, արտադրության ներքին ռեզերվները հայտաբերելու և օգտագործելու,
գիտության, տեխնիկայի և առաջավոր փորձի նվաճումներն արտադրության
մեջ արմատավորելու համար, պայքարում են աշխատանքային կարգապահու-
թյան խախտումների, անտնտեսավարության, բյուրոկրատիզմի դեմ։ Նրանց
գործունեությունում մեծ տեղ են հատկացվում մասսաների շրջանում կուսակ-
ցության քաղաքականության պրոպագանդման և աշխատավորների կոմունիս-
տական դաստիարակության հարցերին։ Իրենց այդ բազմազան գործունեու-
թյամբ կուսկազմակերպություններն ընդհանրացնում են արտադրության առա-
ջավորների փորձը, տնտեսական ղեկավարների հետ համագործակցելով գտնում
կոլեկտիվի աշխատանքը բարելավելու առավել արդյունավետ մեթոդներ։
Աշխատավոր մասսաներին էկոնոմիկայի կառավարման գործին անմիջա-
կանորեն մասնակից դարձնելու կարևոր լծակ են արհմիութենական կազմակեր-
պությունները։ Արհմիություններն իրենց զինանոցում ունեն այնպիսի ձևեր,
ինչպիսիք են՝ սոցիալիստական մրցությունը, մշտական գործող արտադրական
խորհրդակցությունները, բանվորական ժողովները, զանազան հանձնաժողով-
ները։



Զարգացած սոցիալիզմի պայմաններում մասսաների ստեղծագործական
ջանքերի շնորհիվ անընդհատ կատարելագործվում են աշխատանքային մրցու-
թյան ձևերն ու բովանդակությունը։ Կոմունիստական աշխատանքի շարժում,
բանվորական էստաֆետներ, հանդիպական պլաններ, գիտության ու արտադրու-
թյան աշխատողների համագործակցություն, բրիգադային տնտհաշվարկ, աշ-
խատանքի արտադրողականության բարձրացման անձնական պլաններ, խնա-
յողության անձնական հաշիվներ, վարպետ-դաստիարակների շարժում — ահա
սոցիալիստական մրցության վերջին տարիների նոր դրսևորումներից մի քա-
նիսը։
Սոցիալիստական մրցության շրջանակների ընդլայնման ու խորացման
շնորհիվ նշանակալի փոփոխություններ են կատարվում հասարակական ար-
տադրության բովանդակության ու ֆունկցիաների, արտադրության կազմա-
կերպման ձևերի ու մեթոդների մեջ։ Դրանք ակտիվորեն ներգործում են սոցիա-
լիստական աշխատանքը կոմունիստականի վերաճելու պրոցեսի վրա, նպաս-
տում կոլեկտիվիստական հարաբերությունների զարգացմանը։ Աշխատավոր-
ներն ավելի ակտիվորեն են ներգրավվում էկոնոմիկայի կառավարման մեջ։
Ներկայումս Կիրովական քաղաքի ձեռնարկություններում սոցիալիստական
մրցությունում ընդգրկված է շուրջ 35 հազար մարդ կամ բանվոր-ծառայողների
ավելի քան 93,4 տոկոսը։ Կոմունիստական աշխատանքի կոչման են արժանա-
ցել ավելի քան 8 հազար մարդ, 265 բրիգադ, 129 արտադրամաս և հերթափոխ։
Այդ կոչմանն արժանանալու համար պայքարում են մոտ 16.700 մարդ, 495
բրիգադ, 181 արտադրամաս և բաժին։
Արդյունաբերական խոշոր ձեռնարկություններում մշակվել ու հաստատվել
են մրցության կազմակերպման և արդյունքների ամփոփման համագործարա-
նային ու արտադրամասային պայմաններ։ Այստեղ մեծ ուշադրություն է նվիր-
վում մրցության հրապարակայնությանը, պարտավորությունների ամփոփմա-
նը, հարվածայինների խրախուսմանը և առաջավոր փորձի տարածմանը։ Մաս-
նավորապես, քիմիական գործարանում լայն թափ է ստացել մրցությունը։
Սոցիալիստական մրցության զարգացման նոր արդյունավետ ձև է հանդի-
պական պլանների ընդունումը։ Դա հնարավորություն է ընձեռում պլանների
մշակման ժամանակ հաշվի առնել ներարտադրական ռեզերվները, ստանձնել
ավելի բարձր պարտավորություններ, ստեղծագործական որոնումների մեջ
ներառել ողջ կոլեկտիվին։ Բավական է նշել, որ միայն ընթացիկ հնգամյակի
անցած երեք տարում Կիրովականի արդյունաբերական կոլեկտիվների հանդի-
պական պլանների և առաջադրանքների հիման վրա պլանից դուրս թողարկվել
է մոտ 10,5 մլն ռուբլու արտադրանք, տնտեսվել են շուրջ 2 մլն ռուբլու նյութա-
կան ու ֆինանսական միջոցներ։
Ձեռնարկությունների, միավորումների հանդիպական պլանների առանձ-
նահատկությունն այն է, որ դրանք նպաստում են արտադրության արդյունա-
վետության և աշխատանքի որակի բարձրացման կոմպլեքսային ծրագրերի
իրականացմանը, ներառնում են արտադրության բոլոր օղակների պլանները,
մշակվում և հաստատվում են ըստ ժողովրդական տնտեսությանն առավել
կարևոր արտադրատեսակների արտադրության ցուցանիշներ և նախատեսում
են նյութական խրախուսման համապատասխանորեն ավելի մեծ ֆոնդեր։
Մրցության արդյունավետության բարձրացման գործում դրական մեծ ազ-
դեցություն գործեց Մոսինսկի մահուդի կոմբինատի կոլեկտիվի առաջավոր
փորձի ներդրումը։ Յուրաքանչյուր ամսվա վերջում ամփոփվում են սոցիալիս-
տական պարտավորությամբ վերցրած բոլոր ցուցանիշների կատարման ար-
դյունքները։ Աշխատանքի արդյունավետությունը որոշելու նպատակով բացված
է բրիգադի յուրաքանչյուր անդամի անձնական հաշիվ, որտեղ աճող թվերով
ավելացվում են պլանային առաջադրանքների կատարումից գոյացած տնտե-
սումը և ի հայտ բերում մրցության հաղթողներին։
Կոլեկտիվի աշխատանքի արդյունքները վկայում են, որ նրանք, հավա-
տարիմ մնալով «Տասներորդ հնգամյակի առաջադրանքները կատարել 4 տա-
րում» իրենց նախաձեռնությանը, ստանձնած պարտավորությունը ևս կկատա-
րեն ժամկետից շուտ։

# ՍՈՎՈՐՈՒՄ Է ՈՂՋ ԿՈԼԵԿՏԻՎԸ

Ս. Գ. ՀՈՎՍԵՓՅԱՆ

ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ քարտուղար Ա. Զավելևիչի և
Հրազդանի պետական շրջանային էլեկտրակայանի մի
խումբ պրոպագանդիստների հետ մեր զրույցը երկար տևեց։ Այն վերաբերում
էր «Գաղափարական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա
բարելավման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման առնչությամբ՝ աշխատա-
վորների տնտեսագիտական դաստիարակության արդյունավետությունը բարձ-
ռացնելու հարցերին։ Չէ որ այս որոշմամբ է՛լ ավելի է շեշտվում պրոպագան-
դայի գործարարությունն ու կոնկրետությունը, տնտեսական ու քաղաքական
խնդիրների լուծման հետ նրա կապն ուժեղացնելու անհրաժեշտությունը։ Կու-
սակցությունը պահանջում է խորությամբ պարզաբանել ՍՄԿԿ-ի սոցիալ-տըն-
տեսական քաղաքականությունը, ըստ ամենայնի զարգացնել սոցիալիստական
մրցությունը, ակտիվորեն նպաստել սոցիալիզմի առավելությունները գիտա-
տեխնիկական հեղափոխության նվաճումների հետ միացնելու պատմական
խնդրի հաջող լուծմանը, ընդհանրացնել և տարածել առաջավոր փորձը, հաս-
տատակամորեն պայքարել կարգապահության ամրապնդման համար, խնայո-
ղության համար։ Յուրաքանչյուր աշխատավոր պետք է պարզորոշ գիտակցի
ժողովրդատնտեսական պլանների կատարմանը, գիտատեխնիկական առաջըն-
թացի արագացմանը իր անձնական մասնակցության հասարակական նշանա-
կությունը։

ՍՄԿԿ Կենտկոմի առաջադրած խնդիրների ոգով գնահատելով Հրազդանի
ՊՇԷԿ-ի կուսակցական կազմակերպության, ադմինիստրացիայի և հասարա-
կական մարմինների գործունեությունը, կարելի է վստահորեն ասել, որ այստեղ
զգալի դրական փորձ է կուտակված։ Սա մեր հանրապետության այն ձեռնար-
կություններից է, որը հասել է տեխնիկական զինվածության և աշխատանքի
կազմակերպման բարձր մակարդակի։

Էներգետիկների այս համերաշխ կոլեկտիվը հաջողությամբ է կատարում
տասներորդ հնգամյակի առաջադրանքները և իր հաստատուն տեղն է գրավել
համամիութենական սոցիալիստական մրցության առաջավորների շարքերում։
ժամկետից շուտ կատարվել է անցած երեք տարիների պետական պլանը և
ծրագրից դուրս արտադրվել շուրջ 100 մլն կվտ-ժամ էլեկտրաէներգիա։ Ձեռք
բերած հասույթների համար հրազդանցիները երեք տարի անընդմեջ արժանա-
ցել են ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ
Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշին, նրանց անունը գրանցված է ԺՏՆՑ-ի
համամիութենական պատվոտախտակում։ Կոլեկտիվը բազմիցս հաղթող է ճա-
նաչվել ՍՍՀՄ էներգետիկայի և էլեկտրիֆիկացիայի մինիստրության ձեռնար-
կությունների սոցիալիստական մրցությունում։ Նրան շնորհվել է «Արտադրա-
կան բարձր կուլտուրայի ձեռնարկություն» պատվավոր կոչում։

Աշխատանքի բարձր տեմպերը պահպանվում են նաև ընթացիկ տարում։
Համախառն արտադրանքի 4 ամսվա պլանը կատարված է 100,6 տոկոսով և
առաջադրանքից ավելի թողարկված է 7 մլն կվտ-ժամ էլեկտրաէներգիա։

Էներգետիկների հաջողություններն արդյունք են ձեռնարկության ադմի-
նիստրացիայի, կուսակցական, արհմիութենական, կոմերիտական կազմակեր-



պությունների տնտեսական և տեխնիկական, կազմակերպական և գաղափարա-
կան կոմպլեքս միջոցառումների։ Արտադրության արդյունավետության և աշ-
խատանքի որակի բարձրացման նպատակով իրականացվող այդ միջոցառումնե-
րի շարքում առանձնահատուկ տեղ է գրավում կոլեկտիվի անդամների ուսուց-
ման, նրանց քաղաքական և տնտեսագիտական կրթության հմուտ կազմակեր-
պումը։ Այստեղ պրակտիկորեն լուծված է կոլեկտիվի բոլոր անդամներին ուսուց-
ման տարբեր ձևերում ընդգրկելու կարևորագույն խնդիրը։ Իսկ դա, ինչ խոսք,
բոլոր բանվորների, ինժեներատեխնիկական ու ղեկավար աշխատողների, մաս-
նագետների ուսուցումը կազմակերպելու առաջին ու անհրաժեշտ նախապայ-
մանն է։

Կոմունիստները և կոմերիտականները սովորում են քաղաքական ուսուց-
ման ցանցում՝ ուսումնասիրելով զարգացած սոցիալիզմի Սահմանադրությու-
նը, ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, ընկեր Լ. Ի. Բրեժնևի «ՍՄԿԿ գաղա-
փարական աշխատանքի հրատապ հարցերը» աշխատությունը։ Մյուս բոլոր
աշխատողները արդեն չորս տարի է ընդգրկված են տնտեսագիտական կրթու-
թյան ցանցում։ Բանվորները հետևողականորեն հարստացնում են իրենց տըն-
տեսագիտական գիտելիքները, ուսումնասիրում արտադրության և աշխատան-
քի գիտական կազմակերպման հիմունքները, ձեռնարկության, արտադրամասի
տնտեսական գործունեությունը, արտադրության արդյունավետության և աշ-
խատանքի որակի բարձրացման առաջավոր փորձը։ Ինժեներատեխնիկական
աշխատողները և մասնագետները, արտադրության ղեկավար աշխատողները
խորանում են մարքս-լենինյան տնտեսագիտական տեսության, կուսակցության
տնտեսական քաղաքականության, արտադրության կառավարման գիտության
և պրակտիկայի մեջ, ուսումնասիրում մարդկանց դաստիարակության ու կազ-
մակերպման մեթոդները և դրանց կատարելագործման ուղիները։

1978—1979 ուսումնական տարում տնտեսագիտական ուսուցման և կոմու-
նիստական աշխատանքի 27 դպրոցների ունկնդիրները, որոնք մինչ այդ ավար-
տել էին «Տնտեսագիտական գիտելիքների հիմունքները», «Սոցիալիզմը և աշ-
խատանքը» դասընթացները, ուսումնասիրեցին արտադրության արդյունավե-
տության և աշխատանքի որակի բարձրացման առաջավոր փորձը։

Ձեռնարկության ինժեներատեխնիկական աշխատողների և մասնագետ-
ների սեմինարներում շուրջ 60 ունկնդիրներ շարունակում էին «Ինժեներական
աշխատանքը սոցիալիստական հասարակարգում» դասընթացի ուսումնասի-
րությունը։ Արտադրության միջին օղակի ղեկավարների համար գործող երկու
սեմինարներում պարապմունքներն անցկացվում էին «Ղեկավարի աշխատան-
քը» դասընթացի երկրորդ տարվա ծրագրով։

140 երիտասարդ բանվորներ, որոնք մինչև աշխատանքի անցնելն ստացել
են համապատասխան տնտեսագիտական պատրաստականություն, ընդգրկված
էին ձեռնարկությանը կից գործող տնտեսագիտության ժողովրդական համալ-
սարանում։ Այստեղ ուսումնասիրվում էին կուսակցության տնտեսական քաղա-
քականության հրատապ պրոբլեմները, արտադրության արդյունավետության
և աշխատանքի որակի բարձրացման խնդիրները։

Ինչպես տեսնում ենք, ձեռնարկությունում գործում է կոլեկտիվի բոլոր
անդամների քաղաքական և տնտեսագիտական կրթության կուռ սիստեմ, որ-
տեղ հստակորեն կիրառվում են ուսուցումն ըստ օղակների ու ձևերի կազմա-
կերպելու և դասընթացների ու պրոբլեմների ուսումնասիրման հաջորդակա-
նությունն ապահովելու սկզբունքները։

Իրականացնելով Բաշկիրիայի կուսակցական կազմակերպության վերա-
բերյալ ՍՄԿԿ Կենտկոմի որոշման պահանջները, կայանի կուսկոմիտեն, ադ-
մինիստրացիան, հասարակական կազմակերպությունները միջոցներ են ձեռ-
նարկում՝ ուժեղացնելու տնտեսագիտական կրթության դերը արտադրության
արդյունավետության և աշխատանքի որակի բարձրացման նպատակով։ Հա-
տուկ ուշադրություն է նվիրվում այն բանին, որ մշտապես զարգացվեն կոլեկ-
տիվի անդամների հասարակական և աշխատանքային ակտիվությունը, նրանց
ստեղծագործական միտքը։ Կարևորն այն է, որ ունկնդիրները կարողանան ձեռք
բերած գիտելիքները կիրառել ամենօրյա գործնական աշխատանքում, և տըն-

տնտեսագիտական կրթությունն առավելագույն չափով նպաստի այնպիսի խնդիրների լուծմանը, ինչպիսիք են արտադրության և տեխնոլոգիայի կատարելագործումը, նյութական ծախսումների կրճատումը, աշխատաժամանակի ռացիոնալ օգտագործումը։

Ձեռնարկությունը հագեցված է բարձր արտադրողական սարքավորումներով, առաջավոր տեխնոլոգիայով։ Չնայած դրան, տնտեսագիտական կրթության պրոպագանդիստներն ու ունկնդիրները մշտապես ջանում են ավելի կատարելագործել տեխնոլոգիական պրոցեսները, հասնել վառելիքի առավել տնտեսման։ Այդ նպատակով հետևողականորեն մոդեռնացվում են սարքավորումները, օպտիմալացվում է աշխատանքի ռեժիմը։ Պարապմունքների և գործնական աշխատանքի պրոցեսում լուրջ ուշադրություն է հատկացվում գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումների, առաջավոր փորձի ուսումնասիրմանն ու ներդրմանը։ Ձեռնարկությունում հետզհետե նոր թափ է ստանում նորարարական շարժումը։ Այստեղ ոչ մի մտահղացում անուշադրության չի մատնվում։ Յուրաքանչյուր ռացիոնալիզատորական առաջարկություն դառնում է տնտեսագիտական կրթության սեմինարի կամ դպրոցի ուսումնասիրման առարկա։ Պրոպագանդիստներն օգնում են, որպեսզի ունկնդիրներն ավելի ճիշտ ձևակերպեն իրենց մտահղացումները, կատարեն տնտեսագիտական ստույգ հաշվարկներ։ Այնուհետև համատեղ որոշվում են դրանց ներդրման ձևերն ու հնարավորությունները։ Դա մեծ չափով արագացնում է ռացիոնալիզատորական առաջարկությունների ձևակերպման, ընդունման և ներդրման պրոցեսը։ Եվ ահա արդյունքը. անցած երեք տարիներին ներդրված առաջարկություններից տնտեսվել է շուրջ 690 հազար ռուբլի, որը հավասար է ամբողջ հնգամյակի համար նախատեսված առաջադրանքին։ Նորարար-ռացիոնալիզատորի համբավ են ձեռք բերել ունկնդիրներ՝ վերանորոգող վարպետ Գ. Սահակյանը, կարգավորման արտադրամասի պետ Ի. Բաևը, կաթսատուրբինային արտադրամասի ավագ մեքենավար Ա. Տուբինը, էլեկտրափականագործ Թ. Ալիևը և ուրիշներ։ Վերջին ժամանակաշրջանի առավել կարևոր նորամուծություններից կարելի է հիշատակել համամիութենական ջերմատեխնիկական ինստիտուտի և ձեռնարկության մասնագետների կատարած համատեղ ուսումնասիրությունները։ Էլեկտրակայանի բլոկային մասի ջրաքիմիական ռեժիմը վերլուծելուց հետո մշակվեց զովարանների աշխատանքի նոր սիստեմ, որը հնարավորություն ընձեռեց՝ զգալիորեն երկարացնելու դրանց շահագործման ժամկետը։

Տնտեսագիտական կրթության դպրոցների պարապմունքներում հատուկ ուշադրություն է նվիրվում աշխատանքային և նյութական ռեսուրսների, հատկապես վառելանյութի խնայողության հարցերին։ Պետք է ներկա լինել այդ պարապմունքներին՝ տեսնելու համար, թե ինչպես են բանվորներն ու ինժեներները տիրոջ հոգածությամբ քննարկում իրենց կոլեկտիվի գործերը, բացահայտում նյութերն ու միջոցները խնայողաբար ծախսելու, հանրային հարստությունը բազմապատկելու նոր ռեզերվներ ու հնարավորություններ։ Նրանց այդ ստեղծագործ աշխատանքը կարելի է ցուցադրել հետևյալ թվերով. կոլեկտիվը միայն 1978 թվականին կարողացավ վառելանյութի տեսակարար ծախսերը կրճատել 1,2 գրամով, իսկ դա նշանակում է՝ խնայել 6 հազար տոննա պայմանական վառելանյութ։ Ընդհանուր առմամբ, տասներորդ հնգամյակի առաջին երեք տարիներին Հրազդանի էներգետիկները տնտեսել են 28,4 հազար տոննա պայմանական վառելանյութ կամ կես միլիոն ռուբլու պետական միջոցներ։ Սա կարևոր նվաճում է. կայանի աշխատանքը բնորոշող հիմնական ցուցանիշներից մեկը պայմանական վառելիքի տեսակարար ծախսումն է յուրաքանչյուր կիլովատ-ժամ էլեկտրաէներգիայի և հեկակալորիա ջերմային էներգիայի արտադրության համար։

Տնտեսագիտական կրթության արդյունավետությունը բարձրացնելու կարևոր ուղիներից է ուսուցման ակտիվ ձևերի և գործնական հանձնարարությունների կատարումը։ Առանձնապես խրախուսելի է ունկնդիրների կողմից ռեֆերատներ կազմելու պրակտիկան. ռեֆերատները հիմնականում նվիրվում են ձեռնարկության տնտեսական գործունեության բարելավմանը, տեխնոլոգիական առանձին պրոցեսների կատարելագործմանը, աշխատանքի առաջավոր



մեթոդների ու ձևերի կիրառմանը, արտադրական լավագույն փորձի ներդրմանը։ Ռեֆերատները, որպես կանոն, ընթերցվում և լայնորեն քննարկվում են պարապմունքի ժամանակ, միջոցներ նշվում բարձրացված հարցերին գործնական ընթացք տալու համար։

Տնտեսագիտական սեմինարի ունկնդիր, էլեկտրավերանորոգման միացյալ արտադրամասի պետ Գ. Բաբայանի ռեֆերատը նվիրված է էներգետիկ սարքավորումների վերանորոգման և սպասարկման առաջավոր մեթոդներին։ Իսկ կայանի դիրեկտոր, պրոպագանդիստ Հ. Սանթուրյանը «Հայգլխէներգոյի» վարչությունում հանդես է եկել «Շչոկինյան մեթոդի արդյունավետությունը և դրա կիրառման հնարավորությունները Հրազդանի ՊՇԷԿ-ում» թեմայով։ Այդ նույն հարցի շուրջ նա զեկուցում է կարդացել շրջանի կուսակցական-տնտեսական ակտիվի համար։ Տնտեսագիտական սեմինարի ունկնդիր, ջերմային ավտոմատիկայի և չափումների արտադրամասի պետ Վ. Փերիխանյանի ռեֆերատը նվիրված է տեխնոլոգիական պրոցեսների կառավարումն ավտոմատացնելու ուղիներին։ Այս ռեֆերատի քննարկումից հետո կոնկրետ միջոցառումների իրականացումը հնարավորություն ընձեռեց՝ ՊՇԷԿ-ում լայնորեն ներդնելու էլեկտրոնային հաշվիչ տեխնիկան։

Ուսուցման համակարգի հիմնական դեմքը, անկասկած, եղել ու մնում է պրոպագանդիստը և, ինչպես շեշտվում է գաղափարական աշխատանքների հետագա բարելավման մասին ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ, «ուսման հաջողությունն ամբողջովին կախված է պրոպագանդիստական կադրերի տեսական և մեթոդական մակարդակից»։ Բնականաբար, ձեռնարկության կուսակցական կազմակերպության կոմիտեն իր պարտքն է համարում պրոպագանդիստական կադրերի ճիշտ ընտրությունը, նրանց ուսուցումն ու դաստիարակությունը։

Վերջին տարիներին այստեղ կայունացել են պրոպագանդիստական կադրերը, որոնք քաղաքականապես հասուն, տեսականորեն պատրաստված, փորձառու ընկերներ են։ Սկսած ձեռնարկության դիրեկտորից, նրա տեղակալներից, ծառայությունների պետերից մինչև արտադրամասերի ու տեղամասերի ղեկավարները, առաջատար մասնագետները նվիրվածությամբ են կատարում պրոպագանդիստի բարդ և պատասխանատու պարտականությունը։ Ջերմային արտադրամասի պետի տեղակալ Ա. Ղարիբյանը, որն ունի կյանքի և աշխատանքի մեծ փորձ, իր հարուստ գիտելիքները սիրով է հաղորդում ունկնդիրներին։ Այդպիսին է նաև կենտրոնացված վերանորոգման արտադրամասի ավագ վարպետ Գ. Համբարյանը, որի վարած պարապմունքները հետաքրքրությամբ են անցնում, և ունկնդիրներից ոչ մեկը չի բացակայում։ Քիմիական լաբորատորիայի պետ Անահիտ Այվազյանի խոսքը համոզիչ է, ներգործուն։

Հին բոլշևիկ Հ. Հակոբյանը վառ ու գունեղ լեզվով կարողանում է ծրագրային նյութը շաղախել հեղափոխական անցյալի հետաքրքրական իրադարձությունների հետ։ Ավելի մոտիկից ծանոթանալով պրոպագանդիստներին, համոզվում ես, որ նրանք գաղափարային, իրենց գործին նվիրված, ձեռնարկությունում հարգված մարդիկ են։

Պրոպագանդիստներին և ունկնդիրներին անհրաժեշտ օգնություն է ցույց տալիս ձեռնարկության տնտեսագիտական կրթության մեթոդական խորհուրդը։ Այն ղեկավարում է ՊՇԷԿ-ի գլխավոր ինժեներ Մ. Վարդանյանը։ Խորհրդի կազմում ընդգրկված են ձեռնարկության ղեկավար աշխատողներ, կուսակցական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների ներկայացուցիչներ։ Խորհրդի անդամներից շատերը նաև պրոպագանդիստներ են։ Պարբերաբար հրավիրվող նիստերում քննարկվում են ուսուցման կազմակերպման, մեթոդիկայի հետ կապված բազմազան հարցեր։ Խորհուրդը կոորդինացնում է ադմինիստրացիայի, կուսակցական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունների, գիտատեխնիկական, ռացիոնալիզատորական, «Գիտելիք» ընկերությունների գործունեությունը՝ տնտեսագիտական գիտելիքների պրոպագանդայի և կոլեկտիվի անդամների տնտեսագիտական ուսուցման բնագավառում։

Խորհուրդն աջակցում է ինչպես տնտեսագիտական կրթության սիստեմի ուսուցման տարբեր օղակների կոմպլեկտավորմանը, այնպես էլ պրոպագան-

դիտների ուսուցմանը։ Այստեղ պրոպագանդիստները հիմնականում տնտեսական ղեկավարներ են, և դա լայն հնարավորություններ է ընձեռում սերտորեն զուգակցելու տնտեսական ու քաղաքական-դաստիարակչական աշխատանքը, ավելի մոտիկից զբաղվելու յուրաքանչյուր աշխատողի տնտեսագիտական պատրաստականության հարցերով։ Դա միաժամանակ գործուն միջոց է, որպեսզի տնտեսական ղեկավարները նույնպես սիստեմատիկաբար հարստացնեն իրենց տնտեսագիտական և քաղաքական գիտելիքները։ Նրանք և՛ սովորեցնում են, և՛ սովորում տնտեսավարման արվեստը, ձեռք բերում սոցիալիստական արտադրությունը գիտականորեն վարելու հմտություններ։

Պրոպագանդիստների սիստեմատիկ ուսուցումը կազմակերպելու նպատակով ամիսը մեկ հրավիրվում են սեմինարներ, տնտեսական ղեկավարների ու պրոպագանդիստների հրահանգչական խորհրդակցություններ։

Խորհուրդը, ադմինիստրացիայի և կուսկոմիտեի հետ համատեղ անհրաժեշտ միջոցներ է ձեռնարկում ուսուցման նյութատեխնիկական բազան ամրապնդելու նպատակով։ Տնտեսագիտական դպրոցների ու սեմինարների պարապմունքների համար հատկացվում են ձեռնարկության բոլոր հարմարավետ սենյակները՝ սկսած դիրեկտորի առանձնասենյակից, մինչև արտադրամասերի կարմիր անկյունները։ Օգտագործվում են դիտողական պարագաները, ցուցադրական նյութերը, պրոպագանդայի տեխնիկական միջոցները։

Տնտեսագիտական խորհրդի միջոցով մշտական վերահսկողություն է իրականացվում ուսուցման նկատմամբ։ Խորհուրդն իրական պատասխանատվություն է կրում պարապմունքների որակի և գաղափարական-տեսական մակարդակի համար։ Նրա յուրաքանչյուր անդամ, սահմանված գրաֆիկի համաձայն, ունկնդրում է այս կամ այն դպրոցի պարապմունքը, ինֆորմացիա ներկայացնում ունկնդրման արդյունքների մասին։ Խորհրդի նիստերում պարբերաբար վերլուծվում են այդ նյութերը, անհրաժեշտության դեպքում դրանք ներկայացնելով ադմինիստրացիայի և կուսակցական կոմիտեի քննարկմանը։

Խորհրդի աշխատանքներում կարևոր տեղ է գրավում պրոպագանդիստներին անհրաժեշտ մեթոդական և տեղեկատու նյութերով ապահովելու խնդիրը։ Պարբերաբար կազմվում ու պրոպագանդիստներին և ունկնդիրներին են ներկայացվում կոլեկտիվի արտադրական գործունեության, պետական պլանների և սոցիալիստական պարտավորությունների կատարման ընթացքի վերաբերյալ փաստական նյութեր, արտադրության առաջավորների ու նորարարների նախաձեռնությունների, առաջավոր փորձի մասին ինֆորմացիաներ։ Հետաքրքրական միջոցառում է ինֆորմացիոն օրերի անցկացումը։

Տնտեսագիտական կրթության արդյունավետությունը բարձրացնելու գործում մեծ դեր է խաղում պրոպագանդիստի անձնական ստեղծագործական պլանը։ Մեթոդխորհուրդը հոգում է, որպեսզի նման պլաններ ունենան բոլոր պրոպագանդիստները։ Անձնական ստեղծագործական պլանում մեծ տեղ է հատկացվում ունկնդիրների հետ անհատական աշխատանքների կազմակերպմանը, ուսուցման ակտիվ ձևերի կիրառմանը։ Մեթոդխորհուրդը, որպես կանոն, ուսումնական տարվա համար մշակում է յուրաքանչյուր դպրոցում ունկնդիրներին տրվող գործնական հանձնարարությունների հիմնական թեմաները։

Բանվորների և ինժեներատեխնիկական աշխատողների ինչպես քաղաքական, այնպես և տնտեսագիտական ուսուցման գործը մշտապես գտնվում է կուսակցական կոմիտեի ուշադրության կենտրոնում։ Կոմիտեն պարբերաբար անդրադառնում է աշխատավորների տնտեսագիտական դաստիարակության խնդիրներին։ Այսպես, 1978 թ. հոկտեմբերին կուսկոմիտեն քննարկել է Բաշկիրիայի կուսակցական կազմակերպության վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի որոշումից բխող խնդիրները։ Տնտեսագիտական կրթության դերի բարձրացման կոնկրետ հարցերին նա անդրադարձել է նաև 1979 թ. հունվարին։ Կուսկոմիտեն մշտապես բարձրացնում է կոմունիստների, համապատասխան աշխատողների պատասխանատվությունը՝ ուսուցման կազմակերպման և որակի համար։

— Կարևոր միջոցառում է տնտեսագիտական ուսուցման դպրոցների ստուգատեսի անցկացումը, որը մեծ հետաքրքրություն առաջացրեց ինչպես ձեռ-



նարկությունում, այնպես էլ ամբողջ շրջանում,— պատմում է ՀԿԿ Հրազդանի շրջկոմի պրոպագանդայի և ագիտացիայի բաժնի վարիչ Օ. Թումոյանը։— Ստուգատեսն անցկացնելիս խնդիր էր դրված՝ լայնորեն օգտագործել տնտեսագիտական կրթության հնարավորություններն աշխատանքի որակը բարձրացնելու համար, հանգամանորեն վերլուծել յուրաքանչյուր ունկնդրի անհատական սոցիալիստական պարտավորությունների կատարումը, ուժեղացնել ուսուցման դերը հանձնարարված գործի նկատմամբ ամեն մի աշխատողի պատասխանատվության բարձրացման, աշխատանքային կարգապահության ամրապնդման, փոխօգնության և կոլեկտիվիզմի ոգով մարդկանց դաստիարակելու գործում։

Ստուգատեսն անցավ հաջողությամբ, առավել աչքի ընկած պրոպագանդիստներն արժանացան «ՊՇԷԿ-ի լավագույն պրոպագանդիստ» կոչմանը և դրամական պարգևի, նշվեցին ուսումնական տարվա լավագույն ռեֆերատները։

Տնտեսագիտական կրթության կազմակերպման բնագավառում ջերմաէլեկտրակայանի կուսակցական կազմակերպության դրական փորձը վերջերս արժանացավ ՀԿԿ Հրազդանի շրջկոմի հավանությանը։ Շրջանային կոմիտեն հանձնարարեց մյուս կուսակցական կազմակերպություններին՝ ուսումնասիրել և լայնորեն տարածել ՊՇԷԿ-ի կուսկոմիտեի աշխատանքի փորձը։

Հրազդանի ջերմաէլեկտրակայանը նշանակալից դեր ունի ամբողջ հանրապետության էլեկտրաարդյունաբերության մեջ։ Այն լայն ճանաչում է գտել երկրում և նրա սահմաններից դուրս։ Այստեղ հաճախ կարելի է հանդիպել՝ հյուրերի Միության տարբեր քաղաքներից և արտասահմանից։ Նրանք գալիս են ուսումնասիրելու հրազդանցիների աշխատանքի հարուստ փորձը, առաջավոր տեխնիկան և տեխնոլոգիան։

Հրազդանի ջերմաէլեկտրակայանում հրավիրվել է միջազգային գիտաժողով։ Վերջերս այստեղ էին սոցիալիստական համագործակցության երկրների էներգետիկայի մինիստրները։ Հարավսլավիայի, Իրանի, Ալժիրի, Իրաքի, Ֆինլանդիայի, մի շարք այլ երկրների մասնագետների համար կազմակերպվում է արտադրական-տեխնիկական ուսուցում։ Հրազդանի ՊՇԷԿ-ը դարձել է ջերմային էլեկտրակայանների մասնագետների պատրաստման կենտրոններից մեկը։

Հրազդանցիների լայն ճանաչման շառավիղի ընդլայնումը բարձրացնում է նրանց պատասխանատվությունը հանձնարարված գործի հանդեպ։ Իրենց ավանգարդային դերի պահպանման, նոր բնագծերի նվաճման ասպարեզում մեծ է կադրերի տնտեսագիտական կրթության դերը, որը հաջողությամբ գլխավորում է ձեռնարկության կուսակցական կազմակերպությունը։

---

# ԳԻՏԱԿԱՆ ՀԱՆՁՆԱՐԱՐԱԿԱՆՆԵՐԻ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

**Վ. Հ. ՂԱԶԱՐՅԱՆ**
ՀՍՍՀ ԳԱ կենսաբանական գիտությունների
բաժանմունքի ակադեմիկոս-քարտուղար

*ՍՄԿԿ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ 1978 թ. հուլիսյան պլենումը կարևորագույն խնդիրներ առաջադրեց գիտությանը— հետազոտությունների արդյունավետության բարձրացման միջոցով արագացնել գյուղատնտեսության գիտատեխնիկական առաջընթացը։*

*Այս առումով գյուղատնտեսական, ինչպես և կենսաբանական, քիմիական և այլ գիտական հիմնարկություններից պահանջվում է լարել ուժերը, գործադրել նյութական բոլոր հնարավորությունները՝ մշակելու ժամանակակից գյուղատնտեսության ինդուստրացման հետ առնչվող հիմնական պրոբլեմները։*

*Ինչպես հայտնի է, գիտատեխնիկական առաջընթացում նշանակալից դեր են խաղացել բնական գիտությունները, որոնց զարգացումը հանգեցրել է բազմաթիվ նորագույն հայտնագործությունների՝ ֆիզիկայի, քիմիայի, կիբեռնետիկայի, ռադիոտեխնիկայի, էլեկտրոնիկայի, կենսաբանության և այլ բնագավառներում, որոնք, ունենալով կիրառական նշանակություն, զգալիորեն պայմանավորել են հասարակական արտադրուժերի բուռն զարգացումը։*

*Գիտության զարգացման արդի փուլը բնորոշվում է բնական երևույթների կոմպլեքս ուսումնասիրությամբ, որին անմիջականորեն մասնակցում են տարբեր ճյուղերի մասնագետներ, քանզի հրատապ պրոբլեմների բազմակողմանի ուսումնասիրությունն անհնար է առանց այդ գիտությունների տեսական ու կիրառական նվաճումների արմատավորման։*

*Թերևս այս է պատճառը, որ կենսաբանական դիսցիպլինների շարքում այժմ իրենց հաստատուն տեղն ունեն գիտությունների այնպիսի բնագավառներ, որոնց հավանական առնչությունը կենսաբանության հետ մի ժամանակ նույնիսկ դժվար էր պատկերացնել։ Դրան զուգահեռ ձևավորվել և զգալի առաջընթաց են ապրել գիտության ավելի նորագույն ուղղությունները, որոնք կենսաբանության արդի պրոբլեմների ուսումնասիրությունները հասցրել են ներբջջային կառուցվածքների և մոլեկուլային մակարդակի, ինչպես, օրինակ՝ մոլեկուլային կենսաբանությունը, մոլեկուլային գենետիկան, բիոֆիզիկան, բիոօրգանական քիմիան, ռադիացիոն գենետիկան և այլն։*

*Հասարակության նյութական ու հոգևոր կուլտուրայի զարգացման գործում անգնահատելի նշանակություն ունի գիտատեխնիկական առաջընթացը։ Այն արմատապես հեղաշրջել է նաև գյուղատնտեսական արտադրությունը, ընդլայնել դրա գործունեության ոլորտը, ինդուստրացրել այդ բնագավառի շատ աշխատանքներ։ Այստեղ, անշուշտ, անգնահատելի է գիտության, առաջին հերթին՝ կենսաբանության դերը։ Վերջինիս հիմնական խնդիրն է միկրոօրգանիզմների, կենդանական ու բուսական օրգանիզմների կենսագործունեության ուսումնասիրությունը, այդ հիման վրա դրանց զարգացման և արդյունավե-*



*տության բարձրացման պրոցեսների կառավարումը։ Կենդանական, բուսական ու միկրոօրգանիզմների գենետիկայի, սելեկցիայի նոր մեթոդների կիրառումը և ֆիզիոլոգիական էության ըմբռնումը հնարավորություն են ընձեռել ստանալու բարձր բերքատու բույսերի նոր սորտեր և մթերատու կենդանիների ցեղեր, արմատապես բարելավելու դրանց ագրոտեխնիկան և զոոտեխնիկան։ Բիոցենոզների օրինաչափությունների պարզաբանումը լայն հեռանկարներ է բացել նոր պայմաններում արժեքավոր բույսերի ու կենդանիների կլիմայավարժեցման և տվյալ երկրի կենդանական ու բուսական աշխարհի հարստացման, գյուղատնտեսական վնասատուների դեմ արդյունավետ պայքար կազմակերպելու համար։*

*Այժմ հետազոտական աշխատանքներ են ծավալվում ֆոտոսինթեզի՝ բույսերի կողմից արևի էներգիայի, ջրի և ածխաթթու գազի օգնությամբ օրգանական նյութի սինթեզի էության պարզաբանման նպատակով։ Հեռու չէ այն օրը, երբ մարդը հնարավորություն կունենա վերարտադրելու բնության այդ մեծագույն կենարար պրոցեսը և կնպաստի նյութական բարիքների առատության ստեղծմանը։*

*Հոյակապ հեռանկարներ է բացում նաև մոլեկուլային գենետիկայի նորագույն ուղղությունը՝ գենային ինժեներիան, որն արդեն որոշակի արդյունքներ է տալիս միկրոօրգանիզմների նոր արժեքավոր շտամների ստեղծման կամ, իրենց ելակետային ձևերի համեմատությամբ, մարդկությանը շատ ավելի ինտենսիվ ծառայող նոր տիպի միկրոօրգանիզմների նախագծման ու ստացման բնագավառում։*

*Ժամանակակից կենսաքիմիայի ասպարեզում ուսումնասիրվել, հայտնաբերվել, ապա արհեստական եղանակով սինթեզվել են բազմաթիվ ֆիզիոլոգիական ակտիվ նյութեր՝ խթանիչներ, ֆերմենտներ ու հորմոններ, որոնք այժմ լայնորեն կիրառվում են բուսաբուծության ու զոոտեխնիկայի բնագավառում և զգալի չափով բարձրացնում բույսերի ու կենդանիների աճն ու մթերատվությունը։*

*Այս համառոտ թվարկումը վկայում է, թե ինչպես հիմնարար հետազոտությունները մի կողմից ընդլայնել են մեր իմացության սահմանները, մյուս կողմից՝ գործնական օգնություն են ցույց տալիս գյուղատնտեսական արտադրությանը։*

*Հանրապետության գիտությունների ակադեմիայի կենսաբանական, քիմիական, երկրի մասին գիտությունների բաժանմունքների ինստիտուտները, իրենց կարևոր խնդիրը համարելով ՍՄԿԿ XXV համագումարի որոշումների կատարումը, հիմնարար հետազոտությունների հիման վրա մշակել են գործնական առաջարկներ գյուղատնտեսական արտադրության արդյունավետության բարձրացման նպատակով, վերջին տարիներս հասել են որոշակի արդյունքների և, միաժամանակ, պլանավորել նոր, տեսական ու գործնական հրատապ թեմաներ։*

*Բուսաբանության ինստիտուտի գիտական կոլեկտիվի առաջնահերթ խնդիրներից մեկն է հանրապետության անտառային անտեսության վիճակի բարելավումը, անտառապատ տարածքների ընդարձակումը, անտառամելիորատիվ տնկարկների հիմնումը՝ որպես հակաէրոզիոն միջոցառում։ Այս նախաձեռնության նպատակն է ջրային ռեսուրսների բարելավումը և կլիմայական պայմանների մեղմացումը, գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության բարձրացումը։ Մեր հանրապետության հողածածկույթը կազմում է մոտ 3 մլն հեկտար. գյուղատնտեսական արտադրության նպատակներով օգտագործվում է դրա միայն 46 տոկոսը։ Այսպիսի ցածր հողօգտագործման գործակիցը հետևանք է եղած հողերի մոտ $^1/_3$-ի էրոզացվածության։*

*Նկատի ունենալով, որ հակաէրոզիոն կոմպլեքս միջոցառումներից առաջնահերթ նշանակություն ունեն անտառամելիորատիվ տնկարկները, անտառապատումը և կանաչապատումը, բուսաբանական ինստիտուտի կոլեկտիվը դեռ մի քանի տարի առաջ մշակել է հանրապետության հետագա անտառապատման, անտառամելիորատիվ տնկարկների հիմնման և կանաչապատման տեսական հիմունքներն ու դրանց կիրառման գործնական ուղիները։ Ըստ այդ հանձ-*

նարարականների, ՀՍՍՀ անտառային տնտեսության պետական կոմիտեն անտառապատման և անտառամելիորատիվ միջոցառումների տարեկան ծավալը պետք է հասցներ 8.000—10.000 հեկտարի, սակայն մոտ ապագայում յուրաքանչյուր տարվա համար նախատեսված է 3.000—4.000 հեկտար, որից անտառամելիորատիվ և հակաէրոզիոն տնկարկներ՝ 500—600 հեկտար, մինչդեռ ՍՍՀՄ անտառային տնտեսության մինիստրությունը մշտապես պատրաստակամություն է ցուցաբերում ապահովելու այդ նպատակով պահանջվող ֆինանսավորումը։ Բնականաբար նման պլանավորման դեպքում անկարող կլինենք պայքարելու հողերի՝ շարունակ ուժեղացող էրոզիայի դեմ։ Բանն այն է, որ գյուղատնտեսության մինիստրությունը, կոլտնտեսություններն ու սովխոզները անտառային տնտեսությանը չեն հատկացնում համապատասխան սակավ օգտագործվող հողամասեր, եթե դրանք տրամադրվում էլ են, ապա տարբեր տեղերից, փոքր տարածություններով, որոնց անտառապատումը կամ անտառամելիորատիվ միջոցառումները չեն տալիս սպասվելիք արդյունքը։ Հանրապետության մեջ զգալի են քայքայված հողատեսքերը, որոնք կոլտնտեսություններն ու սովխոզներն օգտագործում են որպես վաղ գարնանային ցածրարժեք արոտներ, այն էլ 5—10 օր տևողությամբ, և ամբողջ տարին դրանք մնում են անօգտագործելի։ Կոլտնտեսությունների և սովխոզների ղեկավարները մոռանում են, որ նման հողամասերի անտառապատումը կարճ ժամանակամիջոցում տալիս է 5—6 անգամ ավելի անասնակեր։

Ինստիտուտը միաժամանակ մշակել և հիմնավորել է հանրապետությունում անտառօգտագործման, հատումների օպտիմալ ծավալը, բարձրացնելով հիմնական անտառ կազմող արդյունաբերական ծառատեսակների տեխնիկական հասունության տարիքը։ Այս աշխատանքները հնարավորություն են ընձեռել ճշգրտելու տարեկան անտառհատումների չափը, որի հիման վրա Միության պետպլանը համաձայնել է անտառհատումների պլանը նվազեցնել 2 անգամ։ Այս միջոցառումն զգալի չափով նպաստում է հանրապետության անտառային տնտեսության բարելավմանը։

Ինստիտուտի արտադրական կարևոր միջոցառումներից է նաև Սևանա լճի ջրերից ազատված ավազահողերի անտառապատման տեսակային կազմի արմատական վերանայումը։ Ինստիտուտի հանձնարարականների և մշակած ագրոտեխնիկայի համապատասխան այստեղ սակավարժեք տնկարկների փոխարեն հիմնվեցին ավելի քան 7.500 հեկտար սոճու երկարակյաց անտառներ։

Հանրապետության մի շարք շրջաններում փորձարկելով սիլոսացու ժախի 3 տեսակները, ինստիտուտի աշխատակիցները հաստատեցին, որ մեկ ցենտների կերամիավորները հանրապետության տարբեր հողակլիմայական պայմաններում 3—5 անգամ բարձր են ավանդական կերային կուլտուրաներից (եգիպտացորեն, առվույտ, տիմոֆեևկա, վիկա, վարսակ), որոնք մշակվում են Հայաստանի նույն գոտիներում։ Նման տվյալներ են ստացվել նաև մեկ հեկտար ցանքի կերամիավորների և մարսելի պրոտեինների քանակական ելքի վերաբերյալ, որոնք վկայում են այդ կուլտուրայի տնտեսական բարձր արդյունավետությունը։

Գյուղատնտեսության մինիստրության կոլեգիան 1975 թ. դեկտեմբերի 23-ի որոշմամբ հանձնարարել է հանրապետության 25 շրջաններում 175 հեկտար տարածության վրա արտադրական փորձարկման ենթարկել նշված բույսերը։ Սակայն անցած ժամանակաշրջանում դեռևս ոչինչ չի արվել։ Այդ աշխատանքները միայն շարունակվել են Կալինինոյի և Ստեփանավանի 4 տնտեսություններում՝ բուսաբանական ինստիտուտի ղեկավարությամբ, առաջին հերթին սերմնաբուծության հարցը լուծելու նպատակով։ 1976—1978 թթ. այդ շրջաններում մթերվել է 183,24 տոննա սերմ, որից հանրապետության կոլտնտեսություններն ու սովխոզները գնել են ընդամենը 7,5 տոննա, իսկ 175,74 տոննան՝ Միության այլ հանրապետությունների և մարզերի տնտեսությունները։ Սիլոսային այս կուլտուրայի նկատմամբ նման անտարբերությունն անհանդուրժելի է, մանավանդ որ կերի պակասի պատճառով ևս անասնապահությունը դարձել է հանրապետության գյուղատնտեսության նեղ տեղերից մեկը։

Վերջին չորս տարիներին հանրապետության ինը բնական ջրհավաք ավա-



զանների համար ինստիտուտը մշակել է 167 հազար հեկտարի մելիորատիվ նախագծեր, որոնք արժանացել են գյուղմինիստրության բարձր գնահատականին։

Հանրապետության բուսական աշխարհի ուսումնասիրության ընթացքում հայտնաբերված են ութ արժեքավոր սննդաբույսեր, որոնք զբաղեցնում են զգալի տարածություններ. դրանք այժմ օգտագործվում են սննդարդյունաբերության մեջ՝ պահածոների արտադրության նպատակով։ Ճշգրտված են դրանց տարածման վայրերը, ինչպես և՝ պաշարները։ Կազմված են օգտագործման համապատասխան հրահանգներ, որոնք ներառված են պետական ստանդարտի մեջ։ Հայտնաբերված է եթերայուղատու երկու նոր բույս, որոնցից ստացված յուղը փորձարկվել և արժանացել է օծանելիքի արտադրության Լենինգրադի «Սվետլանա» միավորման բարձր գնահատականին։ Այժմ համակողմանի մշակվում և փորձարկվում է արտադրության մեջ դրանց ներդրման տեխնիկան։

Ծավալուն աշխատանքներ են ձեռնարկված հանրապետության էրոզացված լեռնալանջերի անտառամելիորացման, դրանք չորադիմացկուն ծառատեսակներով ու թփերով պատելու նպատակով. մասսայական բազմացման ու արտադրության մեջ ներդնելու համար փորձարկված և ընտրված են 28 տեսակներ։

Գյուղատնտեսական արտադրությանը ցուցաբերվող օգնությունը հետագայում առավել արդյունավետ դարձնելու համար ինստիտուտի առջև ծառացած են նոր խնդիրներ։ Ամենից առաջ նկատի ունենալով հանրապետության հողային ռեսուրսների սղությունը՝ պահանջվում է մշակել ու ճշտել բնական և արհեստական բուսական ցենոզների այնպիսի քանակական հարաբերություն, որպեսզի ապահովվի դրանց լավագույն արդյունավետությունը։ Նման կանխատեսական սխեմաների կազմումը հնարավորություն կընձեռի պետական օրգաններին՝ ճիշտ պլանավորելու հողօգտագործումը ըստ գյուղատնտեսական կուլտուրաների, հանդակների և բնական բուսածածկի այլ ֆորմացիաների։ Նման կանխատեսումները միաժամանակ հեռանկարներ են բացում զգալիորեն ընդլայնելու առկա սահմանափակ անտառազանգվածները, առաջին հերթին՝ էրոզացված և գյուղատնտեսական օգտագործումից հանված հողատարածություններում։

Միկրոբիոլոգիայի ինստիտուտն զգալի օգնություն է ցույց տալիս գյուղատնտեսական արտադրությանը. այն մեծ հեռանկարներ ունի այդ օգնությունն ավելի արդյունավետ դարձնելու։ Գիտության այդ բնագավառն ամենից առաջ սերտորեն առնչվում է հողի բերրիության պրոբլեմի, դրա ազոտային բալանսի կարգավորման հետ, որն իրականացվում է, մի կողմից, հողում գտնվող ազոտ ֆիքսող բակտերիաների կենսագործունեության, մյուս կողմից՝ թիթեռնածաղկավոր բույսերի և նիտրատների լայն օգտագործման միջոցով։ Այս առումով ուշագրավ է նիտրագինի արտադրության, նոր բարձրարդյունավետ բակտերիաների օգտագործումը ոլոռի և սոյայի համար, որոնց փորձարկումը տվել է մեծ արդյունք։

Լավ ընդունելության են արժանացել գյուղատնտեսական կուլտուրաների հիվանդությունների դեմ միկրոբիոլոգիական պայքարի եղանակների մշակման հետ կապված աշխատանքները։ Ինստիտուտում ստացվել և այժմ հարյուրավոր տոննաներով արտադրվում է միջատասպան նոր պրեպարատ։ Ինստիտուտի մյուս կարևոր նախաձեռնությունը բակտերիոֆագի արտադրության տեխնոլոգիայի մշակումն է։ Այդ պրեպարատը բույսերի պաշտպանության ինստիտուտի հետ փորձարկվել, բարձր գնահատականի է արժանացել և այժմ օգտագործվում է կրծողների դեմ։

Անասնապահության հետագա զարգացմանը նպաստելու նպատակով զգալի աշխատանք է կատարված դրոժների նոր կուլտուրաների օգտագործմամբ արդյունաբերության թափոններից անասնակեր ստանալու ասպարեզում։ Սակայն ինստիտուտը դեռևս զգալի անելիքներ ունի կոշտ կերի դրոժացման, արտադրության մեջ դրանց ներդրումն ապահովելու գործում։

Հեռանկարային են նաև ֆոտոտրոֆ բակտերիաների օգնությամբ սպիտակուցավիտամինային պրեպարատների ստացման նպատակով տարվող հետա-

վոտական աշխատանքները։ Կատարյալ տեխնոլոգիայի մշակումը հնարավո-
րություն կընձեռի անասնապահությունն ապահովելու սպիտակուցային կերով։
Նույնքան արժեքավոր է նաև իմոբիլիզացնող (անշարժ) ֆերմենտների օգնու-
թյամբ ամինաթթուների, ամենից առաջ, անփոխարինելի ամինաթթուների
ստացման նոր տեխնոլոգիայի մշակումը։

Նկատի ունենալով մեզ մոտ անասնակերի սուղ բազան, միկրոբիոլոգիայի
ինստիտուտում պետք է առաջին հերթին կազմակերպել կերային սննդանյու-
թերի ստացման միկրոբիոլոգիական արտադրություն՝ օգտագործելով ֆոտո-
տրոֆ և ջրածնային բակտերիաներ, ինչպես և այլ շտամներ՝ գյուղատնտեսու-
թյան և արդյունաբերության մնացուկների վերամշակման համար։ Ընդլայնվել
են ժամանակակից միկրոբիոլոգիայի հեռանկարները ժողովրդական տնտեսու-
թյանը, գյուղատնտեսությանը գործնական օգնություն ցույց տալու մարզում։
Այժմ բուսաբուծության մեջ պեստիցիդների փոխարեն օգտագործվում են մեծ
քանակությամբ անտիբիոտիկներ։ Ինչպես հայտնի է, պեստիցիդները բույսերի
հիվանդությունների ու վնասատուների դեմ պայքարելու արդյունավետ միջոց
են, սակայն բուսական կերի հետ անցնելով մարդկանց և գյուղատնտեսական
կենդանիների օրգանիզմը, մեծ վնաս են պատճառում նրանց։ Այժմ խնդիր է
դրվում պեստիցիդները լիովին փոխարինել անտիբիոտիկներով, որոնց մեծ
մասը սինթեզվում է միկրոօրգանիզմների կողմից։

Անասնապահության թափոնները, որոնք պարունակում են մեծ քանա-
կությամբ էներգետիկ նյութեր, փտման պրոցեսում ոչնչանում են, մինչդեռ
հնարավոր է դրանց միկրոբիոլոգիական վերօգտագործումը սպիտակուցային
անասնակեր և բարձրարժեք օրգանական պարարտանյութեր ստանալու նպատա-
կով։ Միկրոբիոլոգիական եղանակով սպիտակուցային կերի զգալի ելանյութ
կարող է տալ նաև անտառային տնտեսությունը։ Աշնանն անտառում կուտակ-
վում են զգալի քանակությամբ բուսական մնացորդներ՝ խաշամ (մեկ հեկտա-
րից՝ մոտ 20 տոննա)։ Շատ երկրներում արդեն զգալի գործ է արվում այդ օր-
գանական մնացորդներից սպիտակուցներով հարուստ բարձրորակ անասնակեր
ստանալու համար։ Այս բնագավառում ևս մեծ են միկրոբիոլոգների անելիք-
ները։

Ագրոքիմիական պրոբլեմների և հիդրոպոնիկայի ինստիտուտի կարևորա-
գույն խնդիրներից մեկը թանկարժեք գյուղատնտեսական կուլտուրաների մշա-
կումն է բաց հիդրոպոնիկայի եղանակով և դրա լայն կիրառումը հանրապե-
տության տարբեր տնտեսություններում։ Այս մեթոդի բարելավումը հեռանկա-
րային կդարձնի խաղողի վաղի արմատակալների մասսայական ստացումը։
Ինչպես հայտնի է, հանրապետության շատ կոլտնտեսությունների ու սովխոզ-
ների խաղողի այգիների ցածր բերքատվության հիմնական պատճառներից
մեկը դրանց ոչ բավարար խտությունն է։ Նման այգիների լիարժեքության,
ինչպես նաև նոր հիմնվող այգիների համար պահանջվում են առկա արժեքա-
վոր, նույնպես և սելեկցիոն նպատակով ստեղծված նոր, բարձր բերքատու
սորտերի մեծ քանակությամբ մատղաշ արմատակալներ։

Հանրապետությունում այժմ գործում են մի շարք թռչնաբուծական ֆաբ-
րիկաներ, որոնց մթերատվության բարձրացման գործում զգալի նշանակություն
ունի կանաչ վիտամինային կերը։ Այդ տնտեսություններում պետք է լայնորեն
կիրառվեն կանաչ կերի անընդմեջ արտադրության փոքրաչափ սարքեր, որոնք
մշակվել են այս ինստիտուտում։

Հանրապետության գյուղատնտեսական կենդանիների և թռչունների ցածր
մթերատվությունն զգալի չափով պայմանավորված է դրանց հելմինտային հի-
վանդություններով, որոնք լայնորեն տարածված են գրեթե բոլոր տնտեսու-
թյուններում։ Կենդանաբանության ինստիտուտը որոշակի նախաձեռնություն
է ցուցաբերել գյուղատնտեսական կենդանիների հելմինտների դեմ պայքարի
կազմակերպման գործում, դրական արդյունքներ են ստացվել լայն մասշտաբի
փորձերում, սակայն մշակված մեթոդն արտադրության մեջ դեռևս չի կիրառ-
վում։ Գառների վտանգավոր պարազիտային մոնիեզիոզ հիվանդության դեմ
մշակված բուժման մեթոդը ևս տվել է դրական արդյունք։ Այն նույնպես պետք
է անհապաղ ներդրվի արտադրության մեջ։



Ինստիտուտը մշակել է նաև ծխախոտի սածիլների վնասատուների՝ կո-
ղինջի դեմ պայքարի եղանակ, որն արժանացել է գյուղատնտեսության մինիս-
տրության հավանությանը. անհրաժեշտ է այն ներդնել հանրապետության
ծխախոտագործական տնտեսություններում։

Արտադրական կարևոր նշանակություն ունեն նաև ինստիտուտի տարբեր
լաբորատորիաներում այժմ մշակվող թեմաները։ Ամենից առաջ պահանջվում
է մշակել արարատյան որդան կարմիրի արհեստական բազմացման եղանակը.
այն անփոխարինելի ներկ կլինի սննդի և օծանելիքի արդյունաբերության
համար։ Մեծ նշանակություն կունենան նաև ինստիտուտում մշակված խնձո-
րենու պտղակերի դեմ պայքարի գենետիկական մեթոդի լայն արտադրական
փորձարկումն ու ներդրումը գյուղատնտեսության բնագավառում։

Լ. Ա. Օրբելու անվան ֆիզիոլոգիայի ինստիտուտի բաժիններից գյուղա-
տնտեսական արտադրությանն առնչվում է միայն գյուղատնտեսական կենդա-
նիների ֆիզիոլոգիայի լաբորատորիան, որը մի շարք արժեքավոր առաջարկու-
թյուններ է արել գյուղատնտեսական արտադրությանն օգնելու նպատակով։
Այսպես, աշնանային և ձմեռային ամիսներին թռչնաբուծության մեջ լրացուցիչ
լուսավորության օգտագործումը նպաստում է հավերի ձվատվության ավե-
լացմանը, իսկ ուլտրամանուշակագույն լույսով ինկուբացիոն ձվերի փոքր դո-
զաներով հառագայթահարումն ավելացնում է ճտահանությունը։ Սակայն, ցա-
վոք, թռչնաբուծական տնտեսությունները նախաձեռնություն չեն ցուցաբերում
արտադրության մեջ այս մեթոդը կիրառելու գործում։ Թռչնաբուծական տըն-
տեսությունների համար արժեքավոր է նաև մսաձվատու հավերի նոր «երևան-
յան ցեղի» ստեղծումը։ Այժմ լայնորեն փորձարկվում են լիզինի գործարանի
թափոնների օգտագործման եղանակները։ Փորձերը ցույց են տալիս, որ այդ
թափոնների ոչ մեծ քանակներով կերակրելու դեպքում ճտերն ավելի արագ
են աճում։ Հեռանկարային կարևոր խնդիրներ են դրվում ինստիտուտի առաջ
հավերի բրոյլերային ցեղերի ստեղծման գործում, որոնք հասունանում են
ավելի կարճ ժամանակամիջոցում և բարձրարդյունավետ են։

Զգալի գործ է արված նաև խաղողագործության ու գինեգործության, ինչ-
պես և եթերայուղային խորդենու թափոնների վերամշակման միջոցով ընտանի
թռչունների համար սննդարար կերի արտադրության բնագավառում։ Այդ եղա-
նակի ներդրման շնորհիվ հանրապետության սննդարդյունաբերության ձեռ-
նարկությունները վերջին 3—4 տարիներին մթերումների մինիստրության հա-
մակցված կերի գործարանին են հանձնել ավելի քան 15 հազար տոննա կերա-
նյութ։ Սակայն այդ նպատակով դեռևս օգտագործվում է արտադրության թա-
փոնների մեկ քառորդը միայն։

Մի շարք երկրներում անասունների բարձր մսատվությունը, կաթի յուղայ-
նությունը, ինչպես և ճարպատվությունն ու թռչունների ձվատվությունն ապա-
հովվում է ո՛չ միայն նշված ուղղությունների գծային ցեղերի ստացմամբ, այլև
համապատասխան որակի անասնակերի օգտագործմամբ։ Նման կերի ստեղծ-
ման նպատակով արդյունավետ կլինի կենդանիների ֆիզիոլոգների և բիոքիմի-
կոսների համագործակցությունը։

Փորձարարական կենսաբանության ինստիտուտի մուտագենեզի լաբորա-
տորիայում փորձարարարական մուտագենեզի և հիբրիդիզացիայի հիման վրա
ստացվել են ցորենի և գարու արժեքավոր մուտանտներ։ 1978 թ. պետական
սորտափորձարկման է հանձնված ցորենի մեկ մուտանտ, որը բերքատվու-
թյամբ, տեխնոլոգիական ցուցանիշներով ու քիմիական բաղադրությամբ գե-
րազանցում է սկզբնաձևերին։

Մոլեկուլային-գենետիկական հետազոտությունների շնորհիվ այս ինստի-
տուտում հնարավորություն է ստեղծվել ստանալու ադենին արտադրող բակ-
տերիալ շտամներ։ Լրացուցիչ այս սննդանյութը, ինչպես հայտնի է, բարձրաց-
նում է գյուղատնտեսական կենդանիների մթերատվությունը։ Այժմ լայն աշ-
խատանքներ են ծավալվում այդ շտամներից առավել արդյունավետների
ընտրության, ինչպես և ադենինի ստացման, անջատման տեխնոլոգիայի մշակ-
ման ասպարեզում։

Ժամանակակից մոլեկուլային գենետիկան, հատկապես գենային ինժենե-

րիան, հնարավորություն ունի ձևափոխելու միկրոօրգանիզմները և դրա հիման վրա ստեղծելու արժեքավոր ձևեր, որոնք կարող են տալ գյուղատնտեսությանը և ժողովրդական տնտեսության այլ բնագավառներին անհրաժեշտ ֆիզիոլոգիական ակտիվ նյութեր։ Դրա համար պահանջվում են գիտական նորագույն սարքեր, քիմիական հատուկ գերմաքուր ռեակտիվներ, որոնց ձեռքբերումը մնում է իբրև դժվար լուծելի խնդիրներից մեկը։

Սևանի հիդրոբիոլոգիական կայանն զգալի չափով կարող է նպաստել հանրապետության ձկնաբուծության ինտենսիվ զարգացմանը ինչպես Սևանա լճում, նույնպես և բնական ու արհեստական այլ ջրամբարներում ու գետերում։ Այս խնդիրների լուծման համար կայանի գիտական կոլեկտիվը պետք է կլիմայավարժեցման եղանակով յուրաքանչյուր ջրամբարի համար ընտրի համապատասխան ձկնատեսակներ, ինչպես և ջրամբարների՝ արեգակնային էներգիայի օգտագործման գործակիցը բարձրացնող մակրոֆիտներ։ ՀՍՍՀ Մինիստրների խորհրդի ձկնային տնտեսության միավորման ջանքերով Հայաստանում ստեղծվել են բազմաթիվ ջրամբարներ՝ ձկնաբուծության զարգացման նպատակով։ Սակայն միավորումը դեռ պատշաճ գործնական օգնություն չի ստանում Սևանի հիդրոբիոլոգիական կայանից։ Ոռոգման նպատակով այժմ հանրապետությունում գործում են 58 ջրամբարներ, որոնք կարող են հանդիսանալ ձկնաբուծական օջախներ։ Սակայն ամառվա ամիսներին դրանց ջրի նվազումը դժվարացնում է ձկների կենսագործունեությունը։ Ուստի և անհրաժեշտ է այնպես անել, որ ջրամբարների մակարդակն իջնելուն զուգահեռ որսան հիմնականում հասուն ձկները, թողնելով մատղաշը, որի հետագա զարգացումը հնարավոր է նաև ոչ մեծ քանակությամբ ջրում։

Ընդհանուր և անօրգանական քիմիայի ինստիտուտում վերջին տարիներս մշակվել է նոր տեխնոլոգիական սխեմա՝ Ալավերդու լեռնամետալուրգիական կոմբինատի թափոնային խարամից սուլֆատային մելիորանտ ստանալու նպատակով։ Հողագիտության ինստիտուտի փորձարկումները վկայում են, որ այդ մելիորանտը շատ արդյունավետ է աղակալած հողերի յուրացման համար։ Հարկ է կազմակերպել դրա արդյունաբերական արտադրությունը և ներդնել այն գյուղատնտեսական պրակտիկայում։ Նույն ինստիտուտի հետազոտությունները ցույց են տվել, որ հողերի գիպսացման համար կարելի է օգտագործել հատիկավորված ֆոսֆոգիպսը (ֆոսֆորական թթվի արտադրական թափոն)։ Այժմ Միության շատ վայրերում բնական գիպսը փոխարինվում է ֆոսֆոգիպսով։ Անհրաժեշտ է այդ մեթոդը կիրառել նաև մեզ մոտ։

Մակերեսային ջրերի ռացիոնալ օգտագործման նպատակով հանրապետությունում կառուցվել և կառուցվում են ջրամբարներ, սակայն ֆիլտրացման պատճառով ջրի զգալի կորուստ է լինում։ Այժմ հանրապետությունում գործող ջրամբարների ջրի ընդհանուր ծավալը հասնում է 380 մլն խմ-ի, իսկ կորուստները՝ 100 մլն խմ-ի, այսինքն՝ ամբարվող ջրի 26,4 տոկոսը։ Ջրի զգալի կորուստ է լինում նաև մեծ ու փոքր ջրատար առուներից։ Ջրի նման կորուստների դեմ պայքարելու գործում մեծ անելիքներ ունեն անօրգանական քիմիայի, երկրաբանական գիտությունների ինստիտուտները։

Հայաստանի քիմիական արդյունաբերության օբյեկտները հսկայական քանակությամբ թունավոր գազեր են արտանետում մթնոլորտ, դրանց մի մասն էլ վնասակար նյութերով աղտոտում է գետերը։ Կոմպլեքս սարքերի և վնասազերծող ու վնասազերծված նյութերի կրկնօգտագործման եղանակների գիտական մշակումը մեծ դեր կխաղա մթնոլորտի ու գետերի մաքրության պահպանման գործում։ Կարևոր է և դանդաղլուծելի ու կոմպլեքս պարարտանյութերի ստացումը, որոնք անհրաժեշտ են հատկապես բարձր լեռնային մարգագետինների և գյուղատնտեսական հանդավայրերի պարարտացման համար։

Գյուղատնտեսական կուլտուրաների աճման, ծաղկման և պտղակալման պրոցեսների ինտենսիվացման նպատակով լայնորեն օգտագործվում են մի շարք ֆիզիոլոգիական ակտիվ նյութեր, որոնց մեծ մասն ստացվում է արտասահմանից։ Զգալի անելիքներ ունի այս ասպարեզում նուրբ օրգանական քիմիայի ինստիտուտը։

Կան նյութեր, որոնց ազդեցությամբ փոխվում են բույսերի ժառանգական



հատկությունները, ստացվում նոր, ավելի արժեքավոր մուտանտ ձևեր։ Եղած նյութերը, ինչպես, օրինակ՝ կոլխիցինը իր մուտագեն հատկություններով այժմ չի բավարարում գյուղատնտեսության հարաճուն պահանջները։ Մուտագեն միացությունների ստացման գործում ևս մեծ է քիմիական գիտությունների, առաջին հերթին՝ նուրբ օրգանական քիմիայի ինստիտուտի դերը։

Հանրապետության գյուղատնտեսությանը և ժողովրդական տնտեսության այլ բնագավառներին զգալի վնաս են պատճառում սողանքները, որոնց հայտաբերման և կանխման գործում մեծ անելիքներ ունեն գիտահետազոտական հիմնարկությունները, առաջին հերթին՝ երկրաբանական գիտությունների ինստիտուտը։ Այն պետք է զբաղվի նաև ֆոսֆորական պարարտանյութերի հումքային աղբյուրների հանքավայրերի հետախուզմամբ ու հայտաբերմամբ, որոնց պահանջը մեր երկրի գյուղատնտեսության համար մեծ է։

Գիտությունների ակադեմիայի տնտեսագիտության ինստիտուտը ուսումնասիրել է հանրային գյուղատնտեսության ճյուղային և սոցիալական կառուցվածքը, գյուղատնտեսական արտադրաուժերի առանձին տարրերի համամասնական, հեռանկարային զարգացումը։ Քննարկվել է տարբեր գոտիներում գործող գյուղատնտեսական ձեռնարկությունների զարգացման համար համանման տնտեսական պայմաններ ստեղծելու հարցը։ Հետազոտական աշխատանքներ են ծավալվել հանրապետության հողային ֆոնդերի տնտեսական գնահատման և գյուղատնտեսության կառավարման տնտեսական մեխանիզմի կատարելագործման նպատակով։ Մշակված են Հայկական ՍՍՀ-ի սոցիալ-տնտեսական, ինչպես և գյուղատնտեսության զարգացման հիմնական ասպեկտները 1985—1990 թթ. համար, ցույց տալով այդ բնագավառի զարգացման հիմնական ուղղությունները, որոնք բխում են միջտնտեսային կոոպերացման և ագրոարդյունաբերական ինտեգրացման վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ինչպես և ՀԿԿ Կենտկոմի ու հանրապետության կառավարության համապատասխան որոշումներից։ Ուսումնասիրվել, քննարկվել են ՀՍՍՀ տարբեր գոտիների կոլտնտեսությունների ու սովխոզների տնտեսական չերտավորման պատճառները, հիմնավորվել են լեռնային շրջանների գյուղատնտեսության նյութատեխնիկական բազայի ամրապնդման և ինտենսիվացման, գյուղատնտեսության կառավարման տնտեսական մեխանիզմի կատարելագործման հիմնական ուղիները։

Ինստիտուտների թեմատիկ պլաններից բխող նշված աշխատանքները, գյուղատնտեսական արտադրության արդի պահանջների համեմատությամբ, շատ ավելի փոքրածավալ են։ Անհրաժեշտ է գյուղատնտեսական արտադրության տնտեսական ցուցանիշների հետագա կատարելագործման, խթանման նոր մեթոդների մշակում, գյուղատնտեսության արդյունավետության բարձրացման միջոցների, ագրոարդյունաբերական, գյուղատնտեսական, արդյունաբերական ու առևտրական ձեռնարկությունների ինտեգրացման ձևերի ուսումնասիրություն, դրանց օպտիմալ տարբերակների ընտրություն և այլն։

Անշուշտ, թվարկված խնդիրներով չի սահմանափակվում գիտությունների ակադեմիայի ինստիտուտների գործունեությունը գյուղատնտեսական արտադրությանն օգնելու առումով։ Ակադեմիայի սիստեմում իրականացվող հետազոտությունների արդյունավետությունը, բնականաբար, պայմանավորված է նաև կադրային և նյութատեխնիկական առկա հնարավորություններով։ Ինստիտուտների ղեկավարները պետք է գյուղատնտեսական արտադրության հետագա առաջընթացի հրատապ հարցերը դարձնեն առաջնահերթ խնդիրներից մեկը և հնարավորության սահմաններում պլաններում ընդգրկեն առավել գործնական թեմաներ, պատրաստեն համապատասխան որակյալ կադրեր, ստեղծեն նյութատեխնիկական միջոցներ այդ թեմաների կատարման, նոր պրոբլեմների լուծման համար։

Կասկածից վեր է, որ գիտությունների ակադեմիայի գիտնականների ողջ կոլեկտիվը, իր գործունեության ծրագիրը դարձնելով ՍՄԿԿ Կենտկոմի 1978 թ. հուլիսյան պլենումի որոշումները, ջանք չի խնայի՝ հիմնարար ուսումնասիրություններով լուծելու գյուղատնտեսության հետագա առաջընթացի կարևորագույն հարցերը, նպաստելու գյուղատնտեսական արտադրության արդյունավետության բարձրացմանը։

Պրոբլեմներ և մտորումներ

# ՊՐՈԳՐԵՍԻ ԴԻԱԼԵԿՏԻԿԱՆ

Ա. Գ. ԱԴՈՅԱՆ

Առանց կանանց լիովին ազատագրելու, պրոլետարիատը չի կարող լիովին ազատագրվել։
Վ. Ի. ԼԵՆԻՆ

## ՊԱՏՄԱԿԱՆ ՎԵՐԸՆԹԱՑԻ ՔԱՌՈՒՂԻՆԵՐՈՒՄ

ԻԶՈՒՐ ՉԵՆ ԱՍՈՒՄ, թե պրակտիկան է ընթանում տեսության առջևից, գրել է Վ. Ի. Լենինը։ Հիրավի, գիտական կոմունիզմի՝ ավելի քան հարյուր երեսուն տարի մղած գոյամարտերի փառավոր պատմությունը մեկընդմիշտ ապացուցեց, որ լենինյան կոմունիստական կուսակցության ղեկավարած սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթությամբ Ռուսաստանում հասարակության գոյատևման կոմունիստական ֆորմացիան սկզբնավորվեց։

Սոցիալական, ազգային ու հոգևոր կեղեքումից ազատագրված աշխատավորական զանգվածները, երկրի ու իշխանության տերը դառնալով, տարբեր ազգերի ու ժողովուրդների սովետական սոցիալիստական միություն կազմավորելով, մեր անծայրածիր հայրենիքում սովետական սոցիալիստական հանրակարգ հաստատեցին։ Այդ իսկ դարակազմիկ սլացքով հավերժացվեց անհրաժեշտության թագավորությունից՝ ազատության թագավորություն թևակոխելու պատմափուլը։

Անտարակույս, կեղեքման, ճնշման ու տմարդության հազարամյակների հոգեբանությունն իր այլանդակող ներգործությունն է ունեցել նաև մարդկային երկու սեռերի փոխհարաբերությունների վրա։ Ցավոք, այդ ճնշող բեռից ձերբազատվելը հույժ դժվարին է։ Ահա թե ինչու երիտասարդ Կ. Մարքսը գրել է. Մարդու վերաբերմունքը կնոջ նկատմամբ՝ մարդու վերաբերմամբ մարդու ամենաբնական հարաբերությունն է։ Ուստի և դրանում է երևան գալիս, թե մարդու բնական վարվեցողությունը որչափով է մարդկային դարձել կամ մարդկային էությունը որքանով է նրա բնական էությունը դարձել, նրա մարդկային բնությունը որչափով է նրա բնությունը դարձել (տե՛ս К. Маркс и Ф. Энгельс. Из ранних произведений. М., 1956, стр. 587)։

Կոմունիստական հումանիզմի փիլիսոփայության սույն մեկնակետից են սկզբնավորվում կնոջ էմանսիպացիայի ըմբռնումն ու իրավաբարոյական վարքագիծը, մանավանդ որ մարդ անհատի պահանջը մեկ այլ մարդու նկատմամբ կյանքի է կոչվում այն չափով, որչափով նա իր բուն էությամբ հասարակական անձնավորություն է դարձել։ Կամ այլ կերպ ասած՝ կնոջ հանդեպ տածած սերը և հարգանքի աստիճանը տղամարդկանց վարքագծի չափանիշ է դառնում, երբ ամեն կարգի շահագործումից ու անարդարությունից զերծ սոցիալիստական հանրություն է հաստատվում։

Հետևաբար, զարգացած սոցիալիզմի հասարակության քաղաքացին երբեք չպետք է մոռանա, որ շահագործողական հասարակությունները կոմունիստներին ժառանգություն են թողնում մարդկային հոգևոր կյանքի այլասերում, երբ կնոջ՝ իբրև հանրային վավաշանքի ու «որսի» նկատմամբ ունեցած հարաբերության մեջ դրսևորված է այն անսահման դեգրադացիան, որում մարդն ինքն է գտնվում (տե՛ս նույն տեղը)։



Հայտնի է, որ 1920 թ. սիրո և ամուսնաընտանեկան ու երիտասարդության սեռական դաստիարակության հարցերի վերաբերյալ Վ. Ի. Լենինը ծրագրային զրույց է ունեցել Կլարա Ցետկինի հետ։ Պատերազմի ու սկսված հեղափոխության մթնոլորտում,— ասել է Լենինը,— գաղափարական հին արժույթները, կորցնելով իրենց զսպող ուժը, անէանում են։ Իսկ նոր արժույթները բյուրեղանում են դանդաղ և պայքարով։ Հեղափոխականանում են մարդու հայացքները մարդու նկատմամբ, նմանապես և կնոջ վերաբերյալ տղամարդու հայացքները։ Հեղափոխականանում են և՛ մտքերը, և՛ զգացմունքները (տե՛ս Воспоминания о В. И. Ленине, т. 5, 1970, стр. 37—59)։

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը կանանց ազատագրեց շահագործումից և վավերացրեց նրանց իրավահավասարությունը տղամարդկանց հետ։ Դա սոցիալիստական հասարակարգի արմատական ու վիթխարի այն հասումներից մեկն է, որի նմանը տակավին չի կատարվել և ոչ մի երկրում։ Սովետական ամուսնաընտանեկան հաստատությունը հասարակության հուսալի ու ամրակազմ գործոն է դարձել։ Քաղաքացիական կռիվների բարիկադներում, հնգամյակների կատարման ոլորտներում, Մեծ հայրենականի ռազմադաշտերում ու թիկունքում սովետական կանայք արիության, աշխատանքային սխրանքների աննման ու իրոք զանգվածային օրինակներ ցուցաբերեցին։

Այդ նրանք էին, լենինյան վսեմ գաղափարներով տոգորված սովետական կանայք, որ տղամարդկանց առաջընթացին համերաշխ մենամուսնության սոցիալիստական հիմքերն արկանեցին մեր հայրենիքում։ Սովետական ընտանիքի պատմական հասումները մարմնավորված են ՍՍՀՄ նոր Սահմանադրության 53-րդ հոդվածում, ուր ասված է. «Ընտանիքը գտնվում է պետության պաշտպանության ներքո։ Ամուսնությունը հիմնվում է կնոջ և տղամարդու կամավոր համաձայնության վրա. ամուսինները լիովին իրավահավասար են ընտանեկան հարաբերություններում։

Պետությունն ընտանիքի համար հոգ է տանում մանկական հիմնարկությունների լայն ցանցի ստեղծման ու զարգացման, կենցաղի ծառայության և հասարակական սննդի կազմակերպման ու կատարելագործման, երեխայի ծննդյան նպաստներ վճարելու, բազմազավակ ընտանիքներին նպաստներ և արտոնություններ տալու, ինչպես նաև ընտանիքին տրամադրվող նպաստների և օգնության այլ տեսակների միջոցով»։

Սոցիալիստական հեղափոխության հաղթանակի առաջին իսկ օրից մոր և մանկան հարատև խնամատարությունը նոր հասարակության բարոյական նորմն է դարձել։

Կ. Ցետկինի հետ ունեցած զրույցում Լենինը շեշտել է, որ մարդկանց ամուսնաընտանեկան հարաբերությունների ոլորտում պրոլետարական հեղափոխությանը համահունչ հեղափոխություն է սկսվում։ Սովետական ընտանիքի կազմավորման շրջանում իսկ, նոր մարդու երկունքի և առհասարակ նոր կյանքի վերելքի տարիներին, լուրջ տարաձայնություններ դրսևորվեցին սիրո, ամուսնաընտանեկան հարաբերությունների գոյավորման ու զարգացման հարցերի շուրջ։ Ուշադրության արժանի է այն իրողությունը, որ քսանական թվականների վիճաբանություններին մասնակցում էին Ա. Լունաչարսկին, Ն. Կրուպսկայան, Ն. Սեմաշկոն, Ե. Յարոսլավսկին, Ա. Կոլոնտայը և ուրիշներ։ Վերջինիս տեսակետով սերը «մի բաժակ ջուր է», որը խմելուց հետո բաժակի կարիքը չկա։ Իսկ Լենինը դա համարելով հակաբարոյական, դատապարտեց, ասելով. երբ սիրո մեջ երկուսն են մասնակցում, ապա ծնվում է երրորդը՝ նոր կյանքը։ Այստեղ թաքնված են հասարակական շահը և անհատի պարտքը հասարակության հանդեպ։

Լենինը միաժամանակ անհրաժեշտ է համարել հիշատակել, որ այսպես կոչված, ազատ սիրո թեորիան «ոչ նոր է, և ոչ կոմունիստական... այդ տեսությունը, որպես «սրտի էմանսիպացիա», մոտավորապես անցյալ դարի կեսին արծարծվում էր գեղարվեստական գրականության մեջ։ Բուրժուական պրակտիկայում այն վերածվեց մարմնի էմանսիպացիայի (ընդգծումը մերն է— Ա. Ա.)։ Այդ ժամանակ քարոզն առավել տաղանդավոր էր,

քան հիմա...» (տե՛ս Կ. Ցետկինի հետ ունեցած զրույցի մեր հիշատակած աղբյուրը)։

Ո՛չ աբեղա, ո՛չ Դոն-Ժուան, բայց և ոչ քաղքենի։ Առողջ մարմնում՝ առողջ հոգի, եզրակացրել է Լենինը։ Հոգեկան ու ֆիզիկական եռանդի այնպիսի կիրառում ու զարգացում, որպեսզի հաջողությամբ պսակվի կոմունիզմի կառուցման վեհ գործը։ Այսպես պատգամեց նա։

Ահա թե ինչու հեղափոխական պրոլետարիատը հաստատուն քայլերով ընթացավ իր անմահ առաջնորդի ուղիով և մեկընդմիշտ հաղթանակեց նաև ամուսնաընտանեկան կյանքի մարզում։ Սովետական ընտանիքն իր ավելի քան կեսդարյա պատմությամբ ապացուցեց, որ եղել ու մնում է ամենաբարոյական մենամուսնական հաստատությունը։

Արձագանքելով քսանական թվականների՝ սիրո վերաբերյալ բանավեճերին, Ա. Լունաչարսկին գրել է. «Սերը կյանքի մեծ զարդն է... և մենք գիտենք, որ մարդկությունը, ազատագրվելով աշխատանքի կեղեքումից և ստրկությունից, գորշ ու պարզունակ չի դառնա, ընդհակառակը, սեռական սիրուց երջանկության և վայելքների այնպիսի գլուխ-գործոցներ կստեղծի, որոնց մասին նախորդ սերնդի կանայք և այրերը չեն էլ երազել։ Այրերն ու կանայք ապագայում սիրո վիթխարի պոեմ կստեղծեն։ Բայց նրանք դա կանեն լիակատար հավասարության, խորագույն ընկերության սկզբունքների հիման վրա» (А. В. Луначарский. Мораль с марксистской точки зрения. Харьков, 1925, стр. 49)։

Սովետական ընտանիքի հսկայական վերընթացի էությունը ոչ այլ ինչ է, եթե ոչ նոր մարդու, սովետական հանրության նոր, արժանի անձնավորության լինելության՝ որքան հակասալի, նույնքան արգասալի պրոցես։ Թևակոխելով իր զարգացման արդի, հասուն սոցիալիզմի փուլը, մեր ամուսնաընտանեկան հաստատությունը սոցիալ-տնտեսական, կուլտուրական վիթխարի պրոգրեսի շնորհիվ փոփոխություններ է կրել։ Հակիրճ ասած, սովետական քաղաքացիների հոգևոր վերելքը բավականին արագ թափով ձերբազատում է մարդկանց վայրենական դարաշրջանի բիրտությունից կամ, ինչպես Էնգելսն է նկատել, նրբանում է մարդկանց սերը, հարստանում, բյուրեղանում։

Կուսակցության XXV համագումարում Լ. Ի. Բրեժնևը, խորապես վերլուծելով հասուն սոցիալիզմի պատմական վիթխարի հասումները, եզրակացրեց. «Մենք ստեղծել ենք նոր հասարակարգ, մի այնպիսի հասարակարգ, որի նմանը մարդկությունը դեռ չէր իմացել։ Դա անճգնաժամ, մշտապես աճող էկոնոմիկայի, սոցիալիստական հասուն հարաբերությունների, իսկական ազատության հասարակարգ է։ Դա մի հասարակարգ է, որտեղ տիրապետում է գիտական մատերիալիստական աշխարհայացքը։ Դա մի հասարակարգ է, որն անսասանորեն վստահ է ապագայի, կոմունիստական լուսավոր հեռանկարներին։ Մեր առջև բաց են հետագա համակողմանի պրոգրեսի անծայրածիր հեռաստաններ» (Լենինյան կուրսով, հ. 5, էջ 729)։

Հիրավի, նոր հասարակարգի կերտման բոլոր մարզերում անգնահատելի են սովետական ընտանիքի անձնուրաց մաքառումների հիանալի արդյունքները։ Միլիոնավոր, տասնյակ և հարյուր միլիոնավոր կորովի լենինյաններ նոր կյանքի ստեղծման ու պաշտպանության վեհ գործերով ապացուցեցին սովետական ամուսնաընտանեկան հաստատության լիակատար կենսունակությունը, կոմունիզմի կառուցման կուսակցության ծրագրին հավատարմությունը։ Նրանք բոլորն էլ դաստիարակվել ու կոփվել են մեր նորոգ ընտանիքում, որի առջև ծառացած արդի որոշ դժվարությունները բնավ սոցիալիզմին չեն առնչվում։ Դրանք հաղթահարելի են և անպայման կհաղթահարվեն մոտ ապագայում։

Կուսակցության XXV համագումարի ամբիոնից, Լ. Ի. Բրեժնևը, բարձր գնահատելով սովետական մարդկանց սխրանքները, շեշտեց. «Ոչ մի բան այնպես չի վեհացնում անհատին, ինչպես ակտիվ դիրքը կյանքում, գիտակցական վերաբերմունքը հասարակական պարտքի նկատմամբ, երբ խոսքի ու գործի միասնությունը դառնում է վարքագծի ամենօրյա նորմ։ Այդպիսի դիրքի մշակումը բարոյական դաստիարակության խնդիրն է» (Նույն տեղը, էջ 713)։



Մարդկանց գաղափարական, քաղաքական ու բարոյական դաստիարակության խնդրի ճիշտ լուծումը պահանջում է հետևողական և անզիջում պայքար մղել սոցիալիստական համակեցության նորմերը խախտողների դեմ։ Այս դեպքում անհրաժեշտ է, որ մեր պայքարի թիրախը լինեն սոցիալիստական բարոյականության նորմերին ներհակ՝ ընչաքաղցությունը, մասնավոր սեփականատիրական միտումները, խուլիգանությունը, բյուրոկրատիզմը և անտարբերությունը մարդկանց նկատմամբ։ Հետևաբար, Լ. Ի. Բրեժնևի այս ցուցումը հար և ամենուր պետք է գործադրվի մեր բոլոր ընտանիքներում, ուր նոր մարդու գաղափարական, քաղաքական դաստիարակության հոգսը շարունակում է մնալ պայքարի առաջին պլանի վրա։ Մենք համոզված ենք, որ ինչպես մինչև հիմա, նմանապես և հետայսու, սովետական հայրերն ու մայրերը լիովին կարդարացնեն կուսակցության ու սովետական կառավարության ակնկալությունները մատաղ սերնդի կոմունիստական դաստիարակման ոլորտում ևս։

ՍՄԿԿ Կենտկոմի նոր որոշումը՝ գաղափարական և քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին, մեզ պարտավորեցնում է գիտական ավելի բարձր մակարդակով սովետական նոր մարդուն դաստիարակել գաղափարայնության և սովետական հայրենիքին նվիրվածության, աշխատանքի ու հանրային սեփականության նկատմամբ կոմունիստական ոգով, բուրժուական հայացքների ու բարքերի վերապրուկների դեմ հետևողական մաքառելու ոգով, սովետական մարդկանց հոգևոր կուլտուրայի հարստացման և համակողմանի ու ներդաշնակ զարգացման, ինտերնացիոնալիզմի ոգով։ Այս ասպարեզում անգնահատելի է մեր ընտանիքի խոշորագույն դերը։

## ՎԱՐԱՐ ՍԻՐՈ ՀՈՐՁԱՆՈՒՏՈՒՄ

Հանրահայտ է, որ մեծ Հոկտեմբերից ցայսօր ՍՍՀՄ-ը վիթխարի սոցիալ-տնտեսական, կուլտուրական առաջընթաց է ունեցել՝ հեղափոխելով կենցաղը։ Կանանց գլխովին ներգրավումը արտադրության ու սոցիալ-կուլտուրական կյանքի բոլոր ոլորտները, ուր աշխատող բանվոր-ծառայողների ավելի քան կեսը կանայք են, էապես փոխեցին ներընտանեկան հարաբերությունները։

Սակայն, գիտնականները համերաշխ պնդում են, որ վերջին երկու տասնամյակներում ամուսնաընտանեկան հաստատությունն իր վերելքի ճանապարհին ունի և խոչընդոտներ։

Սովետական ընտանեկան կյանքը հետազոտողները նշում են, որ վերջին 10—15 տարում ներընտանեկան և արտաընտանեկան բախումներն ու տարաձայնությունները կրկնվելու միտում ունեն։ Ակներևաբար իջել է մանկածնության կորագիծը։ Իսկ ընտանիքի տնտեսական ֆունկցիան անէանում է։ Մինչ կենցաղային սպասարկման վիճակը դեռ բավարար չէ։

Հեռացույցի, ռադիոյի, մագնիտոֆոնի, լվացքի մեքենայի, փոշեծծիչի, էլեկտրական մի շարք գործիքների տնային գործածումը շատ բան է փոխել ընտանեկան կյանքում։ Այս ամենի շնորհիվ ամուսինների միջև կատարվել է տնային աշխատանքի ներտնային ու արտատնային հոգսերի նոր բաժանում։ Չեն վերջանում դպրոցի ու ծնողների վեճերը պատանիների բարոյական, էսթետիկական, սեռական դաստիարակության հարցերի վերաբերյալ։ Ծնողների ու դպրոցի հսկողությունը սովորողների վրա արտաուսումնական պահերին որոշ տեղերում ինքնահոսի է մատնված։ Դպրոցի ու ծնողների հեղինակությունը պատանիների համար այսօր հաճախ թեական է։ Այս իրողության էական շարժառիթը մասամբ այն է, որ հարազատ զավակների նկատմամբ որոշ ծնողներ, ցավոք, անպարտաճանաչ են և դրսևորում են հակամանկավարժական, ոչ բարոյական, էգոիստական վարքագիծ։ Որոշ ծնողներ զավակներին սեր չեն պատվաստում հանրօգուտ աշխատանքի նկատմամբ, թուլացրել են երբեմնի հսկողությունը։

Այս և մի շարք այլ դրդապատճառներով փոխվել է ամուսնաընտանեկան հաստատության մթնոլորտը, բազմաթիվ երիտասարդներ ամուսնանում են առանց սիրելու։ Բաժանվում են դյուրությամբ, առանց խոր ապրումների։ Այս ամենը դիպուկ է բնորոշել անվանի հոգեբան Վ. Ջացեպինը, գրելով. մեր կյան-

քի տեմպերն այժմ արագանում են, ամենուր շտապում ենք, կորցրած րոպեների պատճառով նյարդայնանում, միմյանց հետ ավելի շատ ենք բախվում և հաճախ չենք նկատում մեր իսկ շրջապատի մարդկանց։ Այժմ ավելի շատ կարոտ ենք սրտաբաց զրույցի, միմյանց հյուր չենք գնում։ Միմյանց վիրավորելու առիթներ ավելի շատ ենք ունենում, քան վշտացած պահերին՝ սփոփելու։ Մարդկանց հոգեկանի լարվածության բարձրացումն առավել արժույթալի է դարձրել հազվադեպ քնքշագին խոսքը, բարյացակամ հայացքը, զգացմունքի ջերմությունը, հոգեբանական բարենպաստ մթնոլորտը, մարդկանց հոգեկան անդորրը և նրանց փոխհարաբերությունները գերազանցապես մերձավոր մարդոց միջև։

Այս առթիվ նրբանկատ գիտնականը հորդորում է՝ ավելի ուշադիր լինել կնոջ և այրի, ամուսնու և տիկնոջ, սիրո և ամուսնության բազում առեղծվածների նկատմամբ, որոնք գոյացել են վերջին տարիներին (տե՛ս В. Зацепин. О жизни супружеской, М., 1978, стр. 4)։

Խնդիրն այն է, որ սիրո և ամուսնաընտանեկան կյանքի ոլորտներում դրսևորվող անցանկալի երևույթներին մարդիկ նայում են իբրև անհատների անձնական գործի։ Ցավոք, այդպես են վարվում շատերն այն մարդկանցից, ովքեր իրենց կոչման բերումով քաղաքացիներ են կրթում ու դաստիարակում։ Սովորական «անտարբերությունն» այդ բնագավառում հղի է լուրջ վտանգներով։

Մինչդեռ Կ. Մարքսը ժամանակին նշել է. Անհատը հասարակական էակ է։ Ուստի, նրա կյանքի յուրաքանչյուր երևույթ, նույնիսկ եթե այն չի դրսևորվում կոլեկտիվության անմիջական ձևով, որը լինում է մյուսների կյանքի երևույթների հետ մեկտեղ՝ հասարական կյանքի դրսևորումն ու հաստատումն է (տե՛ս К. Маркс и Ф. Энгельс. Из ранних произведений. М., 1956, стр. 590)։

Հետևաբար, վերոբերյալ երևույթները գերազանցապես պայմանավորված են ո՛չ միայն մեր հասարակական անմիջական օբյեկտիվ կեցությամբ, այլև մարդկանց հոգեբանությամբ, անցյալից ժառանգած ավանդույթներով ու սովորույթներով, ընտանեկան դաստիարակությամբ՝ անհատների սուբյեկտիվ էությամբ։ Ավա՜ղ, ընտանեկան օջախում հնի հետքերը երկար են մնում։ Անշուշտ, իրավ է սոցիոլոգ Ա. Գ. Խարչևը, ասելով՝ ամուսինների շատ ընդհարումներ ու կռիվներ, որ վերջանում են ամուսնալուծությամբ, ոչ թե զգացմունքների խոր փոփոխությունների հետևանք են, այլ՝ ավելի շուտ անկուլտ վարքագծի, անչափ գրգռվածության և այն պրակտիկայի, երբ չեն կարողանում ճիշտ վարքագիծ կիրառել նոր պայմաններում (տե՛ս А. Г. Харчев. О путях дальнейшего укрепления семьи в СССР. М., 1965, стр. 166)։

Այժմ արդեն անվիճելի է, որ երբեմնի «մեծ ընտանիքը» վերածվել է փոքր ընտանիքի։ ՍՍՀՄ-ի կանայք իրենց կրթական մակարդակով առաջին տեղն են գրավում աշխարհում։ Արտադրության ու կենցաղի ոլորտներում նրանց աշխատանքի բնույթը հետզհետե ստեղծագործական է դառնում։ Երկրի գյուղատնտեսների, զոոտեխնիկների, անասնաբույժների 40, տնտեսագետների 64, բժիշկների 72, մանկավարժների, գրադարանավարների, կուլտուրայի աշխատողների 69 տոկոսը կանայք են։ Երկրի գիտաշխատողների 30 տոկոսը, գիտության թեկնածուների՝ 27, դոկտորների՝ 13 տոկոսը կանայք են։

Ներքոհիշյալ աղյուսակը ցույց է տալիս, թե տարբեր գոյավիճակներում եղած ամուսիններն ինչպես են վերաբերվում պրոֆեսոր Ն. Յուրկևիչի առաջադրած այն հարցին, թե ամուսնության ամրության վրա ազդո՞ւմ է կին-մոր աշխատանքը. նրանք պատասխանել են.

| Ամուսնություններ | Բավարարված են աշխատանքով (տոկոսներով) | | |
|---|---|---|---|
| | լիովին | մասամբ | բացակայում է |
| Երջանիկները | 55,55 | 44,82 | 16,00 |
| Բավարարվածները | 26,39 | 30,60 | 36,00 |
| Անհաջողակները | 10,65 | 14,38 | 28,00 |
| Պատասխան չկա | 9,41 | 10,20 | 20,00 |



Բնորոշն այն է, որ անհաջողակ ամուսինների 25,24 տոկոսն է համանություն տվել կանանց այն միտումին, որ եթե ցանկանում են, թող չաշխատեն։ Իսկ կանայք՝ բավարարվածներն ու անբավարարվածները, մեծ մասամբ նշել են. «ո՛չ, պետք է աշխատենք» (տե՛ս З. А. Янкова, В. С. Языкова. XX век и проблемы семьи. М., 1974, стр. 16)։

«Ո՞րն է տնային տնտեսության անհրաժեշտության պատճառը». հարցվող մի խումբ ամուսինների 82 տոկոսը պատասխանել է՝ կենցաղային հարմարություններ ստեղծել և ընտանեկան օջախ, ժամանց ունենալ և այդպիսով ամրապնդել ընտանիքը (տե՛ս նույն տեղը, էջ 19)։ Սա երբեք չի խանգարի կենցաղի ու արտադրաոլորտների մերձեցմանը, որով և վերջնականապես կինը կձերբազատվի տնային բթացնող հոգսերից։

Սովետական գիտնականները վերջին տարիներին մեծ թվով գիտահետազոտական ուսումնասիրություններ են հրապարակել՝ նվիրված ամուսնաընտանեկան հաստատության գոյավիճակին։ Նրանք կոնկրետ հետազոտություններից այն համոզմանն են եկել, որ երկրի ինդուստրիայի և ուրբանիզացիայի արագ զարգացման շնորհիվ փոփոխություններ կան և ընտանեկան կյանքում։

Հասուն սոցիալիզմի՝ մեր ժամանակաշրջանի սովետական ընտանիքը մենամուսնության առավել զարգացած փուլն է նշանավորում ողջ աշխարհում։ Այսուհանդերձ, ընտանիքի պրոգրեսի դիալեկտիկան մեզանում տակավին զերծ չէ էական հակասություններից։ Ամուսնալուծությունների կորագծի բարձրացումը, մանկածնության երբեմնի աճի ակնբախ նվազումը փաստ է. աշխատող կնոջ կուլտուրական զարգացման համար նախապայմանները երկու անգամ նվազ են տղամարդկանց ռեալ նախապայմաններից, կանանց միջին աշխատավարձը տակավին ցածր է տղամարդկանց աշխատավարձից, որովհետև բարձրավճար պաշտոններում կանանց թիվն անհամեմատ նվազ է։

Տնային աշխատանքի ու մանուկների խնամքի և դաստիարակության ասպարեզում ամուսնու բաժինը աննշան է։ Բնակարանների պակասությունն ու եղածների մի մասի կենցաղային հարմարանքների չգոյությունը զգալի է, թեև, միայն անցած հինգ տարիներում ՍՍՀՄ 54 միլիոն մարդ նոր բնակարաններ են ստացել ու բարելավել եղածը։ Կենցաղային ծառայությունը 4,3 անգամից ավելի է աճել։ Միայն մանկամսուրներում և մանկապարտեզներում ընդգրկված են 13 միլիոն մանուկներ։ Այս մարզի մեր հասումները վերջին տարիներին անհամեմատ ավելի ակնբախ են, բայց և այնպես, անելիքները էս տակավին շատ են։ Էական է իգական և արական սեռերի թվական զգալի անհամամասնությունը. միայնակ մայրերի, հոծ թվով ամուրի կանանց և այրերի առկայությունը։ Ճիշտ է, վերջին տարիներին նվազել է արտամուսնական զավակների թիվը, բայց և այնպես 1970 թ. ՍՍՀՄ-ում թերի ընտանիքները (միայն մայր՝ զավակներով, միայն հայր՝ զավակներով) կազմել են եղած ընտանիքների 14,8 տոկոսը։

Հարկ է ասել, որ մեր ապրած դարաշրջանում էական փոփոխություններ են կատարվել նաև բուրժուական երկրների ընտանիքում։ Օրինակ, ըստ ամերիկյան սոցիոլոգ Թ. Քրիստենսենի, արդի ընտանիքին բնորոշ են «կանանց ազատագրական շարժումը» և, այսպես կոչված՝ «սեռական հեղափոխությունը»։ Նրա հայեցակետով այժմ կարճատև են նախամուսնական սիրահետումները, սովորական են դառնում նախամուսնական հարաբերությունները, որոնք և օրինականացվում են։ Դանիայում տղամարդկանց 94,8, իսկ կանանց՝ 95,1 տոկոսը, Շվեդիայում համապատասխանաբար՝ 78,2, 71,2, ԱՄՆ-ի հարավում և առանձին շրջաններում՝ 74,2, 62,4, Տայվանում՝ 18,9, 5,5 տոկոսը ապրում են նախամուսնական սեռական կյանքով (տե՛ս З. А. Янкова, В. С. Языкова. XX век и проблемы семьи, стр. 58)։

Վերջերս լույս տեսած գրքերում կան հետևյալ տվյալները մեր օրերում կատարված ամուսնալուծությունների վերաբերյալ։ Յուրաքանչյուր 10 հազար բնակչին ընկնում է. ԱՄՆ-ում (1975 թ.)՝ 48, Շվեդիայում՝ 31,1, ՍՍՀՄ-ում (1976)՝ 24, Դանիայում՝ 26, ԳԴՀ-ում (1975)՝ 24,7, Անգլիայում և Ուելսում (1973)՝ 21,4, Հունգարիայում (1975)՝ 24,6, ՉՍՍՀ-ում՝ 21,8, Կանադայում (1974)՝ 20, Հարավսլավիայում (1975)՝ 11,8, Բուլղարիայում՝ 12,7, Լեհաստա-

նում (1974)՝ 12,2, ԳՖՀ-ում (1975)՝ 17,3, Ավստրիայում (1975)՝ 14,2, Ռումինիայում (1975)՝ 16,3, Ֆրանսիայում՝ 9,5 ամուսնալուծություն (տե՛ս Мы остаемся вместе, М., 1977, стр. 23)։

Միայն այս թվերը համոզիչ եզրահանգումների հիմք չեն կարող լինել, մանավանդ որ կապիտալիստական երկրներում լուծարվող ամուսնություններն աննշան մասն են կազմում փաստորեն փլուզվող ամուսնությունների։

Որո՞նք են ամուսնալուծման էական շարժառիթները։ Մեր հետազոտողների մեծ մասը մատնանշում է հետևյալները՝ ընդհանուր հայացքների, հետաքրքրասիրությունների, շահերի բացակայություն. դավանանքային տարաձայնություններ. բնավորությունների անհամապատասխանություն (անհամատեղելիություն). ամուսնական հավատարմության խախտում. սիրո զգացմունքի չգոյություն կամ մարում. մեկ ուրիշին սիրելը. թեթևամտություն ամուսնական պարտականությունների հանդեպ. վատ հարաբերություններ ծնողների նկատմամբ (ծնողների և այլ բարեկամների միջամտություն). հարբեցողություն (ալկոհոլիզմ). ծեծ, դաժանություն, կռվտուք. բնակարանային նորմալ պայմանների բացակայություն. ամլություն (չբերություն). զավակներ ունենալու չկամություն. կողմերից մեկի հիվանդություն. ամուսնու երեք և ավելի տարով ազատազրկման դատապարտվածություն. օբյեկտիվ պատճառներով երկարատև անջատ կյանք. ուրիշից սերած զավակներ. մեկ այլ ընտանիքի առկայություն (տե՛ս А. Г. Харчев, М. С. Мацковский. Современная семья и ее проблемы, М., 1978, стр. 141—142)։

Ի դեպ, ԳԴՀ գիտնականները հիշատակում են նաև ամուսնալուծման հետևյալ շարժառիթները՝ տարաձայնություններ մանուկների դաստիարակման բնագավառում, վեճեր տնային տնտեսության վարման եղանակի, աշխատանքային և հասարակական գործունեությանը մասնակցելու վերաբերյալ. հակահասարակական վարքագծի առկայություն. նյութական (ֆինանսական) դժվարություններ և այլն։ Սխալված չենք լինի, եթե ավելացնենք, որ ամուսինների բաժանման շարժառիթներ են մնում պոռնաբունությունը, մարդուն ֆիզիկապես և հոգեպես խորտակող արատները, ժառանգական հիվանդությունները, քաղքենիական վարքագիծը և ծայրահեղ եսամոլությունը։

Մեր ամուսնալուծությունների թվարկված շարժառիթների մեծ մասը տակավին արմատներ ունեն անցյալի բարքերում և նիստ ու կացում։ Դրա համար Լենինը քանիցս շեշտել է, թե սովորույթի ուժը, դրա սոցիալ-հոգեբանական արմատների անէացման նպատակով մղվող պայքարը և՛ տևական է, և՛ դըժվարին։

Սովետական ընտանիքը դեռևս լիովին զերծ չէ անցյալի ամուսնաընտանեկան վարք ու բարքի հետքերից, սեռերի անհավասարության պրակտիկայից։ Անհերքելի է, որ կինը քաղաքում (տանը) շաբաթական 40 ժամ ամուսնուց ավելի է աշխատում, իսկ գյուղում՝ 55 ժամ։ Արդյոք այս իրողությունը չի՞ խանգարում կնոջը՝ հասարակական կյանքում համաքայլ ընթանալու ամուսնու հետ, զբաղվելու ինքնակրթությամբ, բարձրացնելու պրոֆեսիոնալ մակարդակը։ Իհարկե, այո՛։

Միանգամայն իրավացի էր Ա. Գերցենը, երբ ասում էր իր համախոհներին. նորը հարկավոր է ստեղծել ճակատի քրտինքով, մինչ հինը շարունակում է գոյատևել՝ ամուր հենվելով սովորույթի հենացույցերին։ Չէ՞ որ մեզ մոտ ամուսնալուծությունների 21,5 տոկոսը հարբեցողության հետևանք է։

Վերջին քսանհինգ տարում ամուսնալուծությունը ՍՍՀՄ-ում ավելացել է յոթ անգամ։ Միայն 1967 թ. ՍՍՀՄ-ում կատարվել է 646.300 ամուսնություն, բայց նույն տարում 353.700 տղամարդ և 212.900 կին երկրորդ անգամ են ամուսնացել։

## ՆԵՐՀԱԿ ԳՈՐԾՈՆՆԵՐԻ ՄԻԱՍՆՈՒԹՅՈՒՆ

Ինչպես տեսնում ենք, ընտանիքը ներհակ գործոնների միասնություն է, որը կյանքում հաճախ մեր սպասածից ավելի բարդ է։ Այլ կերպ, ինչպե՞ս հասկանալ, երբ մեկ տարվա համատեղ ապրողների բաժանության տոկոսը հասնում



է 4,3-ի։ Արդյոք սրանք այն երիտասարդները չե՞ն, ովքեր հարցման ժամանակ պատասխանում են, թե ամուսնացել են սիրելով, սակայն իրականում (լավագույն դեպքում) լոկ հրապուրված են եղել կամ իրենց տարիքով, գիտելիքներով, կենսափորձով տակավին չեն հասել ընտրելու մակարդակին։ Նրանց թելադրել է աքսելերացիան և վայելքի տենչը։

Կարծում ենք, որ վերը վկայակոչված ամուսնալուծման շարժառիթները կամ պատճառները բավականին լույս են սփռում վարարած սիրո հորձանուտի ափերը քանդող ալեբախումների վրա։ Օրինակ, Լենինգրադում հարցված 350 հոգուց սիրով են ամուսնացել՝ 39,1 տղամարդ և 49,6 կին, իսկ հայացքների ու հետաքրքրասիրությունների (շահերի) ընդհանրությամբ ամուսնացել են՝ 26,1 տղամարդ, 28,5 կին։ Այս թվերը հուշում են, որ հարցման մեթոդում կա ինչ-որ անհասկանալի բան, որովհետև իրականում սիրո նկատառումը հարցվողների կեսից ավելին է արտահայտում։ Բացառված չէ, որ հարցվողներից ոմանք չեն հասկանում հարցը։

Քանի որ ամուսնալուծությունների շարժառիթներն այժմ գրեթե անվիճելի են, փորձենք հասկանալ դրանք ըստ իրենց կարևորության ու ֆունկցիայի։ Կանխավ շեշտենք, որ սիրո էության երկակիության կնիքը՝ բնախոսական և սոցիալական, այդ միասնության հոգևոր, բանական ու էմոցիոնալ բաղադրամասերը շաղկապված են անքակտելի, իսկ ոմանց համար՝ անմատչելի, հակասալի ներդաշնակությամբ։ Իրականում մեր քաղաքացիները լավատես են և համոզված, որ հետզհետե բարոյական արժույթներն իրենց գերակշիռ տեղը կգրավեն նոր մարդու սիրո հարաբերություններում։

Միանգամայն ճիշտ է Վ. Ջացեպինը, երբ շեշտում է, որ մեր օրերում խոշոր փոփոխություններ են կատարվել ամուսնական կյանքի բոլոր բնագավառներում առհասարակ և հոգեկան ոլորտում՝ առանձնապես։ Ուստի, այս պրոբլեմի հետազոտությունը լիակատար չի լինի, քանի դեռ չեն բացահայտված սիրո հոգեբանության բոլոր ծալքերի ելևէջները։ Չէ՞ որ սիրո աշխարհի բոլոր պրոցեսները մեր ուղեղն է վարում։

Հիրավի, ինչո՞ւ շատերը սիրազուրկ են, ինչո՞ւ ոմանք անսեր ամուսնություն են կնքում... Մեզ հայտնի է, որ այժմյան մարդու հոգեկան աշխարհը շատ է տարբերվում անցյալի մարդու ներքնաշխարհից։ Շատ տարբեր են և մարդկանց սոցիալ-հոգեբանական խառնվածքները։ Արևմուտքի որոշ գիտնականներ հակամետ են խորհելու, որ արդի ընտանիքն անհետանալու է իր ֆիզիկական և հոգևոր տևական կապերով հանդերձ։ Սեռերի կապերը, իբր, կլինեն պատահական, անցողիկ, բարեկամական և որ էական է՝ ներանձնային, հեռու հանրային միջամտությունից, գուշակում են այդ հոռետեսները։

Սովետական մեր ապրելակերպը և ընտանեկան հաստատության վերընթացը վկայում են, որ ընտանեկան կյանքի կայունացումը պահանջում է ժամանակ և այսօրվա ու վաղվա ամուսինների սիստեմատիկ ու համակողմանի կանխապատրաստում։ Եթե կուզեք, իդեալական սերը մեծ կուլտուրա է պահանջում։

Ամուսնաընտանեկան պրոբլեմով զբաղված սովետական գիտնականները միահամուռ շեշտում են, որ անհրաժեշտ է նոր սերնդին օժտել ընտանեկան կյանքին անհրաժեշտ գիտելիքներով, հարստացնել նրանց բարոյաէսթետիկական աշխարհը։

Ամուսնությամբ զույգերը մտնում են կյանքի երկրորդ փուլը, ուր իբրև այգեպաններ կոչված են քրտնաթոր աշխատանքով սերնդագործության ամենաքաղցր պտուղներն աճեցնելու և մարդկային ստեղծագործության վեհիմաստ հաճույքը ճաշակելու։ Մի հաճույք, որը կվայելեն ամուսնական կյանքի խորիմացությամբ, որոշ հակասությունների և մերթ՝ արգելքների հաղթահարմամբ։ Ամուսիններն են դարբնում սեփական երջանկությունը՝ ըմբոշխնելով նորի արարչագործական հմայքը։

Մենամուսնական ընտանիքը սովետական մարդու, նրա անհատական ունակությունների կատարելագործման խոշորագույն առաջընթաց է, որտեղ երկու անձնավորություններ շարունակում են հասարակական կենդանու մարդկայնացման հազարամյակների պրոցեսը։ Ժամանակին Ֆ. Էնգելսը գրել է. քանի

որ մարդը գոյավորվել է կենդանական աշխարհից, պարզ է, որ նա երբեք լիովին չի ձերբազերծվի անասնական տարրերից. մշտապես խոսք կարող է լինել միայն քանակային զանազանությունների՝ անասնականության կամ մարդկայնության աստիճանի վերաբերյալ (տե՛ս К. Маркс и Ф. Энгельс. Соч., т. XIV, стр. 201): Հետևաբար, ամուսնանալով, երիտասարդները փաստորեն ստանձնում են բարեփոխել իրենց ներքին բնությունը, դուրս մղել անասնականը, ստեղծել մարդկային այն էակը, որը լինի մարդկայինի ու բնականի զմայլիչ հարմոնիայի մարմնացումը, ջանա երջանկանալ, իր նմաններին երջանկացնելով հանդերձ: Ամուսնությունը երեկվա «օտարների» այսօրվա ջերմագույն ու տևական բարեկամությունն է՝ սիրով համաձուլված:

Տակավին Մարքսն է ասել, որ մարդկային փորձը, իբրև ամենաերջանիկի, մեծարում է նրան, ով երջանկություն է բերել ավելի շատ մարդկանց: Կոմունիստական հումանիզմի այս ոգով հարկավոր է տոգորել այսօրվա մանուկներին՝ վաղվա ամուսիններին: Եթե կամենում ենք Ն. Քուչակի, Սայաթ-Նովայի, Խ. Աբովյանի «անշեջ հուրը» հարատև բոցավառել ու առավել հուժկու բորբոքել, պարտավոր ենք մատաղ սերնդին ներարկել մարդկային սիրո ավիշը, որը կհրավառվի ամուսնական-բարեկամական համատեղ կյանքում: Սակայն կյանքը թելադրում է աճող սերնդի դաստիարակությունը վարել պատանիների ու երիտասարդների տարիքային յուրահատկությունների ստույգ հաշվառմամբ: Նոր մարդը կոչված է երջանիկ ընտանիք կազմելու, ուր կյանքն ընթանա ֆիզիկական, բանական, բարոյական ու էսթետիկական կարողությունների ներդաշնակ գործադրմամբ՝ հանուն նոր հասարակության երջանկության հաստատման: Բնական պահանջների բավարարումը բանական է, որը, սակայն, կարիք ունի գիտության խորհրդին, որպեսզի սերը, մանուկների դաստիարակությունը խորապես գոհացնեն ո՛չ միայն ծնողներին, այլև հասարակությանը: Ընտանիքի ամրապնդման բախտը մեծ մասամբ ամուսիններից է կախված, որոնք պետք է սիրել սովորեն, հարգել սովորեն, փոխըմբռնում սովորեն, միմյանց հանդուրժել և օգնել սովորեն:

Սեռական տգիտությունը, սեռի ու սիրո վայելքի անգիտացումը ընտանիքի խարխլման լուրջ դրդապատճառներ են: Հիշենք, որ արդի ընտանիքում անհամեմատ մեծացել է բարոյական, էմոցիոնալ և էսթետիկական արժույթների դերը, նվազել տնտեսական գործոնի նշանակությունը: Սիրո ներկա փուլը հուշում է սիրողներին խուլ չլինել ժամանակի կոչի հանդեպ, որը համառորեն և հար պահանջում է՝ սերը խարսխել ո՛չ միայն ֆիզիկական մերձավորության, այլև գաղափարների ներդաշնակության, հոգեհարազատության, մարդկային բարեկամության վրա:

Ուրախալի է, որ մեր արդի երիտասարդությունը հոգևոր գործոնին ավելի մեծ նշանակություն է տալիս, քան անցյալում: Սա, անշուշտ, էական առաջխաղացում է: Սոցիոլոգ Ս. Գոլոդը գտնում է, որ կարևորը ո՛չ միայն զարգացած հոգևոր հետաքրքրասիրություններ ունենալն է, գրականության իմացումը, երաժշտությամբ հետաքրքրվելը, այլև իր հոգևոր արժույթները շփումների ընթացքում կիրառելը, դրանք փոխհարաբերությունների հիմք, խարիսխ դարձնելը: Այստեղ տեղին է շեշտել, որ սերն ի վերուստ շնորհված պարգև չէ, որը բոլորին հավասարապես է տրվում և որին պետք է սպասել ձեռքերը ծալած: Սերն ստեղծագործություն է: Հարկավոր է սիրել կամենալ: Ուրեմն, հարկավոր է ինքն իրեն դաստիարակել բացսրտության ոգով, աշխարհին վստահելու ոգով, բայց միաժամանակ սուտը ճշմարտությունից զանազանելու կարողությամբ (տե՛ս Духовное становление человека, Л., 1972, стр. 137—138):

Սովետական երիտասարդությանն ուսուցելով սիրո բանական վայելքի մարդարժան արվեստը, մենք պետք է զգուշացնենք, որպեսզի սերը չաստվածացվի, չգերագնահատվի ու կյանքի նպատակ չհամարվի: Սերն իրեն երկնքին— մարդուն, օժտելով բերկրանքի հուժկու և վառ երանությամբ, կոչված է գեղեցկացնելու միլիոնավոր աշխատավորների ստեղծարար առօրյան, որպեսզի մարդկային ողջ կյանքը լիովին ու մեկընդմիշտ մարդկայնանա, անսահման գեղեցկանա ու իդեալներով հարստանա: Մեր օրերի մարդուն միայն սերը բավական չէ, որովհետև նա ունի վսեմ գաղափարներ ու իդեալներ, բազում ստեղծարար մղումներ ու երազներ, ողջ մարդկությանը կոմունիզմի ամենաարդար ոգով մկրտելու անչափ անելիքներ:



Ամուսնության պատրաստվող և արդեն ամուսնացած սովետական երիտասարդները պետք է լավ իմանան, որ սերը ո՛չ միայն դյութող է, այլև բարոյապես պարտավորեցնող, որպեսզի ընտանիքը մնա իր հեղինակության բարձունքին: Դա նշանակում է, որ ամուսինները պետք է շարունակեն սովետական ընտանիքի պրոգրեսիվ ավանդույթները, աճեցնեն ու դաստիարակեն այնպիսի քաղաքացիներ, որոնք իրենց աշխատասիրությամբ, կոմունիստական գաղափարայնությամբ, ձեռներեցությամբ ու անձնվիրությամբ միշտ լինեն առաջավորներ:

Լավագույն հաճույքը, կյանքի խնդությունն այն է,— ասել է Մ. Գորկին,— երբ զգում ես, որ մարդկանց հարկավոր ես ու մոտիկ: Ուրեմն, ձգտենք նոր սերնդի դաստիարակության այս պահանջն իրոք գործի վերածել: Մեր մեծ հայրենիքի սխրալի պատմությամբ ապացուցվել է, որ միայն նորոգ կյանքի լիակատար ստեղծմամբ կծլարձակի ու ամենուր կպտղաբերի սիրո արևաշող այգեստանը: Թող երիտասարդները հաստատ գիտենան, որ մանուկների առկայությունն ընտանիքում, իրոք, մարդկայնացնում է ծնողներին ևս: Զավակների դերը ընտանեկան կլիմայի ն անհրաժեշտ է, առողջարար:

Այս առնչությամբ հիշենք սիրո մեծ գիտակ Անրի Բեյլի (Ստենդալ) ուսանելի խորհուրդը՝ սերը որքան շատ է լի ֆիզիկական բովանդակությամբ, այնքան ավելի անկայուն է: Ուստի, ընտանիքի ամրապնդման նպաստավոր գործոնը չափավորությունն է: Զափի շեքսպիրյան դիալեկտիկան այսպիսին է.

...Լավ գիտեմ, թե ժամանակից է ծնվում սերը,
Եվ ես տեսնում եմ, թե ժամանակը շատ փորձերի մեջ,
Մեղմում է նրա կրակն ու բոցը.
Այո՛, և սիրո բուն իսկ բոցի մեջ, ինչ-որ պատրույգ կա,
Որ մասամբ նրան նվազեցնում է.
Եվ ոչինչ չկա, որ լավության մեջ անփոփոխ մնա:
Այդ լավությունը երբ որ հասնում է շատ առատության՝
Մեռնում է շնորհիվ հենց իր շատության:

Հրապուրվելով սիրո կախարդանքով, չմոռանանք նույն Շեքսպիրի խորիմաստ մի այլ սահմանումը. սերը «ամենքից խելոք մի խենթություն է, բայց խեղդող լեղի ու կենարար մի անուշություն»: Այս կենարար անուշությունը կճաշակի նա, ով կառաջնորդվի խելքով, այլ ոչ միայն զգացմունքով: Դրա փայլուն վկայությունը 38-ամյա Մարքսի՝ կնոջը գրած նամակից քաղված հետևյալ տողերն են.

...Դու ամբողջապես կենդանի իմ առջևում ես, ես քեզ կրում եմ իմ ձեռքերին, ոտից գլուխ քեզ ծածկում եմ համբույրներով, ծնրադրելով քո առջև թառանչում եմ: Ես քեզ սիրում եմ, madame: Այո՛, քեզ սիրում եմ ավելի ուժգին, քան երբևիցե Վենետիկի մավրն է սիրել: ...ժամանակավոր անջատումն օգտակար է, քանզի մշտական շփումը միապաղաղության խաբկանք է հարուցում, որի դեպքում անհետանում են իրերի տարբերությունները: Նույնիսկ աշտարակները, որոնք այնքան էլ բարձր չեն, մոտիկ են թվում, մինչդեռ առօրյա կյանքի մանրուքները, երբ նրանց մերձենում ես մոտիկից, անհավանական չափով մեծանում են: Այդպես են և կրքերը: Առտնին սովորույթները, որոնք մոտիկության պատճառով մարդուն լիովին գերում են և կրքի ձև են ընդունում, դադարում են լինելուց, միայն երբ տեսադաշտից անհետանում է դրանց անմիջական օբյեկտը: Խոր կրքերը, որոնք իրենց օբյեկտի մոտիկության հետևանքով առօրյա սովորույթների ձև են ընդունում, հասակ են առնում և անջատման կախարդիչ ազդեցության ներքո վերստին օժտվում են իրենց հատուկ ուժով: Այդպես է նաև իմ սերը: Բանվական է, որ տարածությունը մեզ բաժանի, և ես անմիջապես համոզվեմ, որ ժամանակն իմ սիրո համար ծառայեց լոկ այնպես, ինչպես արևն ու անձրևն են ծառայում բույսի աճման համար:

Անվիճելի է, որ աշխարհում շատ կանայք կան և նրանցից մի քանիսը գեղե-

ցիկ են։ Բայց ես որտեղի՞ց գտնեմ այն դեմքը, որի յուրաքանչյուր դիմագիծը նույնիսկ ամեն մի կնճիռն իմ հոգում ամենաուժգին հիշողություններ հարուցեին։ Անգամ իմ անվերջ տառապանքները, իմ անփոխարինելի կորուստը* կարդում եմ քո անուշիկ դեմքին, և ես հաղթահարում եմ այդ տառապանքը, երբ համբույրներով եմ ծածկում քո թանկագին դեմքը։ «Նորա գրկում թաղվածը, հարյած նորա համբույրներով»,— քո իսկ գրկում և քո համբույրներով (տե՛ս К. Маркс и Ф. Энгельс. Соч., т. 29, стр. 432—436)։

Մարքսի ասածից ավելի քան հարյուր քսան տարի անց, նրա համախոհ, սովետական հոգեբանը գրում է. Գիտությունն ուսուցում է, որ աշխարհում յուրաքանչյուր մարդու համար կա ոչ թե մի մարդ, ոչ թե մի «կես», այլ մարդկանց մեկ տիպ, որից նա ընտրում է իրեն հետ հաղորդակցվելու կենակից՝ ամուսնական կյանքի համար։ Եվ անհրաժեշտ է գտնել այն մարդուն, որը հասարակական, հոգեկան և ֆիզիկական առումով ամենից ավելի է համապատասխանում նրա իդեալին։ Մենք կարծում ենք, որ այժմ տակավին բոլոր մարդիկ օժտված չեն սիրունակությամբ։ Ապագայում այդ բարդ իմացությունը գիտությունը կմեկնի մարդկանց։

Այժմ մեզ հայտնի է, որ մարդկանց ուղեղի բջիջները հոգնելով՝ պարբերաբար դադար, նինջ են պահանջում։ Գերբեռնվածությունը քայքայում է այդ բջիջները, երբ խանգարվում է դրանց քնի ու արթնության նո՛րմալ, ռիթմիկ հաջորդականությունը։ Ըստ հոգեբան Վ. Զացեպինի, գիտությունը հաստատում է մարդկանց էմոցիոնալ հարաբերությունների պարբերականության առկայությունը։ Ամուսինների կյանքում ևս էմոցիոնալ ջերմությունը պարբերաբար տեղի է տալիս անտարբերության, սառնության և անգամ միմյանց հանդեպ բացասական վարվեցողության։ «Մարդը հոգնում է ամեն բանից, նույնիսկ սիրելուց»,— գրել է Անդրե Մորուան։ Ինչպես մեզ ձանձրացնում է նույն սնունդը, մեղեդին, հագուստը, զբաղմունքը, այդպես և հոգնում ենք մեր կնոջից կամ ամուսնուց։ Հագեցումը պահանջում է դադար, էմոցիոնալ նինջ. սա բնական է, անհրաժեշտ, մինչև հանգիստը վերականգնի հոգնած բջիջների կենսունակությունը, հաղթահարի նյարդերի հյուծվածությունը։ Ամուսինների ժամանակավոր սառնությունը մշտապես չի կարելի համարել լոկ վնասակար գործոն, այլ անհրաժեշտություն, որը թեև բախումներ է հարուցում ամուսինների միջև, բայց և որոշ ժամանակ անց ձանձրույթը հանգում է վայելքի փոխերջանիկ ձգտումին։

Հետևաբար, ասում է Զացեպինը, անհրաժեշտ է, որ ամուսինները Զագսմտնեն՝ բեռնված հոգևոր հարուստ օժիտով, այսինքն՝ գիտենան սիրո արվեստը, թոթափեն երեսպաշտության դարավոր բեռը, սովորեն ժամանակին և ճիշտ ճանաչել կենակցի արժանիքները, թերությունները, ամուսնության ընթացքում մեղվաջանությամբ կուտակել սիրո նեկտարը՝ կատարյալ մարդու հոգևոր աշխարհի անփոխարինելի գանձերը (տե՛ս В. Зацепин. О жизни супружеской, М., 1978, стр. 91—92)։

Սովետական ընտանիքի հուսալի գոյատևման նախապայմանը երկուսի բուռն սիրո և բարեկամության զգացումն է։ Ով կամենում է տևական սեր վայելել, պարտավոր է իր հոգուց դուրս վանել սիրո այրվող կրակի մոխիրը, հիշելով, որ սերը ներողամիտ է, բարի, հանդուրժող և մշտապես բարյացակամ, առանց նյութական հաշվենկատության։

Սովետական ընտանիքի ամրապնդման ու զարգացման շահերը թելադրում են մեզ՝ անհապաղ ուսումնասիրել Մոսկվայի, Լենինգրադի, Ռիգայի, Վիլնյուսի, Տալինի, Ռոստովի, Տագանրոգի վերջին տարիներում կազմակերպած ամուսնական ծառայության հույժ օգտակար փորձը և դա կիրառել մեր հանրապետությունում ևս։ Այս գործում բավականին ուշացել ենք։

* Խոսքը Մարքսի միակ տղայի՝ Էդգարի մահվան մասին է (հեղ.)։

# ՈՒԺԵՂԱՆՈՒՄ Է ԿԱՊԻՏԱԼԻ ԴԵՄ ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ՊԱՅՔԱՐԸ

**Ս. Ա. ԱԲՐԱՀԱՄՅԱՆ**

ԱՐԴԻ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԲԱՆՎՈՐԱԿԱՆ շարժման, դասակարգային պայքարի կարևորագույն ձևերից է գործադուլը, որը պրոլետարիատն օգտագործում է ո՛չ միայն իր սոցիալ-տնտեսական դրությունը կապիտալի ոտնձգություններից պաշտպանելու, այլև մոնոպոլիաների իշխանության դեմ ակտիվ պայքար ծավալելու համար։ Ընկ. Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXV համագումարում ասաց. «Գործադուլային պայքարը, որին մասնակցում են աշխատավոր բնակչության ամենատարբեր խավերը, վերջին տասնամյակներում հասել է ամենաբարձր մակարդակին։ Մեծացել են բանվոր դասակարգի ուժն ու հեղինակությունը, բարձրացել է նրա՝ որպես ավանգարդի դերը աշխատավորների շահերի, ազգի իսկական շահերի համար մղվող պայքարում» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 42)։

Գործադուլը կապիտալիզմի արտադրահարաբերությունների անբաժանելի ուղեկիցն է, վարձու աշխատանքի և կապիտալի առճակատման դրսևորումը։ Չնայած գործադուլի դերը հիմնականում բանվոր դասակարգի տնտեսական շահերի պաշտպանությունն է, սակայն այն բովանդակում է գաղափարախոսական ու քաղաքական պայքարի տարրեր։ Գործադուլային պայքարը չի կարելի անջատել զանազան մասսայական դեմոկրատական շարժումներից։ Պրոլետարիատի գործադուլային պայքարի հմուտ զուգակցումը տնտեսական ու քաղաքական բնույթի ելույթների այլ ձևերի՝ «բողոքի օրերի», «բողոքի շաբաթների», միտինգների, ցույցերի հետ, զգալիորեն բարձրացնում են դրա արդյունավետությունը։

Գործադուլների աճը, դասակարգային պայքարի բարձրարդյունավետությունը հերքում են բուրժուական պրոպագանդայի այն պնդումը, թե, իբր, տնտեսապես զարգացած կապիտալիստական երկրներում դասակարգային պայքարն աստիճանաբար մարում է։ Կապիտալիստական աշխարհում գործադուլային շարժման դինամիկայի բացարձակ ցուցանիշները վկայում են, որ երկրորդ համաշխարհային պատերազմից հետո անընդհատ աճում է գործադուլների, գործադուլավորների և գործադուլային մարդ-օրերի թիվը (Социально-экономические аспекты развития забастовочного движения. М., 1978, стр. 9)։

| | 1950 թ. | 1960 թ. | 1975 թ. |
|---|---|---|---|
| Բոլոր երկրները | | | |
| գործադուլների թիվը | 12.990 | 14.035 | 32.004 |
| գործադուլավորների թիվը (հազ.) | 9.788 | 8.813 | 12.025 |
| գործադուլային մարդ-օրերի թիվը (հազ.) | 77.648 | 36.693 | 94.667 |
| Բարձր զարգացած երկրները* | | | |
| գործադուլների թիվը | 10.994 | 12.332 | 24.370 |
| գործադուլավորների թիվը (հազ.) | 8.980 | 8.044 | 9.624 |
| գործադուլային մարդ-օրերի թիվը (հազ.) | 69.912 | 35.489 | 88.264 |

* ԱՄՆ-ը, ԳՖՀ-ն, Ճապոնիան, Ֆրանսիան, Անգլիան, Իտալիան, Կանադան, Հոլանդիան, Բելգիան, Լյուքսեմբուրգը, Շվեդիան, Շվեյցարիան։

Ինչպես երևում է աղյուսակից, կապիտալիստական աշխարհի գործադուլային շարժման կենտրոնում շարունակում են մնալ տնտեսապես բարձր զարգացած երկրները։ Ամբողջ կապիտալիստական աշխարհի գործադուլավորների մեջ նրանց բաժինը, չնայած 1960 թ. փոքր-ինչ կրճատվել էր 1950 թ. համեմատությամբ, բայց, այնուամենայնիվ, 70-ական թվականների առաջին կեսին գերազանցում էր 80 տոկոսով։

Կապիտալիզմի վեց գլխավոր երկրների գործադուլային շարժման մեջ, ըստ գործադուլավորների ընդհանուր թվի, հետպատերազմյան տարիներին միշտ առաջին տեղում է եղել Իտալիան, որն առաջ էր անցնում նույնիսկ ԱՄՆ-ից՝ շատ ավելի մեծ ինքնագործ բնակչությամբ երկրից։ Բացի Իտալիայից, այդ ցուցանիշի ակնհայտ աճը բնորոշ է նաև Ճապոնիային և Անգլիային։ Հաշվումները ցույց են տալիս, որ զարգացած կապիտալիզմի բոլոր երկրներում բանվոր դասակարգի ընդհանուր թվում գործադուլավորների տեսակարար կշիռը մեծանում է։ Այսպես, օրինակ, եթե 1950 թ. այն կազմում էր 7,4 տոկոս, ապա 1974 թ. հասավ 9,3 տոկոսի։ Նշված ժամանակաշրջանում գործադուլային պայքարում աշխատավորության ընդգրկման կտրուկ աճ է նկատվում Անգլիայում, որտեղ այն 1,7 տոկոսից հասել է 7,8-ի, և Իտալիայում՝ 31,5-ից հասել է 56 տոկոսի։

60-ական թվականների վերջը և 70-ական թվականների սկիզբը նշանավորվեց աշխատավորական մասսաների սոցիալական բողոքի զգալի ուժեղացմամբ, բանվորական ու համադեմոկրատական հակաիմպերիալիստական շարժման ակտիվացմամբ, գործադուլային պայքարի արտակարգ հուժկու թափով։ Սոցիալական խոշորագույն մարտերը, որ ընդգրկել էին կապիտալիստական արևմուտքի տարբեր երկրներ, առանձնապես մեծ լարվածության հասան Իտալիայում։ Բավական է նշել, որ 1969 թ. աշնանը, 1970-ի գարնանը, բանվոր դասակարգի ղեկավարությամբ, կապիտալի դեմ մղված պայքարում միաժամանակ ընդգրկվել էր շուրջ 20 մլն աշխատավոր, այսինքն՝ ամբողջ աշխատավոր բնակչությունը։ Ֆրանսիայում 70-ական թվականների սկզբին ծավալված գործադուլային շարժման թափը ցուցադրումն էր այն բանի, որ աշխատավորները հաստատ մտադիր են ո՛չ միայն պաշտպանել 1968 թվականի մայիս—հունիսյան համազգային գործադուլի շնորհիվ ձեռք բերված նվաճումները, այլև բարելավել իրենց դրությունը։ Աշխատանքային կոնֆլիկտների, աշխատանքային օրերի թվով 70-ական թվականների ելույթները կարելի է համեմատել միայն հետպատերազմյան առաջին տարիների հետ։

Եթե 1959—1968 թթ. Արևմտյան Գերմանիայում, միջին հաշվով, տարեկան գործադուլ է արել 52,7 հազար մարդ, ապա 1969—1971 թթ. գործադուլավորների միջին տարեկան թիվն արդեն կազմում էր ավելի քան 300 հազար մարդ։ Այլ կերպ ասած, երեք տարում գործադուլներին մասնակցել է շուրջ մեկ մլն մարդ, այսինքն՝ ավելի շատ, քան անցած ամբողջ տասնամյակում։ Խիստ աճել է գործադուլային մարդ-օրերի թիվը։ Միայն 1971 թվականին գործադուլի հետևանքով կորցրած մարդ-օրերի թիվը հասավ 4,5 մլն-ի։ Համեմատության համար նշենք այն փաստը, որ 1955-ից մինչև 1967 թվականները, այսինքն՝ 13 տարում այդ թիվը կազմում էր 1,6 մլն։

Գործադուլային ակտիվության սիստեմատիկ ուժեղացման միտում է նկատվում նաև ԱՄՆ-ում։ 1974 թ. գործադուլների, գործադուլավորների և գործադուլային մարդ-օրերի թիվը վերջին քսանհինգ տարում հասավ ռեկորդային չափերի։ Ճապոնիայում գրեթե յուրաքանչյուր հինգ տարում կրկնապատկվում է գործադուլների թիվը։ Այստեղ աճը զգալիորեն գերազանցում է վարձու աշխատանքի բանակի մեծացմանը, իսկ ելույթները հետզհետե ավելի են սրվում։ Սրա լավագույն վկայությունն է ճապոնական աշխատավորության 1974 թ. աննախադեպ գործադուլը, որի գագաթնակետը հանդիսացավ «գարնանային հարձակումը» (մոտավորապես 8 մլն մասնակից)։ 70-ական թվականների սկզբին դասակարգային պայքարը լարվածության բարձրագույն աստիճանի հասավ կապիտալիզմի ամենահին երկրում՝ Մեծ Բրիտանիայում։ 1970-ից մինչև 1974 թվականը գործադուլային մարդ-օրերի թիվը տարեկան միջին հաշվով հասնում էր 14 մլն-ի, նախորդ տասը տարվա 4 մլն-ի դիմաց։ Խոշորագույն կոնֆլիկտներից մեծ մասի պատճառը երկրի ձեռնարկատերերի հարձակումն էր աշխա-



տավորների կենսամակարդակի, արհմիութենական իրավունքների վրա։

Եթե անցյալում պետությունը փորձում էր քողարկված գործել, ապա 70-ական թվականներին նա սկսեց ուղղակիորեն միջամտել վարձու աշխատանքի և կապիտալի փոխհարաբերություններին։ Կապիտալի և բուրժուական պետության միավորված ուժեր՝ ահա սրանք են այժմ պրոլետարիատի դասակարգային հակառակորդները։ Սոցիալական հարաբերությունների, մասնավորապես, աշխատավարձի կարգավորման և արդյունաբերության մեջ հարաբերությունների կարգավորման հարցերում պետական միջամտության ընդլայնումը օբյեկտիվորեն հանգեցնում է այն բանին, որ բանվորական շարժման մեջ կազմակերպված ձևով դրսևորվում է ո՛չ միայն տնտեսական, այլև քաղաքական պայքարը։

1970 թ. հունիսին իշխանության գլուխ անցած կոնսերվատիվ կառավարությունն անմիջապես փորձեց ձախողել գործադուլային ուժգնացող շարժումը, գործադրելով «Արդյունաբերության մեջ հարաբերությունների մասին» հակաբանվորական օրենքը, որը, ամերիկյան Տաֆտ-Հարտլիի օրենքի նման, սահմանում էր 60-օրյա «սառեցնող» ժամանակաշրջան և հարկադրական բվեարկություն՝ գործադուլի անցկացման հարցը լուծելու համար, մի բան, որը ձեռնարկատերերին հնարավորություն էր ընձեռում ձախողելու այդ որոշումները։ Արհմիությունների գործունեությունը վերահսկում էին հատուկ ստեղծված դատական մարմինները։ Օրենքի 150 հոդվածներից որևէ մեկի խախտման համար նախատեսվում էին խոշոր տուգանքներ կամ բանտարկություն։ Ինչպես նշել է Մեծ Բրիտանիայի կոմունիստական կուսակցությունը, «Արդյունաբերության մեջ հարաբերությունների մասին» օրենքը հարձակում էր ո՛չ միայն արհմիությունների և նրանց մարտական աշխատողների դեմ։ Դրա նպատակն էր նաև անգլիական ժողովրդին իր մի քանի անքակտելի դեմոկրատական իրավունքներից (խոսքի և կարծիք հայտնելու ազատություն, ժողովների ազատություն և իրենց կարծիքը պաշտպանելու կազմակերպության ազատություն, բանվորի ազատությունը՝ ճնշում գործադրելու իր ձեռնարկատերերի վրա գործադուլների կամ ցանկացած այլ միջոցներով) զրկելը։ Երկրի արհմիութենական առաջատար կենտրոնի՝ տրեդյունիոնների բրիտանական կոնգրեսի և լեյբորիստական կուսակցության ղեկավարությունը, չնայած հանդես եկավ այդ օրենքի դեմ, սակայն համարձակություն չունեցավ դուրս գալու իր սովորական օպորտունիստական տակտիկայի շրջանակներից։ Այդ իսկ պատճառով հատկապես մեծ նշանակություն ունեցավ, ինչպես և նախորդ տարիներին, բանվոր դասակարգի առաջավոր ավանգարդի՝ Մեծ Բրիտանիայի կոմունիստական կուսակցության պրոպագանդիստական և կազմակերպական վիթխարի աշխատանքը։ Հակաարհմիութենական օրենսդրության դեմ մղված պայքարում պրոլետարիատին համախմբելու խնդիրն ստանձնեց կոմունիստական կուսակցությունը, աշխատավորներին կողմնորոշելով դեպի գործադուլային լայն պայքարի անցկացումը։

1970 թ. վերջին, 1971 թ. առաջին ամիսներին տեղի ունեցան քաղաքական մի շարք գործադուլներ «Արդյունաբերության մեջ հարաբերությունների մասին» օրենքի դեմ։ Այդ ելույթների «գագաթնակետային» օրերը (1970 թ. դեկտեմբերի 18-ը, 1971 թ. հունվարի 12-ը, մարտի 1-ը և 18-ը), որ կրեցին «գործողության օրեր» անունը, վկայում էին, որ Բրիտանիայի աշխատավորության լայն խավերը հաղորդակից են եղել հակաիմպերիալիստական պայքարի բարձրագույն ձևերին։

Գործադուլային ելույթների ճնշման ներքո հիմնազուրկ եղան գործադուլ անելու իրավունքը սահմանափակելու միջոցով բանվորական կազմակերպությունների մարտունակությունը թուլացնելու ակտի գլխավոր նպատակային դրույթները։ Հակաբանվորական օրենքի գործողության առաջին իսկ փուլում աննախադեպ ծավալվեցին գործադուլային գոտեմարտերը։ Չնայած գործադուլավորների պահանջների մեծ մասն իր ձևակերպմամբ տնտեսական բնույթ էր կրում, բայց երկաթուղայինների, շինարարների, դոկերների գործադուլներն ունեին հստակ արտահայտված քաղաքական ենթատեքստ, դրանք իրենց օբյեկտիվ բնույթով քաղաքական ելույթներ էին։ Բանվորական շարժումը բացահայտորեն հակադրվում էր կոնսերվատորների բուրժուաիրավական նորմերի

ողջ կոմպլեքսին, հետևաբար և, որպես այդպիսին, նրանց քաղաքական կուրսին։ 1972 թ. հանքագործների յոթ շաբաթ տևած համազգային գործադուլի հաջող ավարտից հետո (նրանց աշխատավարձը բարձրացավ այնպիսի չափով, որը երեք անգամ գերազանցում էր սահմանված լիմիտը) ակնհայտ դարձավ, որ ոչ մի օրենսդրություն չի կարող կոտրել գործադուլավորների ո՛չ բարձր մարտական ոգին, ո՛չ էլ համառությունը։ ՍՍՀՄ արհմիությունների XV համագումարում արտասանած ճառում Լ. Ի. Բրեժնևը նշեց, որ անգլիական հանքագործների գործադուլն արտացոլումն էր այն տենդենցների դրսևորման, որոնք վկայում են, թե «տնտեսական պայքարը վերաճում է պետական-մոնոպոլիստական տիրապետության ամբողջ սիստեմի դեմ ուղղված ելույթների» (Լենինյան կուրսով, հ. 3, էջ 657)։

Ի վիճակի չլինելով կանխել գործադուլային շարժումը, Է. Խիթի կոնսերվատիվ կառավարությունը, հակառակ իր նախընտրական խոստումների, 1972 թվականի նոյեմբերից վարեց հարկադրական «եկամուտների քաղաքականությունը», որը նշանակում էր սահմանել նոմինալ աշխատավարձի բարձրացման համազգային կոնկրետ նորմաներ, նպատակ ունենալով կասեցնել աշխատավարձի բարձրացման տեմպերը, որի սկզբը դրվել էր հանքագործների գործադուլի հաղթանակով։ Կազմակերպված բանվորական շարժումը, որի ավանգարդում ընթանում էին կոմունիստները, անգլիական պրոլետարիատին կոչ արեց դիմել մասսայական ելույթների, ընդհուպ մինչև համընդհանուր գործադուլը, որպեսզի ստիպեն կառավարությանը հրաժարվել «եկամուտների քաղաքականությունից» կամ հրաժարական տալ։

Չսպասելով տրեդյունիոնների բրիտանական կոնգրեսի գլխավոր խորհրդի որոշմանը, 1973 թ. փետրվար-մարտին գազի աշխատողները, հիվանդանոցների օժանդակ անձնակազմը, մունիցիպալիտետների աշխատողները և, երկրի պատմության մեջ առաջին անգամ, պետական ապարատի ծառայողները «եկամուտների քաղաքականության» դեմ բողոքի գործադուլ հայտարարեցին։ 1973 թ. փետրվարի վերջին գործադուլավորների թիվը հասավ 750 հազար մարդու։ Արհմիութենական մասսաների ճնշման ներքո լեյբորիստական կուսակցությունը և տրեդյունիոնների բրիտանական կոնգրեսի գլխավոր խորհուրդը հավանություն տվեցին կոմունիստների առաջարկությանը՝ Մայիսի 1-ը դարձնել կոնսերվատիվ կառավարության հակաբանվորական քաղաքականության դեմ ուղղված համազգային բողոքի օր։ Կոմունիստական կուսակցության և արհմիությունների ձախ ղեկավարների ակտիվ աշխատանքի շնորհիվ 1973 թվականի մայիսի 1-ին փողոց դուրս եկան միլիոնավոր աշխատավորներ։ Հիսուն տարում առաջին անգամ արհմիությունները, տրեդյունիոնների բրիտանական կոնգրեսի համաձայնությամբ, պաշտոնապես Մայիսի 1-ը նշեցին որպես բանվորական օր։

Սակայն, չնայած այս ահեղ ահազանգերին, կոնսերվատիվ կառավարությունը չվերանայեց բանվորական շարժման նկատմամբ իր առճակատման քաղաքականությունը, այլ շարունակեց իր նախկին դաժան կուրսը։ 1973 թվականի վերջին կապիտալիստական աշխարհում սկսված տնտեսական ճգնաժամը, որն ուղեկցվում էր աննախընթաց ինֆլյացիայով և գործազրկությամբ, հանգեցրեց աշխատավորական լայն մասսաների կենսամակարդակի զգալի նվազեցման։ Նման պայմաններում անխուսափելի էր կառավարության նոր բախումը կազմակերպված բանվորական շարժման հետ։ Երկրի պատմության մեջ առաջին անգամ գործադուլը ծառայեց որպես մինիստրների կաբինետի անկման անմիջական առիթ։ Այդպիսի գործադուլ էր 1974 թ. սկզբին հանքափորների ելույթը։

Կոնֆլիկտն իր բովանդակությամբ քաղաքական ընդհարում էր։ Կառավարությունն ընդունեց արտակարգ դրության օրենք, որը բանակին ու ոստիկանությանը լիազորում էր զենք գործադրել «խռովարարների» դեմ։ Կոնսերվատորները հույս ունեին, որ եթե կոտրեն հանքագործների դիմադրությունը, ապա իրենց կհաջողվի վերահսկել արհմիութենական շարժումը։ Ժամկետից շուտ, «Ո՞վ է կառավարում Բրիտանիան՝ պառլամե՞նտը, թե արհմիությունները» լոզունգի ներքո հայտարարելով ընտրություններ, կոնսերվատորները հույս ունեին հակակոմունիստական կատաղի պրոպագանդայի ծավալմամբ հաղ-



թանակ տանել և, այդպիսով, ձեռք բերել իրենց հակաբանվորական քաղաքականությունը շարունակելու մանդատ։ Սակայն կառավարությունը բացահայտորեն գերագնահատեց իր հնարավորությունները։ Բնակչության միահամուռ աջակցությունը հանքափորների գործադուլին, առաջատար տրեդյունիոնների համերաշխությունը և բուն գործադուլավորների տոկունությունն ապահովեցին նրանց հաղթանակը և կոնսերվատիվ կառավարության պարտությունը։ Իշխանության գլուխ անցած լեյբորիստական կառավարությունն ընտրությունների ժամանակ հանդես եկավ այնպիսի լոզունգներով, որոնցից շատերը արտացոլում էին կուսակցության ներսում ձախ թևի և արհմիութենական առաջադիմական լիդերների հարաճուն ազդեցությունը։ 1973 թվականին ընդունած «Բրիտանիայի համար ծրագրում», որն ընկած էր իրենց ընտրական փաստաթղթերի հիմքում, լեյբորիստները հռչակեցին, որ իրենց նպատակն է «արմատական և անդառնալի փոփոխություն կատարել ուժերի հարաբերակցության ու հարստության բաշխման մեջ հօգուտ աշխատավորների ու նրանց ընտանիքի անդամների և ստեղծել այնպիսի դրություն, որ իշխանությունը լիովին հաշվետու լինի հասարակությանը, բանվորներին և սպառողներին»։ Հանքագործների գործադուլը ակնառու ապացուցեց, որ արհմիություններն ունեն պայքարի մեծ ուժ, և լեյբորիստական նոր կառավարությանն ստիպեց կենսագործել բանվոր դասակարգի համար անհրաժեշտ սոցիալական միջոցառումներ։ Դրանցից ամենակարևորը «Արդյունաբերության մեջ հարաբերությունների մասին» ռեակցիոն ակտի վերացումն էր։

1974 թվականի փետրվարին և հոկտեմբերին կայացած ընտրություններում կոնսերվատորների կառավարության պարտությունից հետո լեյբորիստները «եկամուտների քաղաքականության» փոխարեն անցան, այսպես կոչված, սոցիալական պայմանագրին, որը նախատեսում էր, առաջին հերթին, արհմիությունների կողմից աշխատավարձի բարձրացման չափերի կամավոր սահմանափակում։ Լեյբորիստների՝ իշխանության գլուխ անցնելն ամենևին էլ չհանգեցրեց «դասակարգային հաշտության»։ 1974 թվականին, նույնիսկ առանց հանքագործների գործադուլի էլ, մյուս գործադուլների, դրանց մասնակիցների և գործադուլային մարդ-օրերի թիվն ավելի մեծ էր, քան 1973 թ., երբ իշխանության գլուխ կանգնած էին կոնսերվատորները։ «Սոցիալական պայմանագրի» սկզբունքների իրականացման փորձը ցույց տվեց նրա կողմնակիցների այն փաստարկների սնանկությունը, թե, իբր, ինֆլյացիայի գլխավոր պատճառը աշխատավարձի աճն է։ Ինչպես 1977, այնպես էլ 1978 թվականին մի կողմից գների աճն առաջվա պես գերազանցում էր աշխատավարձի բարձրացմանը, իսկ մյուս կողմից՝ է՛լ ավելի աճեցին խոշոր կորպորացիաների եկամուտները։ Այնուհանդերձ, խոշոր մոնոպոլիաները կրճատեցին էկոնոմիկայում կապիտալ ներդրումները, դրանք հասցնելով 60-ական թվականների կեսերի մակարդակին, և ոչ մի միջոց չձեռնարկեցին նոր աշխատատեղեր ստեղծելու համար։ Հենց սրանով է բացատրվում այն փաստը, որ «սոցիալական պայմանագրի» գործողության ժամկետները երկարաձգելու կառավարության փորձերը հանդիպում են աշխատավորների հարաճուն դժգոհությանը։ Այսպես, օրինակ, 1977 թ. երկրում տեղի է ունեցել 2.627 գործադուլ, 1976 թ. 2.016-ի դիմաց, իսկ դրանց մասնակիցների թիվն աճել է ավելի քան երկու անգամ, հասնելով 1,143 հազար մարդու։ Այդ գործադուլների հետևանքով միայն 1977 թ. մարդ-օրերի թիվը հասավ 10 մլն-ի, 1976 թվականի 3,3 մլն-ի փոխարեն (տե՛ս Международный ежегодник, М., Политиздат, 1978 г., стр. 143)։

Կապիտալիստական երկրներում բանվորական շարժման արդի փուլի առանձնահատկությունն այն է, որ նոր տենդենցներն արտահայտվում են աշխատավորների տնտեսական ու քաղաքական պայքարի միաձուլման, բնակչության ավելի լայն շրջաններն ու տարբեր խավերը գործադուլային պայքարում ներգրավելու, հակաիմպերիալիստական ավելի լայն ճակատի ստեղծման, պայքարը մինչև հաղթական ավարտ հասցնելու վճռականության մեջ։ 1977 թ. նոյեմբերից 1978 թ. հունվարը Անգլիայի պատմության մեջ առաջին անգամ տեղի ունեցավ հրշեջների 35 հազարանոց համազգային գործադուլը։

1979 թ. գրեթե ամբողջ հունվարին գործադուլ էր անում երկրի ծանր բեռնատար ավտոմեքենաների շուրջ 10 հազար վարորդ։ Այդ գործադուլն իր մասշ-

*[illegible]ով, հետևողականությամբ ու վճռականությամբ նման էր հանքագործների գործադուլին։ Հենց նրանց անզիջում գործողություններն էլ ձեռնարկատերերին ստիպեցին բավարարել վարորդների արդարացի պահանջը՝ նրանց աշխատավարձը համապատասխանեցնել ինֆլյացիայի աճին։ Չնայած անգլիական բուրժուազիայի այս և այլ զիջումներին, երկիրն առաջվա պես բռնկված է իրենց չափերով աննախադեպ գործադուլային շարժումներով։ 1979 թ. հունվար-փետրվարին կարճատև գործադուլ արեցին քաղաքային տնտեսության 1,5 մլն աշխատողներ, շինարարներ, աղբատարներ, դպրոցների, հիվանդանոցների տեխնիկական անձնակազմը, ջրամատակարարման աշխատողներ, ինչպես նաև դոկերներ և աշխատավորության ցածր վարձատրվող այլ կատեգորիաներ, որոնք պահանջում էին բարձրացնել աշխատավարձը և բարելավել աշխատանքի պայմանները։*

*Աշխատավորության շահերի համար հաստատակամ պայքար է մղում Մեծ Բրիտանիայի կոմունիստական կուսակցությունը։ Մեծ Բրիտանիայի կոմկուսի XXXV համագումարը (1978 թ. նոյեմբերի 12—15-ը), ընդունելով «Բրիտանիայի ուղին դեպի սոցիալիզմ» ծրագրի նոր տարբերակը, դատապարտեց աշխատավորության սոցիալական կարիքներին հատկացվող ծախսերի կրճատումը և ռազմական հատկացումների մեծացումը։ Համագումարը պահանջեց ուժեղացնել պայքարը ռասիզմի և ֆաշիզմի դեմ, առաջին պլան մղեց խաղաղության համար պայքարի խնդիրը, ողջունեց սոցիալիզմի երկրների և հատկապես Սովետական Միության ներդրումը բովանդակ աշխարհում խաղաղության պահպանման գործում։*

*Տարակույս չկա, որ կապիտալի երկրներում բանվոր դասակարգի պայքարի ուժեղացումը իր սոցիալ-տնտեսական իրավունքների համար, գաղութային սիստեմի խայտառակ անկումը և ազգային-ազատագրական շարժման ուժեղացումը, սոցիալիզմի համաշխարհային սիստեմի ձևավորումն ու ամրապնդումը որպես արդի հեղափոխական պրոցեսի վճռական գործոն— այս ամենը ուժերի հարաբերակցության մեջ հանգեցրել են արմատական փոփոխության հօգուտ սոցիալիզմի, խորտակիչ հարված հասցրել իմպերիալիզմին, լիովին հաստատել լենինյան այն դրույթները, թե իմպերիալիզմը նեխող և պարազիտային կապիտալիզմ է, որն աշխատավորությանը հասցնում է պրոլետարական հեղափոխության նախադռանը։ Սակայն այս ամենը «չի նշանակում, թե զարգացած կապիտալիզմի երկրների բանվոր դասակարգը, բոլոր աշխատավորները այժմ իրենց հանդեպ ունեն ավելի պակաս ահեղ հակառակորդ, քան կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի նախորդ երկու փուլերում (տե՛ս* «Коммунисты западной Европы в борьбе за единый фронт пролетариата», М., изд. «Наука», 1977 г., стр. 329*)։ Այն բոլոր պնդումները, թե իբր իմպերիալիզմն այժմ թղթե վագր է, ինչպես հայտարարում են մաոականները, անլուրջ են և հետևանք ավանտյուրիստական քաղաքականության։ Անշուշտ, հարստության և իշխանության կենտրոնացումը պետական մոնոպոլիստական հիմքի վրա, զարգացած կապիտալիստական երկրներում ռազմական պոտենցիալի և քաղաքական կազմակերպվածության աճը, նրանց էկոնոմիկայի ինտեգրացիայի խորացումը, արդի գիտատեխնիկական հեղափոխության նվաճումների օգտագործումը, մասսաների գաղափարախոսական մշակման ձևերի բազարկումը— այս ամենը մոնոպոլիստական բուրժուազիային հնարավորություն են ընձեռել զարգացած կապիտալիստական երկրներում ստեղծել իրենց դասակարգային տիրապետությունը պահպանելու և ամրապնդելու զենքեր։*

*Արդի իմպերիալիզմի միավորված ուժերը հաղթահարելու համար անհրաժեշտ է կազմավորել շատ ավելի լայն հակաիմպերիալիստական բլոկ՝ կապիտալիստական հասարակության այն բոլոր խավերի հետ բանվոր դասակարգի դաշինքի ձևով, որոնք շահագործվում ու կեղեքվում են տիրապետող մոնոպոլիստական բուրժուազիայի կողմից։ Հակաիմպերիալիստական բոլոր ուժերի համախմբման այս համաշխարհային պատմական խնդիրը պրոլետարիատը կարող է կատարել առաջին հերթին բուն բանվոր դասակարգի շարքերում պառակտումը հաղթահարելու ճանապարհով։*

*Մարքսիստ-լենինյանները, հիմնովին ժխտելով գիտական կոմունիզմի և սոցիալ-դեմոկրատների ռեֆորմիզմի գաղափարախոսական մերձեցման հնարավորությունը, միաժամանակ վճռական նշանակություն են տալիս բանվոր դասակարգի միասնությանը, արտահայտվում սոցիալիստների, սոցիալ-դեմոկրատների հետ համագործակցելու օգտին, որոնք գիտակցում են իրենց պատասխանատվությունը խաղաղության, ժողովուրդների անվտանգության, սպառազինությունների մրցավազքի սանձահարման, ֆաշիզմի, ռասիզմի, գաղութատիրության դեմ մղվող պայքարում։*

*Եվրոպայի կոմունիստական ու բանվորական կուսակցությունների 1976 թ. բեռլինյան կոնֆերանսում նշվեց, որ «բանվոր դասակարգի և բոլոր աշխատավորների արմատական շահերը պահանջում են հաղթահարել բոլոր այն խոչընդոտները, որոնք ծառացած են համագործակցության ճանապարհին և դժվարացնում են աշխատավորական մասսաների պայքարն ընդդեմ մոնոպոլիստական կապիտալի, ընդդեմ ռեակցիոն ու պահպանողական ուժերի» (*За мир, безопасность, сотрудничество и социальный прогресс в Европе, М., 1976, стр. 32*)։ Անցած տարվա դեկտեմբերի 12-ից 15-ը Սոֆիայում կայացած միջազգային տեսական կոնֆերանսը ևս, որին մասնակցում էին 74 կոմունիստական ու բանվորական կուսակցությունների ներկայացուցիչներ (տե՛ս* «Проблемы мира и социализма», 1979 г., № 2, стр. 3*), կրկին հաստատեց բանվոր դասակարգի և նրա ավանգարդի՝ կոմունիստների վճռականությունը՝ շարունակելու պայքարը բանվոր դասակարգի միասնության համար, կապիտալի միավորված ուժերի դեմ, հանուն խաղաղության, դեմոկրատիայի ու սոցիալիզմի մղվող պայքարում բոլոր աշխատավորների միասնական լայն ճակատ ստեղծելու և ամրապնդելու նպատակով։*

*Կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամը հետզհետե ավելի է խորանում, գործադուլային պայքարը ո՛չ միայն չի դադարում, այլ, ընդհակառակն, վերջին տասնամյակում հասել է ամենաբարձր մակարդակի, ընդգրկելով աշխատավորության ավելի ու ավելի լայն մասսաներ։*

*Կոմունիստական ու բանվորական կուսակցությունների ակտիվ մասնակցությունը դասակարգային պայքարի ստրատեգիայի ու տակտիկայի, նրա ձևերի ու մեթոդների մշակմանը՝ նպաստում է մասսայական գործադուլային պայքարի ուժեղացմանը, պրոլետարիատի բոլոր ջոկատների ելույթների ակտիվության աճին։ Գործադուլային պայքարի վերլուծությունը հաստատում է մարքսիզմ-լենինիզմի այն դրույթի իրավացիությունը, որ պետական մոնոպոլիստական զարգացումը, հանգեցնելով կապիտալիզմի բոլոր հակասությունների ծայրահեղ սրման, անխուսափելիորեն ուղեկցվում է դասակարգային պայքարի արդյունավետության վերելքով և ուժեղացմամբ։ Ինչպես նշված է Եվրոպայի կոմունիստական ու բանվորական կուսակցությունների 1976 թ. հունիսի 29—30-ը Բեռլինում կայացած կոնֆերանսի եզրափակիչ փաստաթղթում, հասարակական զարգացման գլխավոր ուժի՝ բանվոր դասակարգի, առավել ծավալվող պայքարը «ուղղված է մոնոպոլիստական կապիտալի տիրապետության հիմքերի դեմ։ Հասարակության ավելի ու ավելի լայն խավերի համար ակնհայտ է դառնում կապիտալիստական հասարակությունը սոցիալիստական հասարակությամբ՝ յուրաքանչյուր ժողովրդի կամքին համապատասխան ստեղծված հասարակությամբ, փոխարինելու անհրաժեշտությունը»։*

## Նշանավոր տարեթվեր

# ՄԵՐ ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ՊՈՒՇԿԻՆԸ

ՆԱՏԱԼՅԱ ԳՈՆՉԱՐ-ԽԱՆՋՅԱՆ



Զարմանալի խորաթափանցությամբ Ալեքսանդր Պուշկինը կանխատեսել է իր լուսաշող անվան և հոյակապ ստեղծագործությունների ապագա հավերժող կյանքը, զարմանալիորեն ճշմարիտ, վեհագույն պարզությամբ ու հպարտությամբ ասել է, որ երբեք չի խամրի դեպ իր «անձեռակերտ հուշարձանը» տանող «ժողովրդի ճամփան», խորագույն հարգանքի ու սիրո ճամփան:

Լրացավ Պուշկինի ծննդյան 180-ամյակը. այս հոբելյանը, ինչպես և մեր երկրում կուլտուրայի համաժողովրդական տոնի վերածվող պուշկինյան բոլոր տարեդարձները, նոր ուժով ցույց է տալիս, թե որքա՜ն լուսավոր ու լայն է դեպի Պուշկինը տանող «ժողովրդի ճամփան», որքա՜ն թանկ են այսօր մեզ համար նրա հանճարի ստեղծագործությունները, որքա՜ն մոտ ու սիրելի է նրա խորապես մարդկային, ճշմարտացի, վճիտ ու իմաստուն ձայնը:

Մեր օրերում ո՛չ միայն «Ռուսիան», այլև իրոք «այնտեղ ապրող ամեն լեզու և ազգ» մեծարում է ռուսական կուլտուրայի մեծագույն հանճարներից մեկին. հաստատվում է Լենինի այն միտքը, որ իշխանությունն իր ձեռքը վերցնելով միայն ժողովուրդը կարող է սեփականել կուլտուրայի խոշորագույն գանձերը: Պուշկինի հանճարն իր ողջ խորությամբ բացահայտվում է հենց այն ժամանակաշրջանում, երբ իրականանում են սոցիալիստական իդեալները, հումանիզմի իդեալները, երբ յուրաքանչյուր անհատի հոգեկան աշխարհի հարստությունը սոցիալիստական հասարակարգում երազանքից վեր է ածվում ռեալ նպատակի: Առանց չափազանցության կարելի է ասել, որ մեր բազմազգ երկրի ամենաժողովրդական գրողներից է Պուշկինը, ամենաժամանակակից հեղինակներից մեկը, որ ավելի ու ավելի են խորանում գիտելիքները Պուշկինի մասին և առավել համակողմանի են հասկանում նրան:

Մեծերը մեծ են հենց նրանով, որ ժամանակը ո՛չ միայն պահպանում, այլև մշտապես վերակենդանացնում է նրանց: Ամեն մի նոր դար, ասես, նոր շունչ է տալիս նրանց՝ «ըստ իր պատկերի և նմանության»: Նրանք միշտ մեզ հետ են, շարունակում են ապրել մեր սրտերում՝ որպես մասնիկը մեր սեփական հոգու, հավերժ փոփոխվելով, հավերժ անխզելիորեն կապված մարդկային հոգու, նրա ձըգտումների, հույզերի ու որոնումների հետ: Նըրանք հարազատ են բոլոր ժողովուրդներին, նույնիսկ ավելին՝ ապագայի մարգարեն: Հենց այդպիսին է մեզ համար այսօր Պուշկինը, որի մասին այնպես խորաթափանցությամբ ու ոգեվորությամբ ասել է Գոգոլը. «Պուշկինի անունը լսելիս անմիջապես միտք է ծագում ռուս ազգային բանաստեղծի մասին... Պուշկինը արտակարգ երևույթ է և, թերևս, ռուսական ոգու եզակի երևույթն է. դա ռուս մարդն է՝ իր այն զարգացմամբ, որով նա կհայտնվի գուցե երկու հարյուր տարի հետո»: Գոգոլի այս խորիմաստ խոսքերի լույսի ներքո օրինաչափ չէ՞ արդյոք Պուշկինի առավել մերձեցումը մեր ժամանակին, այսօրվա մարդու հոգևոր ու բարոյական աշխարհին, ճշմարտի ու գեղեցկի նրա զարգացող ըմբռնմանը: Պուշկինի հզոր, անսպառելի հարուստ ու մարդասիրական ստեղծագործ անձնավորության մեջ սքանչելի ամբողջությամբ է արտահայտված այն իդեալը, որին ձգտում են մեր ժամանակաշրջանի, մեր հասարակության մարդիկ, և այդ իսկ պատճառով տարեցտարի, յուրաքանչյուր նոր սերնդի համար այդպես կենդանի, հարազատ է հնչում Պուշկինի կախարդիչ ձայնը, անմայրամուտ է փայլում նրա պոեզիայի արևը:

Պոետի մահից հինգ տարի անց նրա ստեղծագործության մեծ մեկնաբան Վիսարիոն Բելինսկին գրել է. «Պուշկինը պատկանում է հավերժ կենդանի և հարաշարժ երևույթներին, որ կանգ չեն առնում այն կետում, ուր վրա է հասել նրանց մահը, այլ շարունակում են զարգանալ հասարակության գիտակցության մեջ: Յուրաքանչյուր դարաշրջան հայտնում է նրանց մասին իր կարծիքը և որքան էլ ճիշտ հասկանա այն նրանց, միևնույն է, միշտ իրեն հաջորդող դարաշրջանին կթողնի ասելու որևէ նոր ու ավելի ճշմարիտ բան, և երբեք դրանցից ոչ մեկն ամեն ինչ չի արտահայտի...»:

Մեր սովետական ժամանակաշրջանը Պուշկինին ընդունում է ամենևին ո՛չ միայն որպես բացառիկ գեղարվեստական երևույթ, որպես սկիզբ սկզբանց, մեր բոլոր ժողովուրդների հոգևոր մշակույթի ավանդույթների անըսպառ աղբյուր: Այն համարում է նրան ժամանակակից, որն իր սիրով ու ատելությամբ, հույսերով ու երազանքներով, խոր, անդուլ որոնող մտքով մասնակցում է այսօրվա կյանքին, իր առինքնող, սրտահույզ խոսքով ներգործում անհատի հոգևոր աշխարհի և հասարակության հոգևոր-բարոյական մթնոլորտի վրա:

Որո՞նք են Պուշկինի աշխարհընկալման և ստեղծագործության այն էական հատկությունները, որ այդպես հարազատ ու թանկագին են դարձնում նրան մեզ համար:

Առաջինն ու հիմնականն այստեղ այն ամբողջականությունն ու խորությունն է, որով նրա ստեղծագործության մեջ արտացոլվել են և՛ «ժողովուրդը», և՛ «անհատը»— ժողովրդի ճակատագիրը, նրա խոհերն ու ձգտումները և անանձին մարդկային հոգին, պուշկինյան քնարերգության մեջ արտացոլված իր իսկ՝ պոետի պայծառ, առնական ու ազնիվ, բազմակողմանի ու ներդաշնակ անհատականությունը: XIX դարի ռուսական գրականության մեջ նրա գեղարվեստական հանճարեղ հայտնագործություններից մեկն է այս:

Մեզ հարազատ է Պուշկինի մեծ պատմական բանականությունը, մտածողության պատմականությունը, որ այնպես ցայտուն արտահայտված է Բորիս Գոդունով ողբերգության մեջ, Պոլտավա, Պղնձե հեծյալը պոեմներում, Կապիտանի աղջիկը վիպակում, Պուգաչովի խռովության պատմությունում, վառ կերպով արտացոլված նրա քնարերգության մեջ, տարբեր առիթներով հայտնած կարծիքներում, դատողություններում: Մեզ հիացնում է պատմական ու հասարակական նշանակություն ունեցող նրա վարքագիծը— կապը դեկաբրիստների հետ, նրա անդավաճան նվիրվածությունն ու հավատարմությունը այդ պարտված, բայց «չանհետացած» ազատագրական շարժմանը, նվիրվածությունն ու հավատարմությունը «Սիբիրի հանքերի խորքերում» տառապող ընկերներին, նրա քաջարի ու հպարտ ընդդիմությունը ինքնակալական իշխանությանը, ոստիկանական ճնշմանը, չնչին ու կեղծավոր վերնախավին, նրա անաչառ ազնվությունը գրական պայքարում, բոլորանվիրությունը հայրենի գրականությանը: Մեզ առինքնում է նրա կատարյալ բարձր քաղաքացիությունը, պուշկինյան մուսայի բացառիկ զգայունությունը ժամանակի նշանակալից հասարակական իրադարձությունների նկատմամբ, գործուն, արձագանքող զգայունությունը: Իրենց ոգեշունչ հընչեղությունը երբեք չեն կորցնում պուշկինյան ազատության հիմները, լույսի ու մտքի փառաբանությունը:

Ինչպես ասել է Ա. Ն. Օստրովսկին Պուշկինի մասին նրա հուշարձանի բացման ժամանակ, «Բացի հանույքից, բացի մտքերի ու զգացմունքների արտահայտչաձևերից պոետը տալիս է նաև մտքերի ու զգացմունքների սահմանումները»: Հիշենք նրա Չաադաևին ուղղված նշանավոր ձոնի հետևյալ տողերը.

*Քանի այրվում ենք մենք ազատությամբ,*
*Մեր սրտերն այրվում են պատվի համար,*
*Մեր հայրենիքին, բարեկա՛մս, տանք*
*Ամենաազնիվ հույզերը մեր վառ:*

Մարդասիրությամբ աղեցուն, հիացած մարդու սքանչելիությամբ, Պուշկինի հանճարն իր բարի բանականության լույսով ողողեց մարդկային բոլոր զգացմունքները, ցույց տալով դրանցից յուրաքանչյուրի ներթաքուն գեղեցկությունը: Նա սովորեցնում է, թե ինչպես պետք է զգալ և ապրել աշխարհում, որպեսզի կյանքն

արժանի լինի մարդուն, որպեսզի հոգին չխոցի «օձը սրտի խայթերի», և մարդու մեջ կատարյալ ու վեհ լինի ամեն ինչ— ստեղծագործությունը, սերը, բարեկամությունը, գործը, այն ամենը, ինչ կազմում է հոգևոր կյանքի բովանդակությունը:

«Պուշկինի պոեզիայի և, հատկապես քնարական պոեզիայի, ընդհանուր կոլորիտը,— գրել է Բելինսկին,— մարդու ներքին գեղեցկությունն է և հոգեթով մարդասիրությունը: Ավելացնենք դրան. եթե մարդկային յուրաքանչյուր զգացում արդեն գեղեցիկ է հենց այն բանի համար, որ մարդկային է..., ապա Պուշկինի մոտ ամեն զգացմունք ավելի գեղեցիկ է որպես նրբագեղ զգացմունք: Մենք այստեղ նկատի ունենք ոչ թե բանաստեղծական ձևը, որ Պուշկինի մոտ միշտ էլ վերին աստիճանի գեղեցիկ է, ո՛չ, նրա յուրաքանչյուր բանաստեղծության հիմքը կազմող յուրաքանչյուր զգացմունք ինքնին գեղեցիկ է, շնորհագեղ ու կատարյալ. դա ոչ թե պարզապես մարդու զգացմունք է, այլ արվեստագետ-մարդու, արտիստ-մարդու զգացմունքը: Միշտ ինչ-որ հատկապես ազնիվ, հեզ, քնքուշ, անուշաբույր ու նազելի բան կա Պուշկինի յուրաքանչյուր զգացմունքի մեջ: Այս առումով, նրա ստեղծագործությունները ընթերցողը կարող է իր մեջ հիանալի դաստիարակել մարդուն, և նման ընթերցանությունը հատկապես օգտակար է երկու սեռի երիտասարդներին: Ռուս բանաստեղծներից ոչ ոք Պուշկինի չափ չի կարող լինել երիտասարդության դաստիարակը, պատանի զգացմունքի ձևավորողը: Նրա պոեզիային խորթ է այն ամենը, ինչ երևակայական է, երազային, սուտ է և խաբուսիկ-իդեալական: Այն ամբողջովին ներծծված է իրականությամբ. այն կյանքի դեմքին սպիտակ և կարմիր շպար չի քսում, այլ ներկայացնում է բնական, ճշմարիտ գեղեցկությամբ» (Վ. Գ. Բելինսկի, Ընտիր երկեր, Հայպետհրատ, 1948, էջ 339):

Մեր ժամանակը հաստատում է Բելինսկու միտքն այն մասին, որ Պուշկինի պոեզիան հատկապես երիտասարդության մարդկային զգացմունքների դաստիարակության հիանալի դպրոց է:

Պուշկինը փառաբանել է իրոք ամեն մարդկայինը: Հայրենիքին ու ազատությանը, բանականությանը, կուլտուրային, գիտությանը նվիրվածության հերոսական զգացմունքների, այդ ամենը կյանքի գնով պաշտպանելու պատրաստակամության հետ մեկտեղ նա փառաբանել է սերը, սիրահարվածությունը, գովերգել կնոջը՝ կյանքի և ուրախության աղբյուրը, ընկերությունը, անաղարտությունն ու պարզությունը այն բոլոր ասպարեզներում, ուր հանդես է գալիս մարդը: Մարդկային հոգու ոչ մի ծալք չի վրիպել Պուշկինի պոեզիայից և, «երազի նման թեթև մատներով» շոշափելով մարդկային ամեն մի զգացմունք, ազնվացրել է այն, հաղորդել նրան նազանք ու վեհություն: Եվ քիչ կլիներ ասել, թե պուշկինյան պոեզիայի այդ վեհ, զգացմունքային ու բարոյական աշխարհն այսօր հարազատ ու համահնչուն է մեզ. Պուշկինի մտքերի, զգացմունքների ներդաշնակությունը, նրա պոեզիայի գանձերը կենսահորդ ու տիրաբար թափանցում են մեր գիտակցության մեջ ու սիրտը, ձևավորում մեր վերաբերմունքը աշխարհի նկատմամբ, մեր միտքն ու խիղճը, մեր զգացմունքների ու վարվելաձևի կուլտուրան: Կոմունիզմի կառուցման ժամանակաշրջանում մեր երկրի երիտասարդությունը ո՛չ միայն իր գեղագիտական, այլև բարոյական կոդեքսի մեջ, որպես կարևոր բաղադրատարր, ներառնում է մարդկային բոլոր հարաբերությունների ու զգացմունքների պուշկինյան անաղարտությունը, պարզությունն ու վեհությունը:

Պուշկինի մոտ մենք տեսնում ենք սիրո հարակյաց, մշտապես ոգեշնչող զգացմունքի ամենագեղեցիկ , ամենահուզիչ արտահայտությունները, բոլոր նրբերանգները, բոլոր տառապանքներն ու վայելքները: Տատյանայի և Օնեգինի սիրո խոր, տխուր դրաման, Բախչիսարայի շատրվանի և Գնչուների ողբերգական սիրային բախումները, պուշկինյան՝ խորիմաստ հեքիաթներում հաղթանակող անդավաճան, անաղարտ սերը, նրա քնարերգության գլուխգործոցներում այնպես բուռն, այնպես անկեղծորեն հորդող իր իսկ՝ պոետի սիրո հրճվանքն ու թախիծը, քնքշանքն ու կիրքը, խենթությունները ու ուրախությունները— այս ամենը մեր հիշողության մեջ մնում են ոչ թե որպես բանաստեղծական կտավներ ու տողեր. այդ ամենն ապրում է ժամանակակից մարդու սրտի թրթիռում, ներաշխարհում, զգացմունքների բույլի մեջ: Անաղարտություն, ինքնանվիրում, ինքնամոռացում— ահա ինչով է սքանչելի սերը պուշկինյան պոեզիայում.

Я вас любил: любовь еще, быть
может,
В душе моей угасла не совсем;
Но пусть она вас больше не тревожит;
Я не хочу печалить вас ничем.
Я вас любил безмолвно, безнадежно,
То робостью, то ревностью томим;
Я вас любил так искренно, так нежно,
Как дай вам бог любимой быть
другим.

Պուշկինյան բանաստեղծության այս ութ տողը մենք ընդունում, կրկնում ենք և՛ որպես ազնիվ-գեղեցիկ խոստովանություն, և՛ որպես բոլոր ժամանակների համար թանկագին պատգամ այն մասին, որ սիրո մեջ մարդու համար ամենագլխավորը, ամենասքանչելին սիրող լինելն է, ինքնանվիրումը, իր սիրտը, ջերմությունը նվիրելը: Եթե մարդ կարողանա այդպես զգալ, այդպես սիրել, ապա նույնիսկ «թախիծը» կդառնա լուսավոր, ինչպես Պուշկինինը:

Ընկերության մեջ մեծահոգության, նվիրվածության, երախտագիտության ինչպիսի՜ օրինակներ են տալիս Պուշկինի և՛ կյանքը, և՛ պոեզիան: Մեզ համար հոգեհարազատության, գաղափարակցության, շռայլ մարդկայնության ու հավատարմության վեհ խորհրդանիշ է Պուշկինի՝ ողջ կյանքում սրբությամբ պահպանած և բազմիցս ոգեշունչ երգած կապը լիցեյի իր սրտակից ընկերների և Սիբիր աքսորված դեկաբրիստների հետ: Իրոք, ամեն մի նոր սերունդ ընկերական զգացմունքների լեզուն սովորում է Պուշկինի՝ Դելվիգին, Կյուխելբեկերին, Պուշչինին, լիցեյի տարեդարձներին նվիրված բանաստեղծություններից:

Ազատասիրության, քաղաքացիության պաթոսով է համակված Պուշկինի «Խավար հանքերում հեռու Սիբիրի...» հանրահանաչ ձոնը: Բարեկամության ինչպիսի՜ բուռն, խոր զգացում, բարեկամության պարտքի ինչպիսի՜ նվիրական գիտակցում պետք էր ունենալ, անտեսելով դաժան հանգամանքները, այս տողերն ստեղծելու և մութ գետնախորշերը նետված իր ընկերներին ուղարկելու, ողջ անկեղծությամբ ու անվեհերությամբ ասելու համար.

*Մեր անկեղծ սերը կգա դեպի ձեզ,*
*Կհասնի մռայլ փականքի միջով,*
*Ինչպես աքսորի ձեր խշտիններին*
*Հասնում է ձայնս երգիս ղողանջով:*

*Եվ կընկնեն մի օր շղթաները ձեր,*
*Բանտը կդառնա խղճուկ ավերակ,*
*Ազատությունը դեմ կվազի ձեզ,*
*Ու ընկերներից սրեր կստանաք:*

Մեր օրերում, երբ մարդն ավելի ու ավելի է բացահայտում բնության գաղտնիքները, առավել ակտիվությամբ է թափանցում նրա խորքերը՝ իբրև որոնող, աշխատող, վերափոխիչ, «մարդ—բնություն» հարաբերությունը դառնում է ավելի բարդ ու կարևոր, այն կիզակետը, որում խաչաձևվում են բարոյական ու հոգևոր պահանջմունքները, դառնում է մարդու և հասարակության հումանիստական աշխարհզգացման և բարոյական անաղարտության չափանիշը: Սոցիալիստական հասարակության մարդը բարձր է գնահատում բնությունը, ձգտում ներդաշնակ լինել նրան, ապրել նրա գրկում, իր համագործակցությամբ հարստացնել այն: Նա սիրում է բնությունը, խնամքով, խանդաղատանքով վերաբերվում նրան, ստեղծագործ մտքով սուզվում նրա գաղտնարաններում, բայց բացահայտելով նրա գաղտնիքները, հայտաբերելով հարստությունները, նա խորապես գիտակցում է և բնության սեփական արժեքը, նրա վեհությունն ու գեղեցկությունը, կենարարությունը, նրա վիթխարի ներգործությունը մարդկային հոգու վրա:

Այս առումով ժամանակակից մարդու համար հույժ բարերար է հաղորդակցվել պոեզիային, հատկապես Պուշկինի պոեզիային. նա ստեղծել է ռուսական բնության ակվարելային նուրբ, գերող պատկերներ, որոնք բացահայտում են բնության ուրվագծերի ու գույների ողջ անկրկնելիությունն ու հմայքը, նրա թովիչ բազմազանությունը տարվա բոլոր եղանակներին: Հիշենք ինչպիսի՜ սքանչելի բնապատկերներով է հարուստ Եվգենի Օնեգինը: Որքա՜ն բազմերանգ, ինչպե՛ս պերճաշուք է նրա պոեզիայում հարավի ճոխ, շռայլ բնությունը, Կովկասի վեհասքանչ, ահեղ գեղեցկությունը, «ուկրաինական խաղաղ գիշերվա» կախարդանքը... արևգալի «միջօրեի գեղեցկությունը» Բեսարաբիայի տափաստաններում և ծովի ազատ տարերքի հպարտ, «հանդիսավոր գեղեցկությունը...»: Պուշկինի բնազգացումը, զգայուն վերաբերմունքը նրա հավերժ նոր, թարմ, առույգացնող գեղեցկության նկատմամբ՝ ունի վարակիչ մեծ ուժ, որն այնպես համակում է և պուշկինյան պոեզիայի այսօրվա ընթերցողին:

Իր ստեղծագործական վիթխարի եռանդով, հասարակական բացառիկ ակտիվ, կրակոտ բնավորությամբ Պուշկինը մարդու կյանքը երկրի վրա համարում է ստեղծարար, գործունյա, նպատակային, «կենդանի և մշտական աշխատանքով» հագեցած կյանք: Նրա հզոր տաղանդի մի այլ կողմն է այս, նրա ստեղծագործության հավերժական մի թեմա ևս, որը չափազանց մոտ, համահնչուն է մեր ժամանակին, ապրելակերպին, զարգացած սոցիալիստական հասարակությանը՝ իր արարչագործության պաթոսով և աշխատանքային հերոսականությամբ:

Պուշկինի խոր ժողովրդայնության արտահայտությունն է և այն, որ աշխատանքը նրա համար չափանիշ է, որով նա գնահատում է մարդուն ընդհանրապես և պատմական գործչին, կուլտուրայի գործչին՝ մասնավորապես: Ըստ Պուշկինի, Պետրոս Առաջինը մեծ էր հենց նրա համար, որ «գահի վրա հավերժական աշխատավոր էր» և հակառակը, Ալեքսանդր I-ին նա բնութագրում էր որպես «ճաղատ, պճնամոլ, աշխատանքի թշնամի»:

Մեծ բանաստեղծն ամենայն կրքոտությամբ հաստատում էր, որ չաշխատելը կյանքը դարձ-

նում է ո՛չ միայն անօգուտ, անպտուղ, այլև՝ անուրախ. «ավելորդ է» դառնում նույնիսկ արտակարգ շնորհալի մարդկանց: Հենց դրանում է ազնվականության ներկայացուցիչ Օնեգինի ողբերգությունը.

*Կյանք վարելով աննպատակ*
*Մինչև քսանվեց տարին դատարկ,*
*Անգործ, պարապ ձանձրանալով՝*
*Անկին, առանց մի պաշտոնի,*
*Անպետք եղավ ամեն բանի:*

Պուշկինը ստեղծագործական աշխատանքի գրավականն էր համարում լարված, համառ աշխատանքը: Հանճարեղ պոետն ինքը մեծ աշխատավոր էր: «Որքան ավելի բուռն է ներշնչանքը,— ասել է Լև Տոլստոյը,— այնքան ավելի տքնաջան աշխատանք է պետք կատարման համար: Մենք կարդում ենք Պուշկինին, տողերն այնպես սահուն են, այնպես պարզ, մեզ թվում է, թե դրանք իրենք իրենց են ստեղծվել: Մեզ համար անտեսանելի է, թե որքան աշխատանք է գործադրել նա, որպեսզի ստացվի այդպես պարզ ու սահուն»: Պուշկինի ստեղծագործությունների զանազան տարբերակները վկայությունն են այն վիթխարի, լարված, իրոք տքնաջան աշխատանքի, որ ներդրել է իր ստեղծագործական պրոցեսում ռուս նոր գրականության նահապետը:

Աշխատանքը ո՛չ միայն ստեղծագործության անհրաժեշտ պայմանն է, այլ արվեստագետի համար և՛ բավականություն, և՛ պարգև: Աշխատանքը պետք է մարդուն, պետք է գրողին, ինչպես ամեն կենդանի արարածի՝ օդը շնչելու համար: Ինչպես վկայում է պոետի մտերիմներից Պ. Ա. Վյազեմսկին, «աշխատասիրությունը, աշխատանքի պահանջը» խիստ հատուկ էին Պուշկինին, «աշխատանքը նրա համար սրբություն էր», երբ նա սկսում էր աշխատել, «խաղաղվում էր, առնանում, վերածնվում»:

«Աշխատանքի կրակից» ծնվում էր պուշկինյան անմահ խոսքը և այն անդուլ համառությունն ու ինքնանվիրումը աշխատանքում, որով գրավում և հիացնում է մեզ Պուշկինը, բնականաբար և օրինաչափորեն բխում էին պոետի՝ «խոսքը» իբրև «գործ», ըմբռնելուց, արվեստի վեհ միսիայի, դրա ներգործուն ուժի հասարակական նշանակության ըմբռնումից: Լայնորեն հայտնի է պուշկինյան պոետ-մարգարեի կերպարը և պուշկինյան պոեզիայի «խոսքով այրիր սրտերը մարդկանց» պատգամը: Նրա ստեղծագործության մեջ շեշտվում է պոեզիայի՝ որպես «սուրբ զոհի», որպես մարդկանց, ժողովրդին ծառայելու թեման: Պուշկինին հատուկ էր խորապես պատասխանատու վերաբերմունքը խոսքի նկատմամբ, արվեստի, գրականության խնդիրների համակողմանի ըմբռնումը: Ինչպես հիանալի բնութագրել է Ն. Գ. Չերնիշևսկին, «Նա առաջինը մեզ մոտ գրականությունը հասցրեց ազգային գործի աստիճանի»: Իր ստեղծագործական պրակտիկայում և տեսական դատողություններում ու կարծիքներում, իր գրական գործունեության ողջ ընթացքում նա պայքարել է հանուն առաջադեմ հասարակական բովանդակությամբ հագեցած, իրականությունն արտացոլող և դրա վրա ներգործող գրականության, պոեզիայի: «Իրականության բանաստեղծ» էր կոչում ինքն իրեն Պուշկինը, և իրեն նմանեցնում էր «արձագանքի». համընդհանուր արձագանք— այս է, ըստ նրա, պոետի կոչումը:

Իր ստեղծագործության մեջ բանաստեղծն արձագանքել է իրականության ողջ բազմազանությանը, շրջապատող աշխարհի բոլոր ձայներին: «Ի՞նչն էր նրա պոեզիայի առարկան,— հիացմունքով գրել է Գոգոլը,— ամենայն ինչ դարձել է դրա առարկան և ոչինչ հատկապես: Միտքը համրանում է նրա առարկաների անսահմանությունից»: Անընդգրկելի էր նրա ստեղծագործական մտահորիզոնը, նրա հանճարը չի շրջանցել կյանքի ոչ մի կողմ: Անհատի ներքնաշխարհը և ժողովրդի ճակատագիրը, հավերժական մաքառումը, կյանքի հավերժական շարժումը,— այս ամենն ընդգրկում է Պուշկինի ստեղծագործությունը: Մեծ արվեստագետն ու մտածողը պատասխանում է ինչպես իր դարաշրջանի, նույնպես և ընթերցողների հաջորդ սերունդների ամենաբազմապիսի հարցերին:

Պուշկինը գրականությունը դարձրեց իրականության գեղարվեստական հայելի և ժողովրդի հոգևոր կյանքը կառավարող ուժերից մեկը, հագեցրեց այն առաջադիմական գաղափարներով և հասարակական խոր բովանդակությամբ: Միաժամանակ նա հաստատեց գրականության յուրահատկությունը, բարձրացրեց այն կատարյալ գեղարվեստական գրականության բարձունքին, խոսքի ազգային արվեստի բարձունքին: Պուշկինն այդպիսով փայլուն կերպով լուծեց պատմական կարևորագույն խնդիրներ, որով և պայմանավորված էր ռուս ազգային գրականության հետագա զարգացումը: Նա բացահայտեց և ողջ հետագա գրականությանը հաղորդեց ռեալիզմի ոգին, կյանքի խոր ճանաչման և ճշմարտացի արտացոլման, ակտիվության ու քաղաքացիության ոգին, ժողովրդական լեզվի, բառ ու բանի հմուտ ու խոր իմացությամբ հաստատեց գեղարվեստական լեզվի կատարելությունը, արտահայտչական ուժը, գեղարվեստական ձևերի հարստությունն ու լիարյունությունը:

Պուշկինի ստեղծագործության պատմական



վիթխարի նշանակություն ունեցող այս դասը, որ ընդունել և զարգացրել է ռուս դասական ռեալիզմը, ո՛չ միայն ժառանգել է սոցիալիստական ռեալիզմի մեր բազմազգ գրականությունը, այլև նոր ուժով ու համակողմանի զարգացրել այն: Մեր ժամանակաշրջանում գրականությունն ու արվեստն առավել լայնորեն ու բազմակերպ են ներառվում սոցիալական սիստեմի, հասարակության կյանքի ոլորտը, դուրս են գալիս սոցիալիստական կեցության ու ստեղծագործության առաջամաս, ձեռք բերում առավել, քան երբեք, վերափոխող, դաստիարակիչ ակտիվ դեր: Այդ իսկ պատճառով մեր գրականության համար չափազանց թանկ են Պուշկինի օրինակը, նրա ավանդներն ու փորձը: Ժամանակակից գրականությունն ըմբռնում է իր դերը, իր խնդիրները Պուշկինի ոգով, որի համար պոեզիան մարդու հոգևոր կերպարանափոխման, մարդասիրական իդեալի հաստատման և ժողովրդին, հասարակական առաջավոր իդեալներին բոլորանվեր ծառայելու միջոց էր: Արվեստի այս խնդիրների գիտակցման արտահայտությունն է Պուշկինի բանաստեղծական կտակը.

*Եվ ես նրա համար կապրեմ ժողովրդի սրտում,*
*Որ իմ քնարն արթնացրել է զգացմունքներ*
*բարի,*
*Եվ իմ դաժան դարում երգել եմ ես*
*ազատություն*
*Եվ գութ հանուն ընկածների:*

Արձագանքել «կյանքի բոլոր տպավորություններին», պատասխանել ժամանակի բոլոր կանչերին ու հարցերին, «լուսավորությամբ հավասարվել դարին»— ահա դասեր, որ այսօր և գրականությունը քաղում է Պուշկինից այնպես, ինչպես նրանից սովորում է հույզի ու մտքի ճշմարտացիությունը, իմացություն ու պարզություն, գեղարվեստական կատարելություն, ձևի ու բովանդակության ներդաշնակություն: «Ներդաշնակություն». այն ձուլված, միավորված է Պուշկինի անվան հետ: Պուշկինը՝ մտքի ու զգացմունքի, անձնականի ու համընդհանուրի, ազգայինի ու համաշխարհայինի ներդաշնակությունն է:

«Քաոսի», «խավարի», «դառնությունների» նկատմամբ «ներդաշնակության» հաղթանակ, կյանքի, նրա ուժի ու գեղեցկության հաստատում— այս է նրա ողջ ստեղծագործության առանցքը: Պուշկինը ավելի, քան այլ ոք, առավել սուր ու խորն էր զգում իրեն շրջապատող իրականության ողբերգական հակասությունները. այդ ամենն անդրադարձել է նրա ճակատագրի վրա և, այնուամենայնիվ, Պուշկինի ողջ կյանքն ու ստեղծագործությունն այդ ողբերգության հաղթահարումն է ներդաշնակությամբ և լույսով: Հուսախաբության դառնությունը, հոռետեսական տրամադրությունները, որ հարուցում էր նրա հոգում իր ժամանակի իրականությունը, չէին խախտում նրա ստեղծագործության հիմնական, վեհ մարդասիրությամբ, իմացության ծարավով, կյանքի բուռն ընկալմամբ տոգորված կենսահաստատ պաթոսը: Նույնիսկ ամենածանր պահերին, մահվանից ոչ շատ առաջ, անավարտ մի բանաստեղծության մեջ, ասես, պատասխանելով ապագայի վերաբերյալ ինքնահարցումին, Պուշկինը վերստին հաստատել է կյանքի հաղթանակը, լիարուն ապրելու իր տենչը.

*Օ՜, ո՜չ, կյանքն ինձ չի ձանձրացրել,*
*Ես կյանքն եմ սիրում, ուզում եմ ապրել...*

Խավարի, անուրախության միջից նա միշտ տեսնում է կյանքի շարժումը, վավերացնում տառապանքի ու մահվան հանդեպ նրա տարած հաղթանակը, ողջունում ժամանակի ու սերունդների հավերժական հաջորդականությունը: Լավատեսությունը, կյանքի հաստատումը Պուշկինի աշխարհայացքի և ստեղծագործության հիմնական հատկությունն են, որ մոտեցնում են նրան մեր ժամանակին, մեր հասարակության ոգուն ու իդեալներին: Պուշկինի օպտիմիզմը նրա՝ զարգացման գաղափարի, պատմական ընթացքի պրոգրեսիվության խոր ըմբռնման վկայությունն է, բանականի հաղթանակի նկատմամբ տածած հավատի վկայությունը: Պուշկինի լավատեսությունը, ապագայի հանդեպ նրա հավատը Գերցենն իրավամբ հակադրել է արևմտաեվրոպական քաղաքակրթության հոռետեսությանը: «Նա ծանոթ էր քաղաքակիրթ մարդու բոլոր տառապանքներին,— գրել է Գերցենը,— բայց նա օժտված էր ապագայի նկատմամբ հավատով, որից Արևմուտքի մարդն արդեն զրկված էր»:

Անհնար է ընդգրկել, անդրադառնալ այն ամենին, ինչով Պուշկինի հանճարը համահնչուն է մեր ժամանակներին: Խոսենք միայն մի բանի՝ Պուշկինի «համաշխարհային զգացընկալության», ամենատարբեր ժողովուրդների կյանքի, պատմության ու կուլտուրայի նկատմամբ նրա նրբազգաց վերաբերմունքի, Դոստոևսկու արտահայտությամբ՝ «օտար ազգի վերամարմնավորվելու» նրա բացառիկ տաղանդի, նրա ստեղծագործությունը համակած բարեկամության ոգու և խաղաղասիրության մասին: Հույժ արդիական են հնչում դար ու կես առաջ նրա գրած խոսքերը. «Չի կարող պատահել, որ ժամանակի ընթացքում մարդկանց համար պարզ չլինի պատերազմի ծաղրելի դաժանությունը, այնպես, ինչպես նրանց համար պարզ

դարձավ ճորտությունը, արքայական իշխանությունը և այլն: Նրանք կհամոզվեն, որ մեր կոչումն է... ազատ լինել»: Լեհ ժողովրդի մեծ պոետ Ադամ Միցկևիչի հետ մեկտեղ Պուշկինը երազել է գալիք օրերը:

*Երբ ազգերը, պառակտումը մոռացած,*
*Մի մեծ, խաղաղ ընտանիքում կձուլվեն:*

Կրքոտ հայրենասերը, որին Տուրգենևը համարել է «ո՛չ միայն իր ժամանակի ամենատաղանդավոր, այլև ամենառուս մարդը», միաժամանակ կարող է համարվել իր երկրի և ողջ աշխարհի ժողովուրդների մեծ բարեկամը: Պոետի ծննդյան 100-ամյակի առնչությամբ գրված և ցարական գրաքննության բռնագրաված թռուցիկի հեղինակը լրիվ հիմք ուներ նրա մասին ասելու. «Գրելով հարյուր հազար տող, Պուշկինը չի գրել և ոչ մի տող, որով վիրավորեր որևէ ցեղի»: Պուշկինի անունը, Պուշկինի հանճարը միավորում է մարդկանց, միավորում է ժողովուրդներին:

Այս առնչությամբ կկամենայինք մեջ բերել մի շատ ուշագրավ, ճշմարիտ վկայություն: Ամերիկյան մեծահամբավ գրող և իր երկրում հայ ժողովրդի պատմական ճակատագրին և այսօրվա վերածննդին անդրադարձող Վիլյամ Սարոյանի կարծիքն է այն: Սարոյանը Երևանում եղել է անցյալ տարվա աշնանը, մեծ տոնի՝ Արևելյան Հայաստանի Ռուսաստանի կազմի մեջ մտնելու 150-ամյակին նվիրված տոնի օրերին: «Литературная газета»-ի ապրիլյան համարներից մեկում հրապարակվեց նրա հետ կայացած հարցազրույցը: Նրան ուղղված հարցերից մեկն էր. «Սովետական Միությունում առաջին անգամը չեք Դուք, եղել եք շատ քաղաքներում, հանդիպել մարդկանց հետ ամենատարբեր լսարաններում: Ձեր կարծիքով, ի՞նչն է միացնում այդ քաղաքները, այդ մարդկանց, որոնց Դուք հանդիպել եք»: Ահա թե ինչ պատասխանեց Սարոյանը. «Ամենաընդհանուրը ամենուր... Պուշկինն էր: Ես առաջին անգամ իրականում զգացի «ազգային հպարտություն» հասկացությունը, ընկալեցի այն, այսպես ասած՝ առարկայացած տեսքով: Սկսեմ նրանից, որ այս անգամ ես Սովետական Միություն եկա «Ալեքսանդր Պուշկին» շոգենավով: Ռիգայում մեր բարեկամների՝ լատիշ գրողների հետ մենք անցանք Պուշկինի փողոցով: Լենինգրադում Պուշկինի անվան հետ է կապված համարյա ամեն ինչ: Երբ մենք գնում էինք Պավլովսկ, ապա անտառի բացատներից հենց մեկում կանգնած էր Ալեքսանդր Պուշկինը՝ ողջ հասակով մեկ: Ես արդեն չեմ խոսում այն քաղաքի մասին, որ կրում է բանաստեղծի անունը... Ես զգացի,— ասաց Սարոյանը,— որ Պուշկինը իրոք Ռուսաստանի և ողջ Սովետական Միության ազգային հպարտությունն է»:

Դար ու կես առաջ իր հոդվածները Պուշկինի մասին՝ Բելինսկին ամփոփել է այսպես. «Նրա պոեզիայի յուրահատկություններից մեկը մարդկանց ընքագեղության և մարդասիրության ոգով համակելն է, այդ խոսքերի տակ ենթադրելով մարդու, իբրև մարդու, արժանապատվության անսահման հարգանքը: Կգա ժամանակ, երբ նա Ռուսաստանում կլինի դասական պոետ, որի ստեղծագործություններով կկատարելագործեն և կզարգացնեն ո՛չ միայն գեղագիտական, այլև բարոյական զգացմունքը»:

Վաղուց է իրականացել անհողդողդ Վիսարիոնի այս հանճարեղ կանխատեսությունը:



# ՀԱՋՈՂՎԱԾ ՀՐԱՊԱՐԱԿՈՒՄՆԵՐ

Հարևան Թուրքիայի հասարակական-քաղաքական կյանքի, ներքին ու արտաքին քաղաքականության, սոցիալ-տնտեսական տեղաշարժերի մշտական ու հանգամանալի ուսումնասիրությունը սովետական արևելագիտության կարևոր խնդիրներից մեկն է: Այստեղ լուրջ անելիքներ ունեն և՛ պատմաբանները, և՛ տնտեսագետները, և՛ միջազգայնագետները, և՛ լեզվաբաններն ու գրականագետները: Թուրքիայի այսօրը կապված է օսմանյան կայսրության՝ այդ բազմազգ պետության պատմության հետ: Իսկ այդ պետության մեջ, բացի թուրքերից, բնակվում էին տասնյակ ժողովուրդներ ու ազգություններ, որոնց պատմության ուսումնասիրությունն առնչվում է Թուրքիայի իրականության անցյալի հետազոտման հետ:

Արևմտահայության քաղաքական, սոցիալ-տնտեսական պատմությունը, նրա կուլտուրայի ուսումնասիրությունը նույնպես սերտորեն առնչվում են թուրքագիտության հետ, այն պետականության պատմության հետ, որի շրջանակներում դարեր շարունակ ճնշվել, հարըստահարվել և, ի վերջո, բնաջնջվել է մեր ժողովրդի արևմտյան հատվածի գերակշիռ մասը:

Թուրքագիտությունը մեզ հետաքրքրում է ո՛չ միայն անցյալի առումով, այլև ներկա քաղաքական իրադրությամբ: Հանրապետական Թուրքիան նախկին տարածքը չունի, օսմանյան կայսրության նման փռված չէ երեք աշխարհամասերի վրա, սակայն պահպանում է իր առանձնահատուկ աշխարհագրական, ռազմաստրատեգիական դիրքը. Միջին ու Մերձավոր Արևելքի ազդեցիկ պետություն է այն՝ ստվար բնակչությամբ: Թուրքիան ՆԱՏՕ-ի անդամ է: Իսկ այդ ռազմական կազմակերպության գլխավոր թիրախը սոցիալիստական երկրներն են: Թուրքիան ՍՍՀՄ-ի անմիջական դրացին է, Անդրկովկասի սովետական հանրապետությունների միջոցով, և մենք չպետք է անգիտակ լինենք սահմանից այն կողմ տեղի ունեցող իրադարձություններին, քաղաքական կոնյունկտուրային: Անցյալ տարի «Պրավդան» հոդված հրապարակեց Չինաստանի արտաքին գործերի մինիստրի Անկարա կատարած այցի, հակասովետական հայտարարությունների, այն դերի ու տեղի մասին, որ չինական ղեկավարները հատկացնում են Թուրքիային իրենց հակասովետական ընդհանուր քաղաքականության մեջ: Մեզ անհրաժեշտ է ճիշտ ըմբռնել թուրքական քաղաքականության էական միտումները: Ուշագրավ է, որ թուրքական քաղաքական գաղափարախոսությունն այսօր վերստին բորբոքում է պանթուրքական պրոպագանդան: Հարևան երկրների ներքին վիճակը, դասակարգային հարաբերությունները, միջկուսակցական և ներկուսակցական խնդիրների պարզաբանումն ունեն գիտաքաղաքական կարևոր նշանակություն: Հարկավոր է գիտենալ այդ երկրների հասարակական-քաղաքական կյանքի ու մտքի ընթացքը, ժողովրդական զանգվածների և իշխող դասակարգերի հոգեբանությունն ու տրամադրությունները: Այստեղ անհրաժեշտ են ճշմարիտ չափանիշներ: Ո՛չ գիտությունը, ո՛չ քաղաքականությունը չեն հանդուրժում ինքնախաբեություն, աչքակապություն: Պետք է իմանալ ամեն ինչ, պարզ ու հստակ պատկերացում ունենալ սահմանակից երկրներում կատարվող հասարակական-քաղաքական իրադարձությունների մասին:

Ժամանակակից գիտական մակարդակով կատարվող սիստեմատիկ ուսումնասիրությունների միջոցով է հնարավոր ճիշտ գաղափար կազմել թուրքական իրականության, պետական քաղաքականության հանգամանքների վերաբերյալ: Երբեմնի չափանիշները, հնացած պատկերացումները, կենսագուրկ փաստարկներն այլևս գործին օգնել չեն կարող: Հարկավոր է բացառել զգացմունքայինը, անցյալի իրադարձությունների պրիզման ու եզրակացությունները խարսխել միայն փաստական նյութի, կոնկրետ իրավիճակի վրա: Չեն կարող լինել լրջմիտ քաղաքական-գիտական ընկալումներ ու մոտեցումներ առանց բազմակողմանի վերլուծությունների, առանց փաստական իրավիճակի խորազնին իմացության: Պետք է իմանալ երկրի պատմությունը, թուրք-հայկական քաղաքական ու կուլտուրա-

Թուրքիայում: Այստեղ շեշտվում են պանթուրքական ծրագրերի աշխուժացման փաստը, թուրքական ճնկայածավալ պետություն վերըստեղծելու միտումների աշխուժացումը:

Ռ. Կոնդակչյանը լույս է սփռել պանթուրքիզմի դրսևորումների վրա, մերկացրել դրա ճետադիմական էությունը:

Ռազմականացման ծանր լուծը դրված էր աշխատավոր զանգվածների ուսերին: Ռազմականացումը ճարվածեց ժողովրդի կենսամակարդակին, ավելի խորացրեց երկրի ֆինանսատնտեսական ճգնաժամը: Ընթերցողը վերըստին ականատես է թուրքական իրականության ճատուկ այն երևույթներին, երբ պետական իշխանությունները բռնի միջոցներով ճանապարճ էին ճարթում թուրք ազգային բուրժուազիայի տնտեսական գերիշխանությունը ճաստատելու ճամար, ոտնաճարելով ազգային փոքրամասնությունների՝ ճույն, ճայ, ճրեա բուրժուազիայի և աշխատավորների իրավունքները: Ըստ էության, շարունակվում էր երիտթուրքերի նախաձեռնած՝ երկրի տնտեսական թուրքացման քաղաքականությունը, սակայն այլ ձևերով, քողարկված մեթոդներով, «ունեցվածքի մասին» օրենքներ ճրապարակելով: Ռ. Կոնդակչյանին ճաջողվել է ճամոզիչ կերպով ցույց տալ թուրքական ռեակցիայի դիրքերի ամրապնդումը պատերազմի ժամանակ և դրա ավարտին. այդ կատարվում էր դեմոկրատական ուժերի շաճերի ոտնաճարման, ժողովրդի սարկացման ճետագա խորացման ճաշվին:

Գրքում բացաճայտված է թուրքական ոստիկանական ռեժիմի պատկերը: Ճիշտ է, ճեղինակը փորձում է ցույց տալ երկրում սրված դասակարգային ու ազգային ճակասությունների ճետագա խորացումը, բայց թուրքական առաջադիմական ուժերի սաճմանափակ ճնարավորությունները թույլ չեն տալիս ծավալվել նրան: Հարուստ է Ռ. Կոնդակչյանի օգտագործած նյութերի, աղբյուրների ճենքը: Մեծ թվով նյութեր գիտական շրջանառության մեջ են դրվում առաջին անգամ: Կարծում ենք, այս աշխատության ճայերեն ճրատարակումն անճրաժեշտ է:

Ձենք տարակուսում, որ այս քայլերին, ճաջորդված ճրապարակումներին կճաջորդեն նորերը, և մեր թուրքագետները ճանդես կգան ո՛չ միայն ճետազոտական ուսումնասիրություններով, այլև ճրապարակախոսական, ճանրամատչելի ճոդվածներով: Մեր արևելագետները մշտապես պետք է ճետևեն թուրքական պատմագիտական, քաղաքագիտական ու միջազգային թեմաներով լույս տեսնող գրքերին, անդրադառնան դրանց մեր մամուլի էջերում:

Արդեն կատարվածը ճիմք է տալիս՝ լավատեսորեն սպասելու նոր ճրապարակումների, նոր ուսումնասիրությունների ու գրքերի:

**Ջ. Ս. ԿԻՐԱԿՈՍՅԱՆ**
Պատմական գիտությունների
դոկտոր, պրոֆեսոր



Адрес редакции: 375033, Ереван 33, Барекамутян 59 г.

**Խմբագրության ճասցեն՝ 375033, Երևան—33, Բարեկամության 59 գ.:** Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 27—25—29, պատ. քարտուղար՝ 27—12—92, պրոպագանդայի և էկոնոմիկայի բաժիններ՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատողներ՝ 27—60—64:

*ՎՖ 03022 Պատվեր 1213 Թղթի չափսը 70×108 1/16: Տիրաժ՝ 16.600 Գինը՝ 20 կոպ.:*
*Տպ. 6 մամուլ, մամուլում 68840 նիշ: Ստորագրված է տպագրության 4/VI—1979 թ.*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Ալ. Խանջյան փող. № 28:*

# *Ձեզ համար, ընթերցողնե՛ր*

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎ— Լենինյան կուրսով: *Հ. 6: «Հայաստան» հրատ., 1979:*

Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎ— Մալայա զեմլյա: *(Քրդերեն): «Հայաստան» հրատ., 1979:*

Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎ— Հանուն սովետական մարդկանց երջանկության: *(Ճառ Մոսկվայի բաումանյան ընտրական օկրուգի ընտրողների հետ հանդիպման ժամանակ. 2—III 1979 թ.): «Հայաստան» հրատ., 1979:*

Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎ— Ելույթ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի պլենումում: 1978 թվականի նոյեմբերի 27-ին: ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի պլենումի որոշումը: *«Հայաստան» հրատ., 1979:*

Գաղափարական աշխատանքի փորձից: *«Հայաստան» հրատ., 1979:*

Շ. ՊԵՏՐՈՍՅԱՆ.— ՍՍՀՄ պետական իշխանության բարձրագույն մարմինը: *Ե., «Գիտելիք» հրատ., 1979:*

Վ. ՄՈՒՍԱԽԱՆՅԱՆ— Սոցիալիստական պետության ձևերը: *ԵՊՀ հրատ., 1979:*

Ա. ԿԱՐԻՆՅԱՆ— Միքայել Նալբանդյանը և 19-րդ դ. 60-ական թվականների ռուս առաջավոր գործիչները (ճոդվածներ): *Ե., ԳԱ հրատ., 1979:*

Է. ՌՇՏՈՒՆԻ— Գիտական իմացության մեթոդների մշակումը հայ փիլիսոփայության մեջ: *«Հայաստան» հրատ., 1979:*

Է. ԳԵՎՈՐԳՅԱՆ—ԲԱԳԻ— Հայ-հունգարական գրական առնչությունները և «Արմենիա» ամսագիրը: *Ե., ԳԱ հրատ., 1979:*

Վ. ՀՈՎՍԵՓՅԱՆ— Ժամանակակից գիտատեխնիկական հեղափոխությունը և հասարակական աշխատանքի զարգացումը: *ԵՊՀ հրատ., 1979:*

Ս. ՆԱԶԱՐՅԱՆ— Հայ մանկապատանեկան մամուլը (1851—1917): *Ե., ԳԱ հրատ., 1979:*

**XXV съезд КПСС о современном мировом революционном процессе.** Киев, Политиздат, 1978.

А. КОСЫГИН — **К великой цели.** Избранные речи и статьи. В 2-х томах. Том первый, второй. М., Политиздат, 1978.

А. ПАВЛЮЧЕНКО — **Ленинская концепция созидания коммунизма.** Минск, изд. БГУ, 1978.

И. КЛИМЕНКО — **Партийное руководство военно-патриотическим воспитанием населения.** М., Политиздат, 1978.

Л. ЗИЛЕ — **Исторический путь строительства социализма.** Рига, «Лиесма», 1978.

Д. ЦЕКОВ — **Идеологическая борьба. Методологические проблемы.** Пер. с болг. М., «Прогресс», 1978.

НГУЕН КХАНЬ ТОАН — **Великий Октябрь и Вьетнам.** (Сб. статей). М., «Наука», 1979.

В. БЫКОВ — **Уильям Фостер — борец за дело рабочего класса.** М., «Мысль», 1979.

В. КУЗЬМИН — **Время великого перелома.** М., «Московский рабочий», 1979.

В. КУЛИКОВ — **Исторический опыт освоения целинных земель.** М., «Мысль», 1978.

И. ВИНОГРАДОВ — **Педагогика в практике партийного пропагандиста.** М., Политиздат, 1979.

М. ДАНИЕЛЯН — **Гносеологический анализ общесоциологической теории.** Изд. ЕГУ, 1979.

Н. АПИЯН — **Правовые основы проблемы управления наукой в Армянской ССР.** Е., изд. АН, 1979.

Գինը՝ 20 կ.

Индекс 77783

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԳՆԱՑՔԸ ԹՌՉՈՒՄ Է ԴԵՊԻ ԱՊԱԳԱ

*Սովետական գիտնականներն ու ինժեներները՝ Տրանսպրոգրես համամիութենական գիտահետազոտական ինստիտուտի և Մոսկվայի «Գազստրոյմաշ» գործարանի աշխատակիցները պատրաստել են մագնիսային կախոցով առանց անիվի գնացք: Այժմ նրանք փորձարկում են 35 տեղանոց վագոն: Նոր գնացքը մրցում է ո՛չ միայն մետրոյի, այլև միջին գործողության շառավղով ավիոլայներների հետ: Ապագայի տրանսպորտն է այն. արագությունը ժամում մինչև 300—400 կմ է, անաղմուկ է, անծուխ, մաքուր և շրջակա միջավայրի համար լիովին անվտանգ. Նրա համար նշանակություն չունեն տարբեր եղանակներն ու տեղանքը: Ի տարբերություն երկաթուղային սովորական գնացքների, այն կարող է առանց արագության կորստի հաղթահարել ճանապարհահատվածի ցանկացած կորությունը: Արագընթաց տրանսպորտի նոր տեսակը քաղաքները կկապի օդանավակայանների հետ:*

## ԱԼՅՈՒՄԻՆԵ ՔԱՂԱՔՆԵՐ

*Սայանոգորսկ քաղաքում հիմնվում է ՍՍՀՄ երկրաբանության մինիստրության ալյումինե հավաքովի շենքերի կոմբինատ: Այն թողարկելու է 3,5 տոննանոց տունկոնտեյներներ, որոնք հեշտությամբ կարելի է տեղափոխել ուղղաթիռներով երկրի ամենաանմատչելի վայրերը: Ալյումինից և ջերմացնող ծակոտկեն թեթև նյութից պատրաստված հավաքովի կոնստրուկցիայով հնարավոր կլինի կառուցել մեկ կամ մի քանի սենյականոց բնակարան, հասարակական շենքեր, պահեստային և արտադրական շինություններ: Ալյումինե տները կոնվեյերի վրա կհավաքվեն, կապահովվեն սանիտարատեխնիկական սարքավորումներով և անհրաժեշտ բոլոր նյութերով: Ալյումինե հավաքովի տները փորձարկվել են Ամդերմա քաղաքում, որտեղ տարվա մեծ մասը սառնամանիք է:*

## ՆՈՐ ԴԵՂԱՄԻՋՈՑ

*Մորողնիկ դեղաբույսից, որն արդեն օգտագործվում է որպես սրտային գլիկոզիդների աղբյուր, ռումինացի բժիշկ Վասիլե Բոիշն ստացել է ցավազրկող նոր միջոց՝ բոիշիլ-ֆորտե: Այն օգտագործվում է հիմնականում հոդերի տարբեր հիվանդությունների ժամանակ, բայց, քանի որ բոիշիլ-ֆորտեն ունի նաև հակաչղաձգային և անոթները կարգավորող հատկություն, ապա այն կարելի է կիրառել անոթային մի շարք հիվանդությունների դեպքում ևս: Ցավազրկումն սկսվում է կամ դեղանյութի անմիջական ներարկումից հետո, կամ 12—24 ժամ անց (նայած ցավառաջացման պատճառներին) և պահպանվում է երկար՝ 3-ից մինչև 30 օր, երբեմն էլ՝ ավելի: Քանի որ նոր միջոցը նարկոտիկ չէ, ապա չպետք է վախենալ, թե հիվանդը կվարժվի դրան: Դեղանյութը թունավոր չէ:*

## ՃԱՆԱՊԱՐՀ՝ ՈՉՆՉԻՑ

*Դանդաղ, ոչ մի բոպե չկանգնելով, մեքենան շարժվում է առաջ, իր հետևից թողնելով հարթ ասֆալտե շերտ. ասֆալտապատ ճանապարհ՝ առանց ասֆալտով լեցուն ինքնաթափ մեքենաների: Ինչպե՞ս. «Ցոգելե» (ԳՖՀ) ֆիրմայի մեքենայի առջևում տեղադրված հեղուկ գազով սնուցվող 120 ինֆրակարմիր այրիչները դանդաղ առաջշարժման ժամանակ ճանապարհածածկույթի վերին շերտը տաքացնում են մինչև 200°C: Բոլոր այրիչների ընդհանուր ջերմարձակումը հասնում է աստղաբաշխական թվերի՝ 1,3 մլն կալ/ժ: Տաքացումից հետո փափկացած ասֆալտը կտրատվում, խառնվում է, ապա կրկին ծածկվում ու ամրացվում նույն մեքենայով: Նախկին հին, ճաքճքված, ծամված ծածկույթի փոխարեն՝ նոր, հարթ մակերես: Եվ այդ ամենը մեկ մեքենայի մեկ անցումով: Մնում է գլանիվներով պնդացնել, և ճանապարհը պատրաստ է: Մեքենայի երկարությունը 18 մետր է, քաշը՝ 20 տոննայից ավելի: Մեկ ժամում այն պատրաստում է 1.360 քառ. մ մակերես:*